# ՇԷՔՍՓԻՐ

---

# ՕԹԵԼԼՕ

## ՎԵՆԵՏԿԻ ՄԱՒՐԸ



# ՇԷՔՍՓԻՐ

# ՕԹԵԼԼՕ

## ՎԵՆԵՏԻԿԻ ՄԱՒՐԸ

---

ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՀԻՆԳ ԱՐԱՐՈՒԱԾՈՎ

---

ԹԱՐԳՄԱՆԵՑ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՍԷՀԵԱՆ

ՎԻԵՆՆԱ, ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1922

# ՆԱԽԱԲԱՆ

*Շէքսպիրի կենդանութեան ժամանակ մի այնպիսի հրաշակերտ, ինչպէս "Օթէլլօն", թատրոնի շէմքից դուրս չը գնաց, եւ չարժանացաւ տպագրութեան պատուին։ Նրա մահից վեց տարի յետոյ միայն* (1622) *մի հրատարակիչ, լսելով որ Շէքսպիրի ընկեր դերասաններից երկու հոգի մտադիր են հրատարակել նրա երկերի ժողովածուն՝ շտապեց ինքն առաջ ընկնել եւ տպել "Օթէլլօյի" մի կրճատած ձեռագիրը որ ձեռք էր բերած, եւ որ ըստ երեւութին մի յուշարարի տետրակ է եղել։ Այս հրատարակութիւնը, որ կոչւում է "Օթէլլօյի Առաջին Քառածալը", ամէն տեսակէտից պակասաւոր է։ Հետեւեալ տարին* (1623) *հրատարակուած է մեծադիր ժողովածուն* (folio), *որ տպուած է հաւանօրէն կամ Շէքսպիրի սեփական ձեռագրից, կամ այն արտօնուած օրինակներից որոնք գործածւում էին Գլոբ թատրոնի ներկայացումների համար։ Այս հրատարակութեան մէջ "Օթէլլօն" պարունակում է* 160 *տող աւելի քան թէ Առաջին Քառածալի մէջ, եւ կրիտիկների միաձայն կարծիքով այդ տողերը վաւերական են, եւ յետագայում աւելացուած տողեր չեն։ Մենք թարգմանութեան ժամանակ աչքի առաջ ենք ունեցել թէ այս ֆօլիօն, եւ թէ գլխաւոր հետազօտիչների կարծիքները՝ վիճելի կէտերի մասին։*

*Գրեթէ վստահօրէն կարելի է ասել թէ "Օթէլլօն" "Համլէտից" անմիջապէս յետոյ գրուած ողբերգութիւնն է. ոչ միայն արտաքին ապացոյցներ կան այս մասին, այլ կան եւ ներքին փաստեր, այն է՝ ոճի, չափաբերութեան եւ գաղափարների մեծ նմանութիւնը երկու խաղերի մէջ։ Ըստ Մալօնի այս թատերկը խաղացուած է առաջին անգամ Նոյեմբեր* 1. 1604 *ին Ջէյմս (Յակոբ) թագաւորի առաջ։ Մալօն, որ վերին աստիճանի բարեխիղճ եւ զգուշաւոր հետազօտող*

է, այս մասին մի գլխաւոր ապացոյց է ունեցել իր առաջ, որ դժբախտաբար այնուհետեւ անհետացած է։ Բրբէջ հռչակաւոր դերասանն է եղել, որ առաջին անգամ խաղացել է Օթէլլոյի դերը եւ մեծ յաջողութիւնն է ունեցել։ Այն օրից ի վեր տարիներ շարունակ այս թատերերկը խաղացուել է Լոնդոնում, եւ 1610ին Գերմանիոյ Կայսեր դեսպանը ներկայ է եղել “Օթէլլոյի„ ներկայացման, ինչպէս երեւում է նրա քարտուղար Վուրմսէրի յիշատակարանից։

Շէքսպիր իր դրամայի նիւթն առած է Ջիրալդի Չինթիօ Իտալացի վիպասանի Hecatomithii գրքից, որ առաջին անգամ տպուած է Սիկիլիայում 1565ին եւ այնուհետեւ յաճախ վերատպուած է Իտալիայում։ Բայց գիրքը 1795ին միայն թարգմանուած է անգլիերէնի. ուրեմն Շէքսպիր պէտք է կամ իտալերէն բնագրի մէջ կարդացած լինի այն, կամ իր ձեռքի տակ մի թարգմանութիւն ունեցած լինի որ այժմ կորած է։ Թէեւ դրամայի նիւթը առնուած է Չինթիօյի պատմուածքից, բայց Շէքսպիր պահած է վէպի ատաղձը միայն, այն էլ ոչ մինչեւ վերջ։ Վէպը եւ դրաման բոլորովին տարբեր կերպով են վերջանում, իսկ տիպերը եւ բնաւորութիւնները նա բոլորովին նորից է ստեղծել։ Չինթիօյի վէպում Օթէլլօն մի Ափրիկեցի կիսավայրենի մաւր է, որ խանդոտութիւնից դրդուած՝ Եագօյի աջակցութեամբ իր կնոջը ամենասոսկալի կերպով սպանելուց յետոյ, տան առաստաղը քանդում է նրա գլխին, որպէս զի կարծուի թէ առաստաղից մի գերան ընկել է վրան եւ նրան սպանել։ Յետագայում Եագօն թշնամանալով Օթէլլոյի հետ՝ մատնում է նրա գաղտնիքը. Օթէլլոյին ձերբակալած բերում են Վենետիկ դատելու համար, ուր ամեն տեսակ չարչարանքներ տալիս են նրան՝ իր ոճիրը խոստովանեցնելու համար. Մաւրը մինչեւ վերջն ուրանալով՝ մահուան պատժից ազատւում է, բայց դատապարտւում է յաւիտենական աքսորի, ուր վերջ ի վերջոյ սպանւում է իր կնոջ ազգականների ձեռքով։ Այս խանդոտ ոճրագործի տիպը շատ հեռու է այն ազնիւ, մեծահոգի եւ պատուազգաց Մաւրից, որ Շէքսպիր տուել է մեզ, եւ որի եղերերգական մահը նոյնչափ սրտառուչ է մեզ համար որչափ Դէզդէմոնայինը։ Նոյնպէս է վարուել Շէքսպիր Եագօյի տիպի հետ։ Չինթիօյի վէպի չարագործը սովորական Իտալացի ինտրիգանտի տիպն է, որին

հանդիպում ենք շատ իտալական վիպասանութիւնների մէջ. ինչ տարբերութիւն նրա՝ եւ այն Մեֆիստոֆելեան բացարձակ չարագործի միջեւ, որի նմանը դժուար է գտնել երկրագնտի վրայ, եւ որի հանգունատիպը Միլտոնի հանճարն անգամ չէ կարողացել երեւակայել իր սանդարամետի մէջ։

Շէքսպիր առնելով Չինթիոյի վէպը, կամեցել է հաւատարիմ մնալ պատմւածքի դէպքերին։ Նախ ստիպւել է բնաւորութիւնները վերստեղծել վէպի դէպքերին յարմարեցնելու եւ այդ դէպքերը ճշմարտանման եւ հաւատալի դարձնելու համար։ Եւ երբ նրա հանճարը յղացել է Օթէլլոյի, Դեզդեմոնայի եւ Եագոյի տիպերը՝ նա տեսել է որ վէպի վերջաւորութիւնը չէ կարող յարմարւիլ իր ստեղծած տիպերին, եւ ստիպւել է այս անգամ դէպքերի շարունակութիւնը փոխել՝ բնաւորութիւններին յարմարեցնելու համար։ Շէքսպիրի դրամայում ոչ միայն գլխաւոր անձերը կեանքով բաբախուն էակներ են, այլ եւ երկրորդական տիպերը, ինչպէս Կասիօն, Էմիլիան, Ռոդրիգօն եւ այլն։ Բոլոր անունները նա ինքն է հնարել, բացի Դեզդեմոնայի անունից, որ իտալական վէպի մէջ է գտել։ Հայ ընթերցողին եւ բանասէրին ցոյց տալու համար թէ Շէքսպիրի ստեղծագործական հանճարը ինչպիսի մի գծուծ վէպից ինչ հրաշակերտ է դուրս բերել՝ յարմար համարեցինք իտալական վէպը բնագրից թարգմանել գրեթէ բառացի կերպով եւ տալ իբրեւ յաւելւած։ Տիպերի վերլուծման եւ Շէքսպիրի թատերագրական տեխնիկայի ուսումնասիրութեան համար “Օթէլլոյի„ աղբիւրի քննութիւնը վերին աստիճանի հետաքրքրական ընթերցանութիւն է։

“Օթէլլօն„ համարւում է Շէքսպիրի չորս հրաշակերտներից մէկը, “Համլէտի„, “Արքայ Լիրի„ եւ “Մակբէթի„ հետ միասին։ Ջոնսոն համարում է “Օթէլլօն„ կառուցւածքի տեսակէտից ամենէն կանոնաւորը։ Մալօն եւ Լօւթ կոչում են այն՝ ամենակատարեալը Շէքսպիրի բոլոր դրամաների մէջ։ Մակօլէյ գրում է, “Օթէլլօն, կարելի է ասել, աշխարհի ամենամեծ գրւածքն է„։ Այսպէս կարող էինք անվերջ գնահատումներ մէջ բերել. բայց մենք էլ կարծում ենք Ջոնսոնի պէս թէ “Այս խաղի գեղեցկութիւններն ինքնին այնպէս գրաւում են ընթերցողի ուշադրութիւնը, որ կրիտիկների լու-

տարբերութիւնները մեծ օժանդակութիւն չեն բերում նրանց»: Այնու-ամենայնիւ մտածում ենք թէ հայ ընթերցողի համար, որին հայ գրականութիւնը այդ կողմից քիչ նիւթ է տուել, աւելորդ չի լինի ծանօթանալ մի քանի մեծ Շէքսպիրագէտների կարծիքների հետ այս խաղի մասին, ինչպէս եւ այն մասին, թէ առհասարակ Շէքսպիր ինչ-պէս է ըմբռնում ողբերգութիւնը:

Շէքսպիրագէտներն ընդհանրապէս ընդունում են թէ մեծ բա-նաստեղծի կեանքի մէջ մի որոշ շրջան կայ, որ զանազանւում է միւս տարիներից՝ այդ տարիների ընթացքում նրա արտադրած երկերի բնոյթով. այդ շրջանը նրանք կոչում են «Ողբերգական շրջան», որովհետեւ այդ ժամանակամիջոցումն է որ նա տուել է իր ամենա-մեծ դրամաները: Թէեւ այդ ժամանակից դուրս էլ նա գրել է ող-բերգութիւններ, բայց այն գլուխ-գործոցները որ նրա հանճարի գերագոյն արտայայտութիւններն են, խմբուած են գրեթէ առանց ընդ-միջումի այդ շրջանի մէջ, որ սկսւում է 1601ից եւ հասնում է մինչեւ 1608: Այս եօթը տարիների ընթացքում նա ետեւէ ետեւ տուած է «Յուլիոս Կեսար», «Համլէտ», «Օթէլլօ», «Արքայ Լիր», «Տիմոն Աթէնացին», «Մակբէթ», «Անտոնիոս եւ Կլէոպատրա», եւ «Կորիոլան» ողբերգութիւնները: Այդտեղ վերջանում է «Ողբեր-գական շրջանը», որից յետոյ նա գրել է ռոմանտիկ երանգով թա-տերքներ, որոնք թէեւ լուրջ եւ տրտում բնոյթ ունին, բայց ոչ այն խտացած մռայլութիւնը որ յատուկ է Ողբերգական շրջանին:

Այս շրջանի անհերքելի գոյութիւնը, նրա զանազանումը նախըն-թաց եւ յետագայ տարիներից, այն մռայլ, թէեւ ոչ էապէս յոռե-տես աշխարհահայեացքը, որ նա ցուցադրում է այդ գրուածքների մէջ իր զանազան հերոսների բերնով՝ տեղի են տուել շատ կրիտիկ-ների կարծելու թէ գուցէ եղած են Շէքսպիրի անհատական կեան-քում իրական դէպքեր, որոնք խորապէս ազդել են նրա հոգու վրայ, եւ նրան դրդել են դիտել աշխարհը թախծալից աչքով եւ մելա-մաղձոտ տեսանկիւնից: Նրա հանճարը, մտած իր կատարեալ հա-սունութեան շրջանը, սկսում է, մասնաւոր գերազանցութեամբ, զբաղ-ւել մարդկային կեանքի անթափանցելի խորհուրդներով, մեզ շրջա-պատող ահեղ զօրութիւններով, մարդկային խիղճը զայրացնող եւ

միտքը զբաղեցնող անհասանելի հարցերով։ Թէ արդեօք այս միայնութիւնը եւ մռայլ աշխարհահայեացքը արդիւնք է իր ապրած դառնութիւնների, մեր կարծիքով բաւական լուրջ հիմքեր կան ենթադրելու։ Կոմս Էսսէքսի, Շէքսպիրի մեծարած ազնուականի, գլխատումը (1601), նոյն լորդի եւ Շէքսպիրի սրտակից բարեկամ կոմս Սաութհամպտոնի երկարատեւ բանտարկումը, Սըր Ուալտէր Ռալէյի դատապարտումը եւ բանտարկումը, իր ընկերական շրջանի պատահարները, դերասանական կեանքի դառնութիւնները, եւ իր խորին հակակրութիւնը դէպի այդ կեանքը չէին կարող ազդած չը լինել նրա ոգու վրայ։ Օթէլլօյի տուայտանքը խանդոտութիւնից՝ գուցէ վերյիշումն է այն հոգեկան տանջանքի, որ նա կրել է իր սոնէտների մէջ յիշուած “Թուխ տիկնոջ” անհաւատարմութիւնից։ Թուխ տիկինը, ինչպէս կոչուած է նա սոնէտների մէջ, որի հմայքից Շէքսպիր չէր կարողանում ինքզինքն ազատել, ոչ միայն դրժում է Շէքսպիրի սէրը, այլ եւ դառնում է նրա ամենաթանկագին բարեկամի սիրուհին, այն մարդու, որին Շէքսպիր սիրում էր ամենախոր բարեկամութեամբ որ կարող է գոյութիւն ունենալ երկու տղամարդու մէջ, եւ որին նուիրել է իր սոնէտների մեծագոյն մասը։ Շէքսպիր, դրուած այս երկու սիրոյ մէջ, ապրել է մի սոսկալի դրամա, ոչ նուազ յուզիչ քան իր նկարագրած այնքան բարոյական պայքարները. եւ Շէքսպիր իր հոգու մէջ գտել է այնքան վեհանձնութիւն, որ ներել է իր բարեկամին։ Այս տառապանքի արձագանգն է, մեր կարծիքով, որ դտնում ենք Օթէլլօյի խանդոտութեան այնքան սրտայոյզ արտայայտութիւնների մէջ. այն կրքի պոռթկումների, որոնք չեն ծնուած բանաստեղծի ուղեղի մէջ, այլ սրտից դուրս թռած ճիչեր են, եւ հէնց այդ պատճառով այնպէս սարսռեցնում են մեր սիրտը։

Նրա ընդհանուր դառնութիւնների արձագանգն է որ գտնում ենք Համլէտի հանրածանօթ խօսքերի մէջ, երբ նա գերադասում է անձնասպանութիւն գործել քան թէ հանդուրժել

*Աշխարհի այնքան նախատինքներին եւ մտրակներին,*
*Հարստահարչի անիրաւութեան,*
*Մեծամիտ մարդու արհամարհանքին,*

Քամահրած սիրոյ տուայտանքներին,
Օրէնքի բոլոր ճգճգումներին,
Պաշտօնեաների աներեսութեան,
Այն հարուածներին, որ համբերատար արժանաւորը
Ստանում է միշտ անարժաններից ...

կամ 66րդ Սոնետում, ուր Շէքսպիր իր հոգեկան վիշտն է դուրս թափել հետեւեալ տողերով,

Յոգնած սըրանցից՝ լաւ է ինձ հայցել հանգուցիչ մահը,
Քան դիտել յաւէտ արժանիքն այստեղ մուրացիկ ծնուած,
Աղքատ ոչինչը շքեղ պճնուած,
Ամենամաքուր հաւատարմութիւնն իզուր դրժուած,
Ոսկեզօծ պատիւն անամօթաբար անտեղի տրուած,
Կուսական անբիծ առաքինութիւնը բրտօրէն պղծուած,
Կատարելութիւնն անիրաւօրէն վարկաբեկ արուած,
Կաղ վարչութեան տակ կորովն ուժաթափ,
Իշխանութեան տակ գիտութեան լեզուն կաշկանդած ու կապ,
Յիմարութիւնը վարդապետօրէն իշխող հանճարին,
Պարզ ճշմարտութիւնն անարգուած որպէս պարզամտութիւն,
Ու գերի բարին ծառայող դարձած գերիշխող չարին,
Յոգնած սըրանցից, ա՛խ, հոգիս սըրանք թողնէր ու գնար,
Եթէ մեռնելովս իմ սրտակիցը մենակ չը մնար:

Այս բոլորն այնքան անկեղծ, այնքան զգացուած մի շեշտ ունի, որ մարդ անդիմադրելի կերպով մղւում է մտածել, որ այդ տողերը անձնական ապրումների արձագանգներ են։

Բայց կան կրիտիկներ որոնք հերքում են որեւէ յարակցութիւն Շէքսպիրի անհատական ապրումների եւ նրա ողբերգական շրջանի արտադրութիւնների մէջ։ Ասում են թէ նա այդ շրջանում աւելի ճնշուած լինելու հիմունք չունէր, այլ, ստեղծած լինելով իր համար որոշ դիրք, եւ արժանացած լինելով յարգանքի եւ գնահատութեան՝ անձնական դառնութիւններից չէ որ ներշնչուած էր, այլ իր հանճարի բնական զարգացումով եկել հասել էր կեանքի աւելի լուրջ, աւելի ներհուն ըմբռնողութեան։ Այսպէս թէ այնպէս, իրողութիւնն

այն է որ Շէքսպիրի ամբողջ հոգեկան եւ մտային աշխարհը այդ որոշ շրջանի մէջ ունի մի առանձին կերպարանք։

“Եթէ Շէքսպիր քառասուն տարեկան ժամանակը մեռած լինէր”, գրում է Դաուդէն, “մարդիկ կարող էին ասել, ‘Աշխարհը շատ բան կորցրեց,․ բայց աշխարհի ամենամեծ բանաստեղծը չէր կարող “Համլետից” աւելի հրաշալի մի բան ստեղծել՝ եթէ կենդանի մնար”։ Եւ սակայն, “Համլետից” յետոյ եկաւ “Արքայ Լիրը”։ “Համլետ” իսկապէս մեկնակէտն էր Շէքսպիրի ահագին եւ վերջնական խոյանքի, որի մէջ նա առաջին անգամ փորձեց մարդկային կեանքը պատշաճօրէն ըմբռնել։ “Համլետի” ստեղծագործութեան եւ գուցէ նաեւ բանաստեղծի անձնական կեանքի պատահարների շնորհիւ, որոնք փորձի դրին նրա կամքը ինչպէս Համլետի կամքը փորձի էր դրուած, Շէքսպիր ազդուել էր մարդկային գոյութեան մի քանի ամենախորին խորհուրդների սուերից։ Մի ինչ որ յարաբերութիւն հաստատուած էր նրա հոգու՝ եւ աշխարհի մռայլ եւ սարսափելի ուժերի մէջ, եւ այլ եւս անկարելի էր խոյս տալ իր առջեւ դրուած գործից, այն է զննել եւ չափել կեանքի խորութիւնները։ Շէքսպիր այդ ժամանակ յաջողել էր, գործնական տեսակէտից, տէր դառնալ աշխարհին. նա այժմ հարուստ եւ բարեկեցիկ մարդ էր. վերջացրել էր իր Անգլիայի պատմութեան թատերախաղերը, որոնցով նա կարողացել էր իր համար անկախ դիրք ստեղծել։ Բայց ճիշդ որովհետեւ կարողացել էր յաղթել իր նիւթական դժուարութիւններին՝ նրա միտքն այժմ ազատ էր զբաղուելու բարոյական աւելի խորին խնդիրներով։...

“Այս տարիների ընթացքում Շէքսպիրի երեւակայութեան թափը հասել էր իր գագաթնակէտին, եւ շարունակում էր մնալ նոյն բարձրութեան վրայ առանց նուազելու։ Նրա էներգիայի մէջ չը կար տենդային շտապ, բայց եւ չը կար դադար։ Իր հեղինակութեան նախկին տարիներում երբեմն մէկ տարուայ ընթացքում նա երկու կամ երեք խաղ էր գրում, որոնց մասին յետագայում ինքը հեղինակն ասում էր թէ դրանք հապճեպ գրուած բաներ են, որ պէտք էր նորէն մշակել, որովհետեւ նիւթից եւ արժանիքից զուրկ չէին։ Բայց այժմ անընդհատ շարունակութեամբ ամեն տարի մի մեծ ողբերգութիւն յաջորդում է միւսին։ “Օթելլօն” գրելուց յետոյ՝ բանաստեղծի հո-

գին տենչացած պէտք է լինէր հանգստութեան, մի տեսակ խաղաղ եւ կրաւորապէս ընդունուած գեղեցկութեան, մի տեսակ մտային կազդուրման։ Բայց “Օթելլոյից” յետոյ գալիս է “Լիրը”, “Լիրից” յետոյ “Մակբէթը”, “Մակբէթից” յետոյ “Անտոնիոս եւ Կլէոպատրան”, “Անտոնիոս եւ Կլէոպատրայից” յետոյ “Կորիոլանը”։ Ակներեւ է որ արտիստը այժմ կատարելապէս արթնած էր. Նրա խոյանքի թափը չէր պակասում, եւ տանում էր նրան, առանց ճիգի, մէկ նիւթից միւսը։ Նա չէր կարողանում իր հոյակապ գործը մէկդի դնել, ոչ էլ կը յօժարւէր նրա որ եւ է մասը թերի կերպով իրագործել։ Այս տարիների ընթացքում նրա մէջ ծայրայեղ երեւակայական ընդունակութիւնը միացած է ծայրայեղ ինքնիշխումի հետ։ Այժմ նրա գոյութեան ամեն մի մանրիկը բռնուած է այն հոյակապ աշխատանքի մէջ։ Արտիստների մեծ մասի ասպարէզում պատահում է յաճախ, որ սկզբում նրանց էութեան մի մասը գեղարուեստից հեռու է մնում, եւ պատրաստ է ուրիշ բաներով զբաղուելու։ Նրանք իրենց խառնուածքի մէջ ունին մի բանաստեղծական կողմ, եւ ունին մի պրոզայիկ կողմ։ Աստիճանաբար, երբ նրանք առաջ են գնում դէպի հասունութիւն, նրանց բոլոր ունակութիւնները, մէկը միւսի ետեւից, սկսում են արգասաւոր յարաբերութեան մէջ մտնել արտիստիկ բնազդի հետ, մինչեւ որ ի վերջոյ արտիստի ամբողջ էութիւնը ձուլւում է միասին եւ մի ամբողջութիւն է կազմում. Նրա գործը դառնում է մի լիակատար անձնաւորութեան արտայայտութիւնը։ Այդ շրջանը այժմ հասել էր Շէքսպիրի համար։ Նրա մեծ ողբերգութիւնների մէջ կիրք եւ մտածում, հումոր եւ պաթոս, դաժանութիւն եւ գորովանք, գիտութիւն եւ վարկած, բոլոր այդ գործօնները ընդունւում են որպէս բանւորներ, որոնք նրա երեւակայութեան հետ աշխատակից են դառնում։

“Շէքսպիրի հասկացողութեամբ ողբերգութեան առարկան է մարդկանց հոգեկան եւ մարմնական կործանումը կամ վերականգնումը, այլապէս խօսելով բարիի եւ չարի պայքարը այս աշխարհում։ Այսպէս, նա գործ ունի իրերի բուն իսկ արմատի հետ։ Շէքսպիրի կատակերգութիւնները, համեմատաբար, խաղում էին կեանքի մակերեւոյթի հետ։ Նրա պատմական թատրերգները, թէեւ շատ լուրջ, բայց չէին զբաղուած գոյութեան խորագոյն խորհուրդներով...։ Այժմ, իր

ողբերգութիւնների մէջ Շէքսպիր նետել է ինքզինքը այն մռայլ ծովի վրայ, որ ողողում է իմանալիի մեր փոքրիկ հաստատուն գնտի շուրջը... Որոշ հարցեր կան որ Շէքսպիր սկզբից յայտարարում է անլուծելի։ Նա չէ փորձում Միլտոնի պէս չարի ծագումը բացատրել։ Չէ փորձում, Դանտէի պէս, հետեւել մարդկային հոգուն՝ դէպի անվախճան տանջանքի ոլորտները, կամ Աստուծոյ յաւիտենական ներկայութեամբ լուսապայծառ երկնագաւառները։ Մարդկութեան մեծ փրկիչը չէ իջնում երկնքից։ Այստեղ երկրի վրայ չարը գոյութիւն ունի, — այս է ինչ որ Շէքսպիր ամենադրական կերպով յայտարարում է։ Նագօն իսկապէս գոյութիւն ունի։ Բայց երկրի վրայ գոյութիւն ունի նաեւ մի սրբազան ազատարար տենչ, մի մաքուր փրկարար եռանդ։ Կորդէլիան էլ գոյութիւն ունի։ Շէքսպիր այս բանին հաւատում է։ Բայց ի՞նչպէս կարող է մի Եագօ գոյութիւն ունենալ, եւ ի՞նչու պէտք է մի Կորդէլիա խեղդուած ընկնի Լիրի կուրծքի վրայ։ Այս բանե՞րն էք հարցնում։ Մենք արդէն խօսել ենք Շէքսպիրի խառասրտութեան մասին. Նրա խառասրտութեան մի մասն էլ այն է որ նա բոլոր այսպիսի հարցերը անպատասխան է թողնում։ Անգիտութիւնը ցաւալի՞ բան է։ Այո, գիտենք, ցաւալի է։ Այս մեծ դժուարութեանց փոքրիկ լուծումները դուք միշտ կարող էք ստանալ քահանայից կամ փիլիսոփայից։ Շէքսպիր գերադասում է ձեզ թողնել ահեղ խորհրդի առաջ։ Նա ձեզ չէ հրաւիրում իր փոքրիկ եկեղեցին, ոչ էլ իր գրատունը՝ փիլիսոփայական կամ աստուածաբանական լուսընկեցների շողշողուն լոյսի տակ։ Դուք մնում էք խաւարի մէջ։ Բայց մնում էք կենսատու օդի մէջ, եւ մեծ գիշերը ձեր գլխի վրայ է...։„

Այսքան այն տրամադրութեան մասին որով Շէքսպիր գրած է իր մեծ ողբերգութիւնների շարքը, որոնց մէջ "Օթէլլօն„ ամենէն ողբերգականն է։ Այն հեւիհեւ յուզումը որով հետեւում ենք դէպքերի յաջորդութեանը, գրեթէ շնչասպառ, մինչեւ հասնում է եղերական վախճանը, այն ճմլող ցաւի զգացումը, որով հանդիսատես ենք լինում օձի գալարուելուն իր անմեղ զոհերի շուրջը՝ թողնում են մի սոսկալի տպաւորութիւն, որ մենք չենք ստանում, նոյն չափով, Շէքսպիրի ոչ եւ է ուրիշ դրամայից։ Երբ վարագոյրը ընկնում է՝ մարդ ճնշւում է մի միակ զգացումի տակ. — իղո՜ւր, իղո՜ւր։

“Օթէլլօյի„ թողած այս առանձնայատուկ տպաւորութեան, նաեւ տիպերի հոգեբանութեան մասին հարկ ենք համարում հայ ընթերցողին ներկայացնել մի հատուած Շէքսպիրի ամենալաւ կրիտիկներից մէկի, Վիլեամ Հազլիտի (1817) գեղեցիկ ուսումնասիրութիւնից։

“Օթէլլօն„, ասում է նա, անօրինակ աստիճանով շարժում է մեր համակրութիւնը. այս խաղի բարոյականը շատ աւելի մօտ յարակցութիւն ունի մարդկային կեանքի առօրեայ դէպքերի հետ, քան թէ Շէքսպիրի որ եւ է ուրիշ երկի բարոյականը. դա ուղղակի ազդում է մարդկանց կուրծքի եւ կրքի վրայ։ Ճիշդ է “Լիրի„ պաթոսը աւելի սարսափելի եւ յաղթահարիչ է, բայց այնքան բնական չէ, ոչ էլ այնքան առօրեայ։ Նմանապէս, մենք չունինք նոյն աստիճանի համակրութիւն “Մակբէթի„ մէջ նկարագրուած կիրքերի հետ։ “Համլէտի„ թողած տպաւորութիւնը աւելի հեռաւոր եւ անուղղակի է. իսկ “Օթէլլօյի„ տպաւորութիւնը թէ՛ խոր է եւ թէ՛ սրտայոյզ։

“Օթէլլօյի„ մէջ կիրքը բոլորովին տարբեր կերպով է զարգանում, ինչ “Մակբէթի„ մէջ։ „Մակբէթի„ մէջ բուռն պայքար կայ երկու հակընդդէմ զգացումների միջեւ, մէկ կողմից փառասիրութիւն, միւս կողմից խղճի խայթ, եւ այդ պայքարը տեւում է սկզբից մինչեւ վերջ։ “Օթէլլօյի„ մէջ հակընդդէմ կիրքերի պայքարը, թէեւ սոսկալի, բայց շատ քիչ ժամանակ է տեւում. եւ գլխաւոր տպաւորութիւնը առաջ է գալիս զանազան կիրքերի փոփոխակի տիրապետումից, այն կատարեալ եւ աննախատեսելի յեղաշրջումից, որ կատարւում է հետզհետէ “Օթէլլօյի„ հոգու մէջ՝ տանելով ամենախոր սէրից եւ անսահման վստահութիւնից մինչեւ խանդոտութեան տառապանքը եւ ատելութեան կատաղութիւնը։ Մաւրի սիրտը ազնիւ է, վստահալից, գորովալից, եւ վեհանձն. բայց նրա արիւնը խիստ դիւրաբորբոք տեսակի է։ Այն արուեստը, որով Շէքսպիր մեզ հանդիսատես է անում թէ ինչպէս այս ազնիւ սիրտը՝ արագ բայց աստիճանական փոխանցումներով՝ հասնում է այնպիսի ծայրայեղութեան, ցոյց է տալիս Շէքսպիրի հանճարի մեծութիւնը, եւ նրա իշխումը մարդկային սրտի վրայ։ “Օթէլլօյի„ երրորդ արարուածը ամենանուրբ ցուցադրութիւնն է նրա հմտութեան եւ կրքի ըմբռնողութեան, ոչ թէ իրարուց անջատ, այլ զուգախառնուած. հմտութիւն՝ մարդկային բնութեան, եւ

արտայայտութիւն՝ մարդկային կրքի. մենք տեսնում ենք այդտեղ հեղինակի գերագոյն արուեստը, որով նա հաշտեցնում է հաւանականութիւնները՝ բնութեան խորունկ ազդումների հետ, անկառավարելի տանջանքի ջղաձգական շարժումների հետ. տեսնում ենք այն արուեստը որով նա ցոյց է տալիս թէ ինչպէս կարող ենք թէ տանջել եւ թէ տանջուիլ: Եթէ կայ մի բան որ դեռ ուժեղացնէ մեր համակրութիւնը “Օթէլլօյի„ հանդէպ, կամ մեր կարեկցութիւնը նրա բախտի հետ, դա նրա բնաւորութեան անկեղծութիւնը եւ վեհանձնութիւնն է. եւ իսկապէս այդպիսի բնաւորութիւնը արժանի չէր այդպիսի ճակատագրի:

“Եագօյի բնաւորութիւնը Շէքսպիրի հանճարի գերագործումներից մէկն է: Ոմանք, աւելի մանրակրկիտ քան իմաստուն, գտնում են թէ Եագօյի ամբողջ բնաւորութիւնը անբնական է, որովհետեւ նրա չարագործութիւնը բաւական չափով շարժառիթ չունի: Շէքսպիր, որ նոյքան լաւ փիլիսոփայ էր, որքան բանաստեղծ, այլ կարծիքի էր: Նա գիտէր որ իշխելու սէրը, որ մի այլ անուն է չարութեան սէրի համար, բնածին է մարդու մէջ: Նա այդ բանը պարզ տեսնում էր, դուցէ աւելի պարզ քան եթէ մի տրամաբանական դիագրամով նրան բացատրած լինէին: Նա այդ տեսնում էր հէնց միայն նայելով թէ երեխայք ինչպէս են ցեխի մէջ խաղում, կամ զւարճութեան համար ճանճեր սպանում: Եագօն իսկապէս պատկանում է մի կարգ տիպերի, որոնք սովորական են Շէքսպիրի խաղերի մէջ, եւ մի եւ նոյն ժամանակ յատուկ են նրան. տիպեր, որոնց միտքը սուր եւ մշտազբաղ է, եւ սիրտը կարծր եւ կոշտացած: Եագօն, անտարակոյս, այդ տիպերի ամենածայրայեղ օրինակն է. այսինքն, նա ունի մի տեսակ հիւանդագին մտաւոր գործունէութիւն, եւ դրա հետ միասին՝ կատարեալ անտարբերութիւն դէպի չարն ու բարին. կամ նոյնիսկ մի որոշ գերադասութիւն դէպի չարը, որովհետեւ չարը աւելի շուտ է յարմարւում նրա հակումների հետ, աւելի մեծ համեմ է տալիս նրա մտածումներին, եւ աւելի մեծ ասպարէզ՝ նրա գործունէութեանը: Նա բոլորովին, կամ մօտաւորապէս նոյն չափով, անտարբեր է իր սեփական բախտին, որքան ուրիշների բախտին. մի չնչին յաջողութեան համար պատրաստ է ամեն վտանգ աչքի առնել, որով

ինքն իր տիրապետող կրքի զոհը կամ խաղալիքն է դառնում. մի տեսակ անյագ տենչ՝ դժուար եւ վտանգալից գործունէութեան: Մեր Դրօշակիրը մի տեսակ տրամաբանող է, որ երեւակայում է թէ մի սուտ, որ մարդ է սպանում, աւելի հետաքրքրական բան է, քան թէ մի նոյնատառութիւն, կամ մի ճարտասանական հակադրութիւն. որ մտածում է թէ մի ամբողջ ընտանիք կործանելու փորձը աւելի շահագրգիռ է քան թէ խոշորացոյցով մի ճանճի սրտի բաբախումները դիտել. որ իր բարեկամի տնաքանդութիւնն է մեքենայում որպէս վարժութիւն իր ճարտարամտութեան, եւ մթնում մարդ է սպանում՝ չը ձանձրանալու համար: Նրա ուրախութիւնը, այնպէս ինչպէս կայ, առաջ է գալիս իր դաւերի յաջողութիւնից, եւ իր անդորրութիւնը՝ ուրիշներին տուած տանջանքից: Նա սիրող է ողբերգութեան՝ իրական կեանքի մէջ. եւ փոխանակ իր բանաստեղծական հանճարը երեւակայական տիպերի կամ վաղուց մոռացուած պատահարների վրայ գործի դնելու, նա աւելի յանդուգն եւ վտանգաւոր ձեռնարկութիւն է ընտրում, այսինքն իր "դաւը„ կամ խաղի կառուցուածքը ինքն է շինում, գլխաւոր դերերը բաժանում է մօտ բարեկամների եւ ծանօթների մէջ, եւ կատարեալ լրջութեամբ, հաստատուն ջիղերով եւ անդրդուելի վճռականութեամբ կրկնութիւն է անում: Եագօյի խօսակցութեան սովորական անառակութիւնը ոչ թէ այն պատճառով է որ հաճոյք է զգում լկտի եւ խենէշ պատկերներից, այլ այն, որ դրանով ջանք է անում ամեն բանի ստոր կողմը դուրս հանել, եւ ցոյց տալ ամենքին իր գերազանցութիւնը: Նրա խմորի մէջ չը կայ "մարդկային բարութեան կաթից„ ոչ մի կաթիլ: Նրա երեւակայութիւնը դուրս է նետում ամեն բան, որ ամենաանախորժ դերերի համը չունի. Նրա միտքը թոյն է միայն մարսում: Առաքինութիւն, կամ բարութիւն, կամ ամեն ինչ որ սրբութեան ամենափոքրիկ համն ունի, Նրա փչացած քիմքին անհամ է թւում, կամ հիւանդոտ. եւ մինչեւ անգամ վատն է գալիս որ մարդիկ Նրան պարկեշտ են համարում, որպէս թէ դա մի անարգանք լինէր Նրա առնական ոգու դէմ...: Այն տեսարաններում, ուր նա ջանք է անում Օթելլոյին համոզել, նա համեմատաբար խոհեմ, խորամանկ, մութ եւ հաշւող է: Ոչինչ չէ հասել երբեք այն խորին

կեղծաւորութեան եւ ճարպիկ մեքենայութեան, որով նա ձեռնարկում է իր ծրագրի գործադրութիւնը (III. III. 95—137)։ Այն ընդհատումները եւ կրճատ խօսքերը, դաւաճանական այն մեքենայութիւնները՝ անձնուիրութեան եւ պարկեշտութեան դիմակի տակ, այն անձկալից զգուշութիւնը, պաղ լրջութիւնը, եւ, այսպէս ասենք կեղծելու այն բուռն սէրը որին հանդիպում ենք ամեն մի տողի մէջ՝ իրենց վերջին կատարելութեանն են հասնում երբ նա ձեւացնում է որպէս թէ զայրացած է, որ Օթէլլօն կասկածներ ունի նրա անկեղծութեան վրայ, եւ բացագանչում է, “Փրկութի՜ւն, երկի՛նք, գթա իմ վրայ„։

“Եթէ Եագօն զարշելի արարած է երբ գործի թելերը իր ձեռքին են եւ իր բոլոր մեքենաները բանի են, էլ աւելի զարշելի է նա երբ այլ եւս ոչինչ չունի անելու, եւ երբ մենք կարողանում ենք ներս նայել նրա սրտի դատարկութեան մէջ։ Նրա անտարբերութիւնը՝ երբ Օթէլլօն ուշաթափւում է, ուղղակի դիւային է։ Եագոյի դերը, իսկապէս, անտանելի կը լինէր հանդիսատեսի համար, թէկուզ իբրեւ հակադրութիւն խաղի միւս անձնաւորութիւնների առաքինութեանը եւ վեհանձնութեանը, եթէ չը լինէր այն անխոնջ ճարպիկութիւնը եւ անսպառ միջոցները, որոնք գրաւում են հանդիսատեսի ուշադրութիւնը եւ նրան զբաղեցնում են աւելի այն միջոցներով, որ նա գործ է դնում իր նպատակին հասնելու համար, քան թէ բուն իսկ այդ նպատակով„։

Ընդունելով հանդերձ Եագոյի, չարութեան այդ գերագոյն հանճարի, անդիմադրելի ճարպիկութիւնը՝ շատեր գտնում են որ Օթէլլօն մի պակասաւոր տիպ է, որովհետեւ ոչ մի զգուշութիւն ձեռք չէ առնում Եագոյի ամբաստանութիւնները քննութեան բովից անց կացնելու համար, եւ նա, որ այդքան վստահութիւն ունի դէպի իր դրօշակիրը, ի՞նչու մի քիչ աւելի վստահութիւն չը պիտի ունենար դէպի իր կինը։ Այս ասելը նշանակում է Օթէլլօյի տիպը հասկացած չը լինել։ Շէքսպիր ներկայացնում է մեզ Օթէլլօյի մէջ մի մարդ, որ իր բոլոր կեանքում վարժւած է արագ վճռականութեան եւ արագ գործադրութեան, յատկութիւններ որոնք անհրաժեշտ են մի մեծ զինւորի, որպիսին էր Օթէլլօն։ Երբ Եագօն սկսում է խանդոտութեան սերմը ցանել նրա սրտի մէջ, եւ կեղծ բարեկամութեամբ

Նրան խորհուրդ է տալիս շտապով չը գործել, զգուշացնելով նա-խանձից, այն կանաչ աչքերով ճիւաղից, Օթելլօն պատասխանում է,

“Կարծում ես թէ ես նախանձոտ մարդու կեանք կը վարէի.
Ամեն նոր լուսնի նոր կասկածներով կը հետեւէի.
Երբեք, մի անգամ կասկած յղանալ՝ խնդիրն վճռել է.

Մի քիչ յետոյ ասում է,

“Ոչ, Եագօ. պէտք է կասկածից առաջ մի բան նկատեմ
Կասկածից յետոյ պէտք է հաստատեմ,
Եւ երբ հաստատի՝ ուրիշ չի մնայ,
Հեռու ինձանից եւ սէր, եւ նախանձ:

Օթելլօն այդ մի քանի խօսքով տալիս է իր պատկերը. — արագ վճռող, արագ գործադրող: Երկար մտմտալ, փոքրիկ փաստերի ետեւից ընկ-նել, դաւեր լարել, կեղծել, դրանք Ջինթիոյի վէպի Օթելլօյին կարող են սազ գալ, բայց ոչ Շէքսպիրի հերոսական ռազմիկին: Շէքսպիրի ողբերգագրական միջոցներից մէկն է՝ իր հերոսների մի լաւ յատկութիւնն առնել, եւ այդ յատկութիւնը շեշտելով, մեծ չա-փերի հասցնելով՝ դարձնել ճակատագրական, դարձնել նոյն հերոսի դժբախտութեան գլխաւոր պատճառը: Համլէտին տալիս է նա խոր-հրդածելու տրամադրութիւնը, եւ չափազանցելով այն, դարձնում է խաղի առանցքը. Օթելլօյին տալիս է արագ վճռականութիւն, եւ այդ արագութիւնը դառնում է նրա կործանիչը. նոյնպէս է եւ Լիրի հետ, նոյնպէս եւ Տիմոն Աթէնացու հետ: Օթելլօյով կարծես թէ Շէքսպիր ուզեցել է ստեղծել Համլէտի հակատիպը: Մէկի մէջ մի քիչ աւելի վճռականութիւն, միւսի մէջ մի քիչ աւելի ծանրա-խոհութիւն՝ երկուսին էլ կը փրկէր, բայց երկու դրամաները չէին գրուի: Եւ յետոյ, Օթելլօն, նուազ վստահացող, նուազ վճռական, նուազ նախանձախնդիր իր պատուին, մէկ խօսքով, մեր այսօրուայ գոր-ծած բառով, նուազ իդէալիստ, չէր լինի այն հերոսական տիպը որ այնպէս խորապէս յուզում է մեզ:

Պէտք է նաեւ աչքի առաջ ունենալ որ մենք խաղի սկզբից ար-դէն սկսում ենք ճանաչել Եագօյին, ոչ միայն նրա խաղացած դերե-րով Ռոդրիգօյի, Կասիոյի եւ Օթելլօյի հետ, այլ եւ նրա մենա-

խօսութիւններով, որոնց մէջ նա մերկացնում է իր զարշելի հոգին հանդիսականների առաջ։ Այդ բոլորից Օթելլօն անտեղեակ է մնում մինչեւ ամենավերջին րոպէն։ Նա ճանաչել է Յագոյին տարիներից ի վեր "թէ Հռոդոսի մէջ, թէ Կիպրոսի մէջ, թէ այլ դաշտերում, հեթանոսական եւ քրիստոնէական", վկայ է եղել նրա քաջութեանը, ճանաչել է նրան որպէս պարկեշտ մարդ, եւ ամեն անգամ որ Յագոյի անունը լեզուին է գալիս, իսկոյն "պարկեշտ" բառը կցւում է նրան։ Ոչ միայն Օթելլօն, այլ եւ Կասսիօն, այլ եւ ուրիշները այդպէս են ճանաչում Յագոյին. միայն Ռոդրիգօն մի երկու անգամ սկսում է կասկածել նրա պարկեշտութեան մասին, եւ երկու խօսք Յագոյի կողմից բաւական է լինում նրան համոզելու։ Ուրեմն Օթելլօյի մեծ վստահութիւնը դէպի իր տարիների ռազմընկերը ոչ մի անբնական բան չէ։ Միւս կողմից Օթելլօյի պարզ, ոգեւորուող, ոչ շատ խորունկ մտքի համար Դեզդեմոնան մնում է անհո՛ւն գրաւիչ, անհո՛ւն չքնաղ, անհո՛ւն սիրելի, բայց եւ այնպէս խորհրդաւոր։ Երբ Վենետիկի ամենամեծ Մագնիֆիկօներից մէկի աղջիկը, ամբողջ քաղաքի սքանչացման առարկան, որ մերժել է քաղաքի ամենագեղեցիկ, ամենահարուստ փեսացուներին, յայտնում է նրան իր սէրը, նա շշմած է մնում. Ի՞նչու պէտք է քաղաքի ամենափնտռուած աղջիկը սիրահարուի իր պէս սեւադէմ մի Արաբի վրայ, որ արդէն իջնում է դէպի "ծերութեան ձորը"։ Այս հարցը նա երբէք չէ կարողանում իր մէջ լուծել։ Եւ տեսէք, Յագօն, այդ մեծ հոգեբանը, իսկոյն նկատում է թէ ո՛րն է Օթելլօյի եւ Դեզդեմոնայի սիրոյ մէջ ամենաթոյլ կողմը, միակ ճեղքը զրահի մէջ, եւ իր յարձակումն ուղղում է դէպի այդ կէտը։ Նա Օթելլօյին ցոյց է տալիս թէ ի՛նչ անբնական բան կայ Դեզդեմոնայի սիրոյ մէջ դէպի մի սեւ մարդ, եւ նոյնիսկ անուղղակի կերպով արդարացնում է Դեզդեմոնայի սիրոյ ենթադրական սառչելը։ Դեզդեմոնան տեսնում է Օթելլօյի գեղեցկութիւնը նրա հոգու մէջ, բայց Օթելլօն տեսնում է Դեզդեմոնայի մէջ նրա մարմնական գեղեցկութիւնը, նրա շնորհքները։ Երբ վճռել է սպանել իր կնոջը, եւ երբ Յագոյի առաջ յիշում է մի առ մի Դեզդեմոնայի մեծ հրապոյրները, նա գովում է նրա գեղեցկութիւնը, նրա շնորհքը՝ ասեղնագործութեան մէջ, նուագելու մէջ, երգելու մէջ, նրա բարձր ու հա-

րուստ իմացականութիւնը, նրա երեւակայութիւնը, հեզահամբոյր բնաւորութիւնը, ամեն բան, բայց ոչ էականը, ոչ նրա հոգու գեղեցկութիւնը։ Եթէ մի րոպէ ընդնշմարած լինէր նա այդ հոգին, առաջին րոպէից կը բռնէր Եագոյի կոկորդից եւ հուպ կը տար։ Այն րոպէից որ նա սկսում է ականջ դնել Եագոյի առաջին հարեւանցի ակնարկներին, նա կորած է. օձի առաջին օղակը արդէն փաթաթուած է նրա շուրջը, եւ ամեն անգամ որ նա մի փոքրիկ շարժում է անում այդ սարսռացուցիչ հպումից ազատուելու, օձ-Եագոն աւելի եւ աւելի շուտ է փաթաթում իր օղակները։

Նոյն յանդիմանութիւնը անում են շատերը Դեզդեմոնային։ Գտնում են որ նա շատ անզգոյշ էր այնքան պնդելով Կասսիոյի մասին. Նոյն պատասխանը կարելի է տալ այսպէս առարկողներին։ Դեզդեմոնան իր սուրբ եւ անբիծ սիրոյ մէջ դէպի Մաւրը՝ մնում է երեխայի պէս պարզամիտ. երբ նա զուտ ազնուութիւնից եւ բարեսրտութիւնից դրդուած՝ այնպէս յամառ ստիպանքով միջնորդում է Կասսիոյի համար, մի անգամ իսկ մտքովը չէ անցնում թէ Օթէլլօն կարող է կասկած յղանալ նրա այդքան թախանձանքից. նա այդ բանը այնքան բնական է գտնում, որպէս թէ իր ամուսնուց խնդրէր որ ձեռնոց հագնէ, կամ սննդարար կերակուր ուտէ, կամ իրեն տաք պահէ։ Այդ սրտի պաշտելի պարզութիւնը եւ բարութիւնը, իսկ կնոջական քնքշութիւնը, որով նա կարեկցութիւն է զգում դէպի Կասսիոյի դժբախտութիւնը, այդ հրեշտակային գութը դառնում է նրա համար ճակատագրական։ Այստեղ էլ Եագոն, իր դերագոյն հանճարը ցոյց է տալիս՝ նրա այդ բարութիւնը իբրեւ զէնք գործածելով նրա դէմ, եւ "նրա անմեղութիւնից մի ցանց է հիւսում բոլորին իր որոգայթի մէջ ձգելու համար"։

Դեզդեմոնայի համար էլ կարող ենք ասել որ եթէ նա նուազ քնքշասիրտ, նուազ անմեղ, նուազ մանկահոգի եւ աւելի հաշուող լինէր՝ մենք չէինք ունենայ այն հրեշտակային կինը, որ կը մնայ ընդ միշտ Շէքսպիրի ստեղծած կանանցի ամենագրաւիչ տիպերից մէկը, եւ որի նման էակների գոյութիւնը դարձնում է այս աշխարհը նուազ անտանելի։

Բայց այդպիսի հոգեկան մեծութիւններ չեն կարող անպատիժ կերպով դալ անցնել առօրեայ փոքրոգութիւնների միջից, եսական շահերի եւ նիւթական պահանջների պրոզայիկ մարտաբեմից։ "Շէքս-

պիր ուզում է մեզ ցոյց տալ, ասում է Ուալտեր Ռալէյ, որ ամենամեծ եւ ամենագեղեցիկ առաքինութիւնները, երբ անցնում են սովորական չափից, փորձանք են բերում իրենց ունեցողների գլխին։ Նրանք պէտք է տառապեն իրենց մեծութեան պատճառով։ Կեանքի մէջ նրանք տառապում են առանց ձայն հանելու։ Շէքսպիրի արուեստի շնորհիւ նրանք դուրս են բերւում մեր աչքի առաջ, եւ կրում են իրենց պսակը։ Դէզդէմոնան եւ Օթէլլօն երկուսն էլ կատարեալ են դառնում իրենց մահով, այնպէս որ մարդասպանութեան գաղափարը անհետանում եւ մոռացւում է ողջակէզի գաղափարի մէջ։»

Վերջացնենք Դաուդէնի գեղեցիկ վերլուծումով։

«Ի՞նչ է այս ողբերգական պատմութեան վերջնական նպատակը։ Դրւածքի փիլիսոփայութեան բուն կէտը այն հակապատկերն է որ դուրս է բերւած երկու մարդկանց մէջ, Եագոյի եւ նրա զոհի մէջ։ Եագօն, օժտւած սուր մտաւորական ընդունակութիւններով եւ զարգացած Իտալական ապականութեան ամեն ճիւղերի մէջ՝ ապրում եւ բարգաւաճում է իր սեփական ձեւով մի աշխարհի մէջ, ուրկից ամեն ազնուութիւն եւ ամեն գեղեցկութիւն կատարելապէս բացակայ են։ Օթէլլօն՝ իր բարբարոսական անմեղութեամբ եւ արքայական մեծահոգութեամբ՝ ստիպւած է դադարել ապրելուց, հէնց որ կորցնում է իր հաւատքը դէպի սուրբը եւ բարին, որոնք նրա համար ամենաբարձր եւ ամենէն իրական բաներն են աշխարհի վրայ։ Կամ, եթէ ապրի, կեանքը նրա համար մի անողորմ տանջանք պիտի դառնայ։ Շէքսպիր մեզ խոստովանել է տալիս, թէ անձնասպանութիւնը մի հոգեզմայլ էներգիա է, թէ երկարաձգւած տանջանքն անգամ ուրախութիւն է՝ համեմատած Եագոյի նման մի արարածի երկրային կեանքին, որ մահ է կեանքի մէջ։ Ազնիւ էակը ընկնում է չարչարանքի մէջ հէնց այն պատճառով որ ազնիւ է։ Եագօն կասկած ունի իր կնոջ վրայ՝ նրան ընդունակ համարելով ամեն տեսակ նւաստութեան. բայց այդ կասկածանքը ոչ մի ուրիշ արդիւնք չէ ունենում նրա վրայ, եթէ ոչ այն, որ նրա չարասրտութիւնը սաստկացնում է։ Նա հաւատում է թէ կին կոչւող արարածը ընդունակ է ամեն անարգութեան, եւ այնու ամենայնիւ նա իր կերկերւած կոկորդից երգում է,

«Բաժակ բաժակի, ճընկ, ճընկ»։

«Այսպէս ուրեմն, Շէքսպիր ուզում է մեզ հասկացնել թէ մի բան կայ որ աւելի վնասակար է մարդկութեան համար, քան թէ տան-ջանքը. այն է, ազնիւ տառապանք կրելու անընդունակութիւնը։ Մեռնել, ինչպէս Օթէլլօն մեռնում է, ողբալի բան է. բայց ապրել ինչպէս Եագօն ապրում է, հող կուլ տալով եւ խայթելով, աւելի՛ զարհուրելի է։»

Այս է այն փիլիսոփայական շարժառիթը որ կառավարում է «Օթէլլօյի» ամբողջ գրւածքը. եւ այս ճշմարտութիւնը շատ դիւրա-ապացուցելի է ամէն առողջ խղճմտանքի համար։ Ոչ մի գերբնական հեղինակութեան կարիք չը կայ, որ վկայութիւն տայ մարդկային կեանքի այս իրականութեանը։ Ոչ դժոխքի դժգոյն բոցերն են պէտք, ոչ երկնքի նորածագ պայծառութիւնը այս աշխարհից յետոյ՝ որ այս ճշմարտութիւնը մեր աչքին պատկերացնեն։ Սա մի մասն է մեր մարդկային բնութեան եւ մեր այս մահկանացու գոյութեան. մի հաստատւած փաստ է։ Մենք նայում ենք «այն անկողնի ողբալի բեռան վրայ», եւ տեսնում ենք Եագօյին, կանգնած իր կատարած աւերմունքի առաջ։ Մենք ստիպւած չենք ենթադրական ապագայ կեանքի մէջ որոնել այս առերեւոյթ հակամարտութիւնների լուծումը։ Ապագայ կեանքն էլ կարող է ճշմարիտ լինել, եւ եթէ կայ այդպիսի կեանք, շատ լաւ, կ՚ընդունենք։ Բայց խստօրէն եւ ճշգօրէն դիտելով այն, ինչ որ այժմ գոյութիւն ունի, ինչ որ մեր աչքի առջեւն է, այնու ամենայնիւ՝ մեր հոգին բարձրանում յուսահատութիւնից։ Դէզդէմոնայի հաւատարմութիւնը դէպի իր ամուսինը եւ դէպի սիրոյ սրբութիւնը՝ շարունակում է ապրել նոյնիսկ իր մահից յետոյ։ Օթէլլօն մեռնում է «մի համբոյրի վրայ». նա նկատում է իր աղէտալի սխալը եւ խոստովանում է Դէզդէմոնայի սրբութիւնն ու հաւատարմութիւնը։ Բարութիւնը արդարանում է իր տւած պտուղով. չարութիւնն է որ պարտութիւն է կրում. Եագօն է որ յաղթւում է, նա, որի բոլոր կեանքը եղած է կոյր, աննպատակ եւ թշւառ, եղած է մի պայքար աշխարհի բոլոր ազնիւ ոյժերի դէմ, եւ որ այժմ մերկացւած եւ դատապարտւած կանգնած է մեր առաջ»։

---

Շէքսպիրի ոչ մի պատկերը գոյութիւն չունի, որի մասին հաստատապէս կարելի լինի ասել թէ իր կենդանութեան ժամանակ նկարուած է: "Համլետի„ հատորի մէջ տպուած այն պատկերը, որ հրատարակուած է նրա երկերի ֆօլիօ ժողովածուի ճակատին (1623): Ներկայ հատորինը կոչւում է Չանդոսի պատկերը, որի առնանկարը գտնւում է Լոնդոնի Ազգային պատկերների Գալերիում. սա էլ, երեւի, նկարուած է բանաստեղծի մահից մի քանի տարի յետոյ: Ենթադրւում է թէ Բըրբէջ, Շէքսպիրի ընկեր դերասանը, որ նկարելու տաղանդ ունէր, չինած է այս պատկերը, որ սկզբում պատկանելիս է եղել Շէքսպիրի ժամանակակից դերասան Ցոզեփի Տէյլըրին. ապա զանազան ձեռքերից անցնելով երկար տարիներ պատկանել է Չանդոսի Դուքսին եւ նրա ընտանիքին. վերջինս ծախել է 1848ին Էլլեսմիր Կոմսին, եւ սա 1856ին ընծայել է Ազգային Գալերիին:

Երկու բառ ներկայ հատորի միւս նկարների մասին. դրանք լուսանկարուած են "Օթէլլոյի„ մի ներկայացումից, որ կազմակերպել է վերջին տարիներում Անգլիական հռչակաւոր դերասան Մաթիսոն Լանգը (Matheson Lang). վերջինս բարեհաճեց թոյլ տալ որ այդ լուսանկարները ծառայեն իբրեւ հիմք ներկայ հատորի պատկերներին, որի համար մեր սրտագին շնորհակալութիւնն ենք յայտնում նրան: Այս պատկերների մէջ Օթէլլոյի դերը կատարում է Մաթիսոն Լանգը, իսկ Եագոյի դերը՝ հռչակաւոր դերասան Բառուչէրը:

Ց. Մ.

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

---

*ՎԵՆԵՏԻԿԻ ԴՈՒՔՍԸ:*
*ԲՐԱԲԱՆՑԻՕ, Սենատոր:*
*ՈՒՐԻՇ ՍԵՆԱՏՈՐՆԵՐ:*
*ԳՐԱՑԻԱՆՕ, Բրաբանցիոյի եղբայրը:*
*ԼՈԴՈՎԻԿՕ, Բրաբանցիոյի ազգականը:*
*ՕԹԵԼԼՕ, Մի ազնուական Մաւր, Վենետիկի պետութեան պաշտօնեայ:*
*ԿԱՍՍԻՕ, Նրա տեղակալը:*
*ԻԱԳՕ, Նրա դրօշակիրը:*
*ՌՕԴՐԻԳՕ, Վենետիկցի մի ազնուական:*
*ՄՕՆՏԱՆՕ, Օթելլոյի նախորդը Կիպրոսի կուսակալութեան մէջ:*
*ԽԵՂԿԱՏԱԿ, Օթելլոյի ծառան:*
*ԴԷԶԴԷՄՈՆԱ, Բրաբանցիոյի աղջիկը եւ Օթելլոյի կինը:*
*ԷՄԻԼԻԱ, Իագոյի կինը:*
*ԲԻԱՆՔԱ, Կասսիոյի սիրուհին:*

*Նաւաստիներ, Սպաներ, Ազնուականներ, Պատգամաբերներ, Երաժիշտներ, Սպասաւորներ եւ այլն:*

*Առաջին արարուածը Վենետիկում, միւս արարուածները Կիպրոսի մի նաւահանգստում:*

*Պատմական ժամանակ. Մայիս 1570:*

---

# ՕԹԵԼԼՕ

## ՎԵՆԵՏԿԻ ՄԱՒՐԸ

## ԱՌԱՋԻՆ ԱՐԱՐՈՒԱԾ

### ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Վենետիկ. մի փողոց:*

*Գալիս են Ռոդրիգօ և Յագօ:*

Ռոդր. Սուս, էլ մի՛ խօսիր. խիստ վշտացած եմ,
Որ հէնց դու, Յագօ, որ իմ քսակը միշտ գործ ես ածել,
Որպէս թէ տէրը ինքըդ լինէիր,
Այդ բանի մասին լուր ես ունեցել։
Յագօ. Դըժ... ժո՛խք, չե՛ս լսում.
Թէ այդպիսի բան երազումս անգամ անց կացած լինի՝
Գարշիր ինձանից։
Ռոդր. Ինձ միշտ ասել ես՝ ատում ես նըրան։
Յագօ. Արհամարհիր ինձ՝ թէ ճիշդ չը լինի։
Այս քաղաքացի երեք մեծ մարդիկ անձամբ դիմում են,
Եւ գլխարկ հանած՝ խնդրում են որ նա իրեն տեղակալ
Նշանակէ ինձ. եւ, ես իմ հոգի՛ս, գիտեմ իմ գինը.
Ի՛սկ արժանի եմ հէնց այդ պաշտօնին։
Բայց նա, պինդ փարած իր գոռոզութեանն ու դիտումներին,
Մի փքուած ճառով, սաստիկ խճողուած ռազմի ոճերով՝
Փախուստ է տալիս, եւ, ի վերջ բանի,
Ուղիղ մերժում է բարեխօսներիս։
“Իրաւ„, ասում է, ընտրել եմ արդէն իմ տեղակալը։
Եւ ի՞նչ մարդ է դա։ Այո, ճշմարի՛տ, մի մեծ թւաբան,

Միքայէլ Կասսիօ անունով մէկը, մի Փլորէնտիացի,
Որ քիչ է մնացել հոգին էլ ծախէ մի սիրուն կնոջ,
Որ երբէք մի վաշտ չէ տարել դաշտը,
Եւ պատերազմի բաժանումներից այնքան բան գիտէ,
Որքան մի աղջիկ. միայն գրքերից ուսած թէօրի՛ա,
Մի բան, որի վրայ պատմուճանաւոր սէնատորները
Նոյնչափ հմտութեամբ կարող են ճառել։
Դատա՛րկ խօսք միայն, գործնական ոչինչ, —
Ահա իր բոլոր զինւորութիւնը։
Եւ սակայն, պարոն, նա՛ նշանակւեց.
Այն ինչ ես, որի տուած փորձերին
Թէ Հռոդոսի մէջ, թէ Կիպրոսի մէջ,
Թէ այլ դաշտերում՝ հեթանոսական եւ քրիստոնեական՝
Ինքն ականատես վկայ է եղել, պէտք է տեղի տամ
Պէտք է յետ քաշւիմ այդ “Պարտ ու Պահանջ„ գրողի առաջ,
Մի որեւիցէ համրիչ ձգողի.
Նա առօք փառօք տեղակալ դառնայ,
Այն ինչ ես — Աստուած չար աչքից պահէ՛ —
Մընամ դրօշակիր Նորին Մաւրութեան։
Ռոդր. Երկի՛նքը վկայ, ես նրա դահի՛ճը կը դառնայի։
Եագօ. Հա՛, բայց ճար չը կայ. եւ ծառայութեան պատուհասն է այդ.
Առաջացումը միշտ ձեռք է բերւում յանձնարարութեամբ
Կամ թէ շնորհով. ոչ թէ հին կարգով,
Երբ ամէն երկրորդ ժառանգ էր կանգնած ամէն առաջնի։
Այժմ, ինքըդ դատիր. տեղիք ո՞ւնիմ ես Մաւրին սիրելու։
Ռոդր. Ինչո՞ւ ես ապա նրա մօտ կենում։
Հը՛, միամիտ կաց.
Եագօ. Կենում եմ միայն որ նրա գլխին իմ խաղս խաղամ՝.
Ամէնքս էլ հօ տէր չենք կարող լինել,
Ոչ էլ ամէն տէր պարկեշտ ծառաներ միայն կ'ունենայ.
Շատ պարտաճանաչ ծունկ ծռող ծառայ տեսած կը լինես,
Որ սիրահարւած ինքն իր փաղաքուշ ստրկութեանը՝
Կեանքը մաշում է, հէնց ճիշդ իր տիրոջ աւանակի պէս,

Լոկ կերի համար. եւ երբ ծերանում, դուրս է վռնդւում։
Մտրակե՜լ պէտք է այդ տեսակ պարկեշտ ծառայողներին։
Բայց կան ուրիշներ, որոնք պաճուճուած
Հաւատարմութեան տեսք ու ձեւերով՝
Սրտով իրենց են միայն նւիրուած.
Եւ ծառայութեան ցոյցեր նետելով տէրերի առաջ՝
Նըրանց մօտ աճում եւ ուռճանում են.
Եւ իրենց հալաւն աստառելուց յետ՝
Իրենք իրենց են հարկատու դառնում։
Դըրանք են ահա որ աւիւն ունին.
Ես էլ դըրանցից համարում եմ ինձ։
Եւ իրաւ, պարոն, ինչպէս որ ճիշդ է որ Ռոդրիգն ես դու,
Նոյնպէս էլ ճիշդ է, որ եթէ ինքըս Մաւրը լինէի՝
Չէի յօժարի Եագօ լինելու։
Նրան ծառայելով՝ ինձ եմ ծառայում,
Երկի՜նքը վկայ, ոչ սիրուց, ոչ էլ պարտազգացումից,
Այլ միայն դրսից այդպէս թւալով՝ լոկ շահիս համար։
Եթէ արտաքին վարք ու արարքըս, դրսի ձեւերըս,
Հոգուս բընական ունակութիւնը եւ դէմքը ցոյց տան,
Ուրեմն սպասիր որ շուտով սիրտըս ափիս վրայ պահեմ,
Որ ճայերն ուտեն։ Այն չեմ ինչ որ կամ։

Ռոդր. Ի՜նչ բախտ կ'ունենայ այդ հաստաշուրթը՝ եթէ յաջողի։

Եագօ. Գընա, դուրս կանչիր աղջըկայ հօրը, զարթեցրու քընից.
Եւ յետոյ ընկիր Մաւրի ետեւից.
Լեղի դարձրու նըրա բերկրանքը.
Խայտառակ արա փողոցների մէջ.
Գրգռիր աղջկայ ազգականներին.
Թէեւ շատ ախորժ մի կլիմայի մէջ ապրում է նա այժմ,
Գոնէ ճանճերով չարչարիր նըրան.
Թէեւ հրճւանք է նըրա հրճւանքը՝
Այնքան նեղացրու խանգարումներով, որ համը դուրս գայ։

Ռոդր. Այս է հօր տունը. բարձրաձայն կանչեմ։

Եագօ. Այո, այնպիսի սարսափի շեշտով եւ ահագոչով,

Ինչպէս ճչում են՝ երբ որ գիշերանց եւ անհոգութեամբ
Հրդեհ է ընկնում մեծ քաղաքներում։

Ռոդր. Էհէ՜յ, Բրաբանցիօ Սինիօր Բրաբանցիօ

Եագօ. Զարթնիր, Բրաբանցիօ, էհէ՜յ, գո՜ղ, գո՜ղ, գո՜ղ.
Մտիկ տուր տանըդ, եւ աղջկանըդ, եւ քսակներիդ։
Գո՜ղ, գո՜ղ է եկել։

Բրաբանցիօն դուրս է գալիս վերեւից պատուհանի առաջ։

Բրաբ. Այդ ի՞նչ սոսկալի գոռում գոչում է. ի՞նչ է պատահել։

Ռոդր. Սինիօր, ձեր բոլոր ընտանիքը տա՞նն են։

Եագօ. Փա՞կ են դռները։

Բրաբ. Վա՜հ, ի՞նչ ասել է, ինչո՞ւ էք հարցնում։

Եագօ. Բա՜հ, սինիօր, գողեր մտել են տունըդ.
Ամօթ քեզ, վեր կաց, վերարկուդ հագիր.
Սիրտըդ պատռել են, եւ հոգուդ կէսը առել տարել են։
Հիմա, հէնց հիմա, հէնց այս րոպէիս մի սեւ պառաւ խոյ
Ցատկել է ճերմակ գառնուկիդ վրայ։ Վեր կաց, մարդ, վեր կաց.
Իսկոյն խռռացող քաղքցիներին զարթեցրու զանգով.
Թէ ոչ սատանան քեզ պապ կը դարձնէ։
Վեր կաց, ասում եմ։

Բրաբ. Գժուե՞լ էք, ի՞նչ է։

Ռոդր. Յարգելի՛ սինիօր, ճանաչո՞ւմ էք ձայնս։

Բրաբ. Ոչ. ո՞վ ես։

Ռոդր. Ես Ռոդրիգոն եմ։

Բրաբ. Չը լինե՜ս բարով.
Քեզ չե՞մ պատուիրել որ չը դեգերես իմ դըռան շուրջը.
Չե՞մ ասել քեզ պարզ եւ պարկեշտօրէն
Թէ իմ աղջիկը քո պատառը չէ. իսկ դու, կատաղած,
Եւ կերուխումից ու թունդ խմիչքից խելքըդ կորցըրած,
Անզգամութեամբ եկել ես որ ինձ անհանգի՞ստ անես։

Ռոդր. Սինիօ՜ր, սինիօ՜ր, սինիօ՜ր ...

Բրաբ. Բայց լաւ իմացիր,
Ոգիս ու դիրքըս այնքան ույժ ունին, որ այս բոլորը

Քթիցդ հանեն։

Ռոդր. Բայց համբերութիւն, բարեսի՛րտ սինիօր։

Բրաբ. Ի՞նչ ես դուրս տալիս գողութեան մասին.
Սա Վենետիկն է. տունս ագարակ չէ։

Ռոդր. Ցարգելի Բրաբա՛նցիօ,
Պարզ, մաքուր սրտով եկել եմ ձեր մօտ։

Եագօ. Բա՛հ, մարդ Աստուծոյ, երեւի դուք էլ այն մարդկանցից էք, որ եթէ սատանան նրանց ասէ որ Աստծուն պաշտեն, հէնց դրա համար չեն պաշտի։ Մենք եկել ենք այստեղ ձեզ ծառայութիւն անելու, իսկ դուք մեզ սրիկաների տեղ էք դնում. թոյլ էք տալիս որ մի արաբական ձի ցատկէ ձեր աղջկայ վրայ. երեւի խրխնջացող սերունդ էք ցանկանում. նժոյգներ եւ մատակներ էք ուզում իբրեւ թոռն ու ծոռն։

Բրաբ. Ի՛նչ լիրբ անզգամն ես դու։

Եագօ. Ես մի մարդ եմ, պարոն, որ եկել եմ ձեզ ասեմ, թէ այս րոպէիս ձեր աղջիկը եւ Մաւրը մի երկու-մէջքանի անասուն են կազմել։

Բրաբ. Ի՛նչ անամօթն ես։

Եագօ. Դուք ... սէնատոր էք։

Բրաբ. Դու սրա համար պատասխան կը տաս.
Ճանաչեցի քեզ, Ռոդրիգօ ...

Ռոդր. Շատ լաւ, պատրաստ եմ պատասխան տալու.
Բայց աղաչում եմ, նախ ինձ այ՛ն ասէք,
Արդեօք ձեր կամքո՞վ եւ ձեր իմաստուն հաւանութեա՞մբն է
— Ինչպէս մասամբ էլ այդպէս է թւում — որ ձեր աղջիկը
Գիշերուայ կէսին, այս մեռելային անպատեհ ժամին
Մի պարզ վարձկանի, մի նաւավարի հսկողութեան տակ՝
Գնացել ընկել է մի վաւաշ Մաւրի բիրտ ճանկերի մէջ։
Եթէ տեղեակ էք, եւ թոյլ էք տուել,
Ապա իսկապէս մենք ձեր դէմ յանդուգն ու բիրտ ենք վարուել.
Բայց թէ անգէտ էք՝ բարեկրթութեան ամէն կանոնով
Դուք ի զուր էք մեզ այսպէս անպատւում։ Մի՛ կարծէք թէ ես,
Մարդավարութեան ամէն զգացում ոտնակոխ արած՝

Եկել եմ այստեղ Ձեր Յարգութեան հետ կատակ անելու։
Այո, ձեր դուստրը, եթէ ինքներդ հրաման չէք տուել, 140
Ասում եմ նորէն, սաստիկ անվայել մի գործ է արել
Ջոհելով այսպէս պարտականութիւն, բախտ, գեղեցկութիւն
Մի թափառական եւ մշտապտոյտ օտարականի,
Որ այսօր այստեղ, վաղն ամեն տեղ է։ Գընացէք տեսէք,
Եթէ ձեր աղջիկն իր սենեակումն է, կամ թէ տան մէջն է,
Ապա պետութեան արդարութեանը յանձնեցէք դուք ինձ,
Որ ուզեցել եմ ձեզ այսպէս խաբել։

*Բրաբ.* Կայծքար զարկեցէք,
Հէ՜յ, մի մոմ տուէք. վեր կացրէք բոլոր տնեցիներիս. 148
Այս պատահարը դրեթէ նըման է տեսած երազիս.
Հաւատալս արդէն ճնշում է հոգիս։ — Հէ՜յ, ճըրա՛գ, տղերք։
Ճըրա՛գ, ասում եմ։

Հեռանում է լուսամուտից։

*Եագօ.* Լաւ. մընաս բարով. պէտք է հեռանամ.
Անյարմար բան է, նոյն իսկ վնասակար պաշտօնիս համար,
Որ Մաւրի ընդդէմ ինձ վկայ կանչեն. եւ, եթէ մընամ,
Անշուշտ կը կանչեն։ Ինձ քաջ յայտնի է, որ պետութիւնը,
Թէպէտեւ Մաւրին այս բանի մասին մի քիչ կը սաստէ,
Սակայն չէ կարող նըրան վռնդել, 156
Եւ այս նոր ծագած Կիպրեան կռուի մէջ
Նա այն աստիճան անհրաժեշտ մարդ է, որ, կրակն էլ ընկնեն,
Այն չափի մէկը չեն կարող գտնել, որ գործը վարէ։
Այս պատճառով է, որ թէեւ նըրան այնպէս ատում եմ
Ինչպէս դժոխքի չարչարանքները՝ 161
Սակայն ներկայի հարկից ստիպուած՝
Պէտք է որ սիրոյ դրօշակ ու նշան ցուցադրեմ առ այժմ,
Ինչ որ ցոյց է լոկ։ Որպէսզի նըրան անվրէպ հանդիպես,
Տար ոտքի կանգնած խուզարկուներին Աղեղնաւորը. 165
Ես էլ նըրա հետ այնտեղ կը լինեմ։ Դէ՛հ, մնաս բարով։

Եագօն հեռանում է. Բրաբանցիօն ծառաներով,
որոնք ջահեր են կրում, գալիս է ցած։

Բրաբ. Շա՜տ ճիշդ է եղել անբախտութիւնըս. այո, գնացել է,
Եւ ինչ մընում է իմ անպէտ կեանքից՝ դառնութիւն է լոկ։
Ասա, Ռոդրիգօ, ո՞ւր տեսար նրան։
Օ՜հ, անբա՜խտ աղջիկ. Մաւրի՞ հետ տեսար. 170
Ո՞վ այսուհետեւ կ՚ուզէ հայր լինել.
Ի՞նչպէս իմացար որ նա էր։ Վա՜յ ինձ, ա՜յնպէս խաբեց ինձ,
Որ խելքից դուրս է։ Ի՞նչ ասաց նա քեզ։
— Էլի ճրագնե՛ր. զարթեցրէք բոլոր ազգականներիս։
— Ամուսնացե՞լ են, կարծում ես։

Ռոդր. Այո, այդպէս եմ կարծում։

Բրաբ. Ողորմա՜ծ երկինք, ի՞նչպէս դուրս գնաց։ Դաւաճա՜ն արիւն.
Հա՜յրեր, այսուհետ չը վստահանաք ձեր աղջիկներին՝ 177
Դատելով նըրանց տեսքերին ձեւից։
Չէ՞ որ, Ռոդրիգօ, կախարդութիւն կայ,
Որով կուսութեան եւ անմեղութեան բուն իսկ բընոյթը
Եղծուել է կարող։ Չե՞ս կարդացել այդ։

Ռոդր. Այո, սէր, ճիշդ է։

Բրաբ. Եղբօրս էլ կանչէք. երանի թէ քե՛զ տուած լինէի. 182
— Թող ձեզնից ոմանք մէկ կողմից գնան, ոմանք միւս կողմից։
— Գիտե՞ս թէ որտեղ կարող ենք բռնել նըրան եւ Մաւրին։

Ռոդր. Կարծեմ թէ Մաւրին կարող եմ գտնել՝ թէ բարեհաճէք
Բաւական մարդիկ վեր առնել ձեզ հետ, եւ ինձ հետեւել։

Բրաբ. Դու առաջ անցիր. ամեն տան առաջ ձայն կը տամ հիմա,
Նոյնիսկ շատերին ես հրամայելու իրաւունք ունիմ։
— Զէնք առէք, էհէ՜յ. 189
Եւ գիշերապահ մի քանի սպայ վեր առէք ձեզ հետ։
Հայդէ՛, Ռոդրիգօ. քո նեղութիւնը կը փոխարինեմ։

գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի ուրիշ փողոց.*

*Գալիս են Օթէլլօ, Եագօ եւ Սպասաւորներ՝ ջահերով:*

Եագօ. *Ռազմի արհեստում մարդ սպանել եմ,*
*Բայց համարում եմ թէ խղճի բուն իսկ էութեան դէմ է*
*Կանխամտածուած սպանութիւնը։*
*Չարութիւն չունիմ որ ինձ երբեմըն օգտակար լինի։*
*Ինը տասն անգամ քիչ էր մնացել սուրըս խոթէի*
*Նըրա այստեղը, թուլակուշտի մէջ։*

Օթէլլօ. *Լաւ է որ չարիր։*

Եագօ. *Վա՜հ, բայց նա այնպէս մեծ մեծ էր խօսում,*
*Լիրբ ու գրգռիչ բաներ էր ասում Ձեր Յարգութեան դէմ,*
*Որ իմ սակաւիկ աստուածվախութեամբ*
*Հազիւ կարացի ինքըս ինձ զսպել։ Բայց խնդրեմ, տէր իմ,*
*Արդեօք պինդ ու պիրկ ամուսնացա՞ծ էք։*
*Հաստատ իմացէք, այդ Մագնիֆիկօն շատ սիրուած մարդ է,*
*Եւ նըրա ձայնը՝ իր ազդեցութեամբ՝ նոյնչափ զօրեղ է*
*Որչափ Դուքսինը. նա ձեզ իրարուց բաժանել կը տայ,*
*Կամ այնքան արգելք եւ գլխացաւանք կը սարքէ ձեր դէմ,*
*Որքան օրէնքը, հետն էլ իր բոլոր կարողութիւնը*
*Նըրան թոյլ կը տան։*

Օթէլլօ. *Թող ուզածն անէ.*
*Պետութեանն արած ծառայութիւններս*
*Նրա գանգատի ձայնը կը խեղդեն։ Դեռ եւս անյայտ է,*
*— Բայց երբ գիտենամ թէ պարծենալը պատիւ է բերում*
*Անշուշտ կը յայտնեմ — որ ես էլ կեանքըս եւ գոյութիւնըս*
*Պարտ եմ գահանիստ նախահայրերի,*
*Եւ արժանիքներս իրաւունք ունին խիզախ յաւակնել*
*Այն բարձըր դիրքին, որին հասել եմ։ Իմացիր, Եագօ,*
*Եթէ անուշիկ Դէզդէմոնայի սէրը չը լինէր՝*
*Չէի յօժարի պարփակել անտուն եւ ազատ կեանքըս*

*Որ եւ է եզրով կամ շրջապատով՝*
*Թէկուզ ծովերի բոլոր գանձերը ինձ պարգեւ տային։*
*Բայց նայիր. սրանք ի՞նչ ճրագներ որ մեզ են գալիս։*
*Եագօ.* *Հայրը կը լինի, որ վեր է կացել, եւ բարեկամները։*
*Լաւ է ներս գնաք։*
*Օթէլլօ.* *Ո՛չ, ի՞նչու. Թող գայ։*
*Թող արժանիքներս եւ աստիճանըս եւ հանգարտ խիղճըս*
*Հանդիսացնեն ինձ այնպէս ինչպէս կամ։ Նրա՞նք են, ի՞նչ է։*
*Եագօ.* *Ոչ, Յանոս վկա՛յ։*

Գալիս են Կասսիօ եւ մի քանի Սպաներ՝ ջահերով։

*Օթէլլօ.* *Դուքսի ծառաներն եւ տեղակա՛լըս.*
*Գիշերուայ բարին ձեր վըրայ լինի, բարեկամնե՛րըս,*
*Ի՞նչ լուր էք բերում։*
*Կաս.* *Զօրապետ, Դուքսը բարեւում է ձեզ,*
*Եւ ցանկանում է ձեր խիստ շուտափոյթ ներկայութիւնը*
*Հէնց այս րոպէիս։*
*Օթէլլօ.* *Ի՞նչ կայ, կարծում էք։*
*Կաս.* *Պէտք է Կիպրոսից լուր եկած լինի.*
*Շատ հրատապ բան է. ռազմանաւերը այս գիշեր եւ եթ*
*Տասներկու տարբեր մարդ են ուղարկել իրար ետեւից։*
*Սենատորներից շատերին արդէն քընից զարթեցրել*
*Եւ ժողովել են Դուքսի պալատում.*
*Ձեզ էլ շատ սաստիկ փնտռած են եղել,*
*Բայց չը գտնելով ձեր բնակարանում՝*
*Սենատը երեք զանազան խումբեր ճամբայ է հանել*
*Որ ձեզ որոնեն։*
*Օթէլլօ.* *Լաւ որ դուք գտաք։*
*Դէ՛հ, գընամ տունը երկու բառ ասեմ եւ կը գամ ձեզ հետ։*

Օթէլլօն գնում է։

*Կաս.* *Դրօշակիր, այստեղ նա ի՞նչ է անում։*
*Եագօ.* *Հը՛մ, նա այս գիշեր մի ցամաքային նաւ է ձեռք ձգել,*
*Եւ եթէ դատուի որ իր գրաւումն օրինաւոր է՝*

Բախտը բացւել է։

Կաս. Լաւ չը հասկացայ։

Եագօ. Ամուսնացել է։

Կաս. Ո՞ւմ հետ։

Օթէլլօ վերադառնում է։

Եագօ. Ու՛մ հե՞տ... Հայդէ՛, զօրապետ, գալի՞ս էք գընանք։

Օթէլլօ. Այո, եկ գընանք։

Կաս. Նոր խումբ էլ եկաւ ձեզ որոնելու։

Գալիս են Բրաբանցիօ, Ռոդրիգօ,
Սպաներ եւ Սպասաւորներ՝ ջահերով։

Եագօ. Ա՛հ, Բրաբանցիօն է, զօրապետ, զգո՛յշ.
Վատ մտքեր ունի։

Օթէլլօ. Է՛հէ՛, կանգ առէք։

Ռոդր. Սինիօր, Մաւրըն է։

Բրաբ. Զարկեցէք դըրան, դու գո՛ղ աւազակ։

Երկու կողմերն էլ սուրերը դուրս են քաշում.

Եագօ. Դո՞ւ ես, Ռոդրիգօ. եկ առաջ, պարոն. պատրաստ եմ քո դէմ։

Օթէլլօ. Ցած դրէք ձեր այդ փայլուն սուրերը
Որ ցօղը նրանց չը ժանգոտացնէ։ — Յարգելի՛ սինիօր,
Դուք ձեր տարիքով պէտք է հրամայէք, ոչ թէ զէնքերով։

Բրաբ. Ո՛վ դու անարգ գող, ո՞ւր ես թագցրել դու իմ աղջկան,
Ո՛վ դու նզովեալ, թովել ես նրան.
Հարց կ՚անեմ ամէն խելք ունեցողից,
Որ եթէ թովքի շղթաների մէջ կապւած չը լինէր՝
Ի՞նչպէս կարող էր մի քնքուշ աղջիկ, սիրուն, երջանիկ,
Եւ ամուսնութեան այնքան հակառակ, որ խոյս էր տալիս
Մեր ազգի հարուստ, գանգրահեր, սիրւած պատանիներից,
Փախչել հօր տընից՝ ծաղրի առարկայ դառնալու համար,
Եւ իրեն նետել քեզ պէս էակի մըրոտ գրկի մէջ,
Զարհուրանք ազդող, ոչ թէ զմայլանք։
Աշխարհն ինձ դատէ՛, խիստ ակներեւ չէ՞

Որ դու զարշելի դիւթքով, յուռութքով ազդել ես վրան,
Եւ նրա քնքուշ անմեղութիւնը մոլորեցրել ես
Հոգին թուլացնող հանքանիւթերով եւ դեղօրայքով։
Պէտք է այդ մասին վիճաբանել տամ.
Շատ հաւանական, եւ մտքի համար շօշափելի է։
Ուրեմըն բռնում եւ կապում եմ քեզ որպէս մարդախաբ,
Որպէս կիրարկող չար արւեստների որ արգելւած են,
Բռնեցէք սրան. եթէ դիմադրէ՝
Բռնի զսպեցէք ի վտանգ իր անձի։

Օթէլլօ. Ձեռք մի բարձրացնէք, ոչ դուք, իմ մարդիկ, ոչ էլ միւսներդ։
Եթէ իմ դերը սուր քաշել լինէր՝
Յուշարար պէտք չէր որ գիտենայի։
Ո՞ւր էք ուզում գամ ձեր մեղադրանքին պատասխան տալու։

Բրաբ. Բանդ, մինչեւ օրէնքն ու դատարանի կարգ ու կանոնը
Քեզ առեան կանչեն պատասխան տալու։

Օթէլլօ. Եթէ հնազանդեմ՝ Դուքսը ի՞նչ կ'ասէ,
Որի ծառաները կանգնած են կողքիս,
Որ մի պետական մեծ գործի համար ինձ իր մօտ տանեն։

Սպայ. Իրաւ է, տէր իմ. Դուքսը հէնց հիմա ժողով է նստել,
Եւ գիտեմ որ Ձեր Ազնւութեանն էլ սաստիկ փնտռում են։

Բրաբ. Դուքսը ժողովի՞, այն էլ ա՞յս ժամին։ Տարէք այս մարդուն.
Իմ դատս էլ դատ է. թէ Դուքսը ինքը
Թէ պաշտօնակից իմ եղբայրներից իւրաքանչիւրը
Այնպէս խիստ կը զգան այս նախատինքը, որպէս իրենցը։
Եթէ մենք թոյլ տանք այսպիսի գործեր անպատիժ մնան,
Ապա ստրուկներ եւ հեթանոսներ թող մեզ տէր դառնան։

Գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Մի ժողովի դահլիճ Դոժերի Պալատում.*

*Դոժը եւ Սենատորները՝ սեղանի շուրջը նստած. Սպաներ ծառայում են:*

Դուքս. Այս լուրերի մէջ համաձայնութիւն չը կայ, որ նրանց
Արժէք ընծայէ։
Ա. Սէն. Ճիշդ է, իրար հետ անհամեմատ են։
Այստեղ յիշուած է հարիւր եօթը նաւ։
Դուքս. Եւ իմ նամակում հարիւր քառասուն։
Բ. Սէն. Իսկ իմ նամակում ճիշդ երկու հարիւր։
Բայց թէեւ դրանք ճշգրիտ թւի մէջ իրար չեն բռնում,
— Եւ այն դէպքերում, երբ միակ հիմքը ենթադրութիւնն է՝
Յաճախ թւերը տարբեր են լինում — սակայն բոլորն էլ
Հաստատում են այն, թէ կայ թուրքական մի նաւատորմիղ
Որ արշաւում է Կիպրոսի վրայ։
Դուքս. Այո, բաւական խելքի մօտ է դա.
Ես էլ չեմ ուզում հանգստացնել ինձ թւի սխալով.
Այլ հաւատում եմ էական կէտի ահաւորութեան։
Նաւաստի (դրսից). Հէ՜յ, հօ՜, հէ՜յ, հօ՜, հէ՜յ։ (Գալիս է նաւաստին։)
Սպայ. Սուրհանդակ եկաւ ռազմանաւերից։
Դուքս. Հը՞, ի՞նչ լուր, ի՞նչ կայ։
Նաւ. Թուրք նաւատորմը Հռոդոս է գնում.
Այս է պատուիրել Սինիօր Անջէլօն յայտնել պետութեան։
Դուքս. Նո՞ր փոփոխութիւն. սրան ի՞նչ կ՚ասէք։
Ա. Սէն. Կարելի բան չէ,
Բանականութեան որ եւ է փորձով ըմբռնելի չէ.
Մի խաբկանք է դա՝ մեր ուշքը թիւր կողմ թեքելու համար։
Երբ աչքի առնենք թէ Թուրքի համար
Կիպրոսը որքան կարեւոր կէտ է, եւ նորէն խորհենք,
Թէ նրա համար նա ոչ թէ միայն աւելի արժէ,
Քան թէ Հռոդոսը, այլ եւ աւելի դիւրաւ կ՚առնուի,
Քանի որ այնպէս զօրեղացած չէ ռազմի զրահով,

Այլ բոլորովին զուրկ է այն բոլոր սպառազէնքից,
Որով Հռոդոսը պատսպարուած է, երբ մտածենք այս,
Չենք կարող կարծել թէ Տաճիկն այնքան անյաջողակ է,
Որ վերջին թողնէ ինչ որ իր համար առաջին բանն է,
Անտես անելով հեշտ ու շահաւէտ մի ձեռնարկութիւն,
Եւ դիմագրաւէ անշահ վտանգի։

Դուքս. Չէ՛, կասկած չը կայ. Հռոդոս չեն դնում։
Բայց ահա նոր լուր։

Գալիս է մի Սուրհանդակ։

Սուր. Ողորմա՛ծ տէր իմ,
Օսմանցիները ուղիղ նաւելով դէպի Հռոդոսը՝
Այնտեղ միացան մի այլ պահեստի նաւատորմի հետ։

Ա. Սէն. Տեսէ՛ք, չասա՞ցի, քանի՞, քո հաշւով։

Սուր. Երեսուն. եւ այժմ, նոյն եկած ճամբով վերադառնալով՝
Պարզ արշաւում են Կիպրոսի վըրայ։
Սինիօր Մոնտանոն, ձեր հաւատարիմ եւ արի ծառան,
Խոնարհ յարգանքով յայտնում է ձեզ այս,
Եւ աղաչում է հաւատաք նըրան։

Դուքս. Պարզ է ուրեմըն, Կիպրոս են գընում։
Մարկոս Լուկչիկօն Վենետի՞կ է այժմ։

Ա. Սէն. Ոչ, Փլորանս է այժմ։

Դուքս. Գրիր իմ կողմից որ շուտ, շա՛տ շուտ գայ։

Ա. Սէն. Ահա Բրաբանցիօն եւ կորիճ Մաւրը։

Գալիս են Բրաբանցիօ, Օթէլլօ, Եագօ, Ռոդրիգօ եւ Սպաներ։

Դուքս. Կորիճ Օթէլլօ, պէտք է անյապաղ ձեզ գործի դընենք
Երկրի թշնամու, Օսմանցու ընդդէմ։

Բրաբանցիօյին

Ա՛հ, ձեզ չը տեսայ. բարով էք եկել, յարգելի սինիօր.
Այս գիշեր սաստիկ կարօտ ենք եղել ձեր խորհուրդներին
Եւ աջակցութեան։

Բրաբ. Եւ ես էլ ձերին։ Ձերըդ բարձրութիւն,

Ներեցէք խնդրեմ. ոչ պաշտօնս է ինձ անկողնից քաշել,
Ոչ որ եւ է լուր որ լսած լինեմ մի գործի մասին,
Ոչ էլ հանրութեան հոգսն է ինձ տանջում,
Այլ անձնական ցաւս այնպէս ամեն թումբ յաղթահարել է,
Որ նա լափում է եւ կուլ է տալիս ամեն ուրիշ ցաւ,
Եւ ինքը մնում այնպէս ինչպէս կայ։

Դուքս. Ա՛հ, ի՞նչ կայ միթէ։

Բրաբ. Աղջիկըս, աղջիկըս։

Դուքս. Մեռա՞ւ։

Բրաբ. Այո, ինձ համար։
Խաբել են նրան, ինձնից գողացել,
Եւ կախարդանքով, շառլատաններից գնած դեղերով
Գլխից հանել են. քանզի բնութիւնը՝
Ոչ կոյր լինելով, ոչ պակասաւոր, եւ ոչ խելքից կաղ՝
Չէր կարող այդքան այլանդակ կերպով իր ճամբից դուրս գալ
Առանց դիւթանքի։

Դուքս. Ով էլ որ լինի, որ այդ պիղծ ձեւով
Խլած է խելքը ձեր աղջկանից, եւ նրան ձեզնից,
Պէտք է ինքներդ կարդաք օրէնքի արիւնոտ գիրքը՝
Իր դաժան տառով եւ ձեր սեփական մեկնաբանութեամբ,
Թէկուզ հարազատ որդիս էլ լինի ձեր դէմ մեղանչած։

Բրաբ. Շնորհակալ եմ Ձեր բարձրութիւնից։
Ահա անողը, այս Մաւրը, որին, ինչպէս լսում եմ,
Յատուկ հրամանով՝ պետական որոշ գործերի համար՝
Կանչել էք այստեղ։

Դուքս եւ Սենատորներ. Շատ ցաւալի է։

Դուքս. (ՕԹԵԼԼՕՅԻՆ) Իսկ դուք ձեր կողմից ի՞նչ կ'ասէք սրան։

Բրաբ. Ոչինչ, եթէ ոչ որ ճշմարիտ է։

Օթելլո. Հզօր, խոհամիտ, յարգոյ սինիօրներ,
Իմ ամենազնիւ եւ միշտ բարեհաճ իշխանաւորներ,
Որ այս ծեր մարդու աղջկան տնից առել տարել եմ,
Ճիշդ է. բայց ճիշդ է, որ ես նրա հետ ամուսնացել եմ.
Յանցանքիս բոլոր դէմքն ու ճակատը այդքան է միայն,

Բայց ոչ աւելի։ Կոշտ եմ խօսքի մէջ,
Եւ խաղաղութեան փափկասուն ոճից խոպան անբաժին.
Քանզի այն օրից, ինչ այս բազուկներս
Եօթնամեայ ծուծով հիւթաւորուել են,
Մինչեւ ինն ամիս սրանից առաջ՝ նրանք վարել են
Իրենց ամենէն եռանդուն գործը վրանապատ դաշտում.
Քի՛չ բանի մասին կարող եմ խօսել այս լայն աշխարհից,
Եթէ ոչ միայն ինչ որ կապ ունի խազմ ու ռազմի հետ.
Եւ այդ պատճառով դժւար թէ դատիս հրապոյր ընծայեմ
Ինքըս լինելով իմ ջատագովը։
Բայց եթէ հաճէք համբերող լինել՝
Մի պարզ, անպաճոյճ պատմութիւն կ'անեմ
Իմ սիրոյ բոլոր ընթացքի մասին,
Թէ ինչ դեղերով, ինչ դիւթանքներով,
Ի՛նչ ոգեկոչով, եւ ի՛նչ մոգական հզօր արուեստով
— Ինչպէս ինձ այստեղ ամբաստանում են —
Շահել եմ նրա աղջկայ սիրտը։

Բրաբ. Մի համեստ աղջիկ, այնքան հեզ, հանդարտ,
Որ նրա հոգու ամեն մի իղձը շիկնում էր իր վրայ,
Հակառակ բնութեան, տարիքի, երկրի, բարի անունի,
Եւ ամեն բանի, գայ սիրահարուի այնպիսի մէկի,
Որին նայելուց անգամ սարսում էր։
Պակասաւոր է, հաշմ է այն խելքը, որ խոստովանի
Թէ կարելի է որ կատարեալը այսքան մոլորուի
Բնութեան բոլոր կանոնների դէմ։
Մարդ ստիպուած է նենգամիտ դժոխքի արուեստների մէջ
Փնտռել այս բանի բացատրութիւնը։ Պնդում եմ կրկին,
Թէ նա անպատճառ արեան վրայ ազդող որոշ դեղերով
Կամ թէ յատկապէս դիւթուած խմիչքով գործել է վրան։

Դուքս. Այդ բանն ասելը ապացուցել չէ.
Աւելի հաստատ, ակնյայտ փաստեր պէտք են նրա դէմ,
Քան թէ այդպիսի թեթեւ վարկածներ, թոյլ երեւոյթներ
Եւ սովորական ենթադրութիւններ։

Ա. ՍԷՆ. Խօսիր, Օթելլօ,
Իրա՞ւ է արդեօք որ բռնադատող, ծուռ միջոցներով
Այս մանկամարդի զգայարանքը յաղթահարել ես
Եւ թունաւորել. թէ դա եղած է լոկ աղերսանքով,
Եւ այնպէս ուղիղ սիրախօսութեամբ,
Որպիսին սիրտը ուղղում է սրտին։

ՕԹԵԼԼՕ. Աղաչում եմ ձեզ,
Մարդ ուղարկեցէք տիկնոջը բերեն Աղեղնաւորից,
Եւ իր հօր առաջ թող ինքն իմ մասին վկայութիւն տայ.
Եթէ դուք դատէք նրա խօսքերից որ ես մեղք ունիմ՝
Ապա ոչ միայն յետ առէք ինձնից ձեր այս պաշտօնը
Եւ ինձ շնորհած վստահութիւնը,
Այլ ձեր վճիռը կեանքս էլ թող խլէ։

ԴՈՒՔՍ. Բերեցէք այստեղ Դեզդեմոնային։

ՕԹԵԼԼՕ. Եագօ, տար սրանց. տեղը լաւ գիտես։

Եագօ եւ ծառաները դուրս են գնում։

Եւ մինչեւ նա գայ՝
Նոյն անկեղծութեամբ, որպէս թէ արեանս մոլութիւնները
Երկնքի առաջ խոստովանէի, նոյն ճշմարտութեամբ
Ես ձեր լրջամիտ ունկնդրութեանը կը ներկայացնեմ,
Թէ ի՛նչ միջոցով սիրուն աղջկայ սիրտը շահեցի,
Եւ նա էլ իմը։

ԴՈՒՔՍ. Պատմիր, Օթելլօ։

ՕԹԵԼԼՕ. Հայրն ինձ սիրում էր, յաճախ հրաւիրում,
Պատմել էր տալիս իմ կեանքի բոլոր պատահարները,
Տարի առ տարի, ամէն պատերազմ, պաշարում, արկած
Որ տեսել էի։ Ես էլ, սկսած իմ մանկութիւնից
Մինչեւ այն րոպէն որ նա լսում էր՝ բոլորը յիշում
Եւ պատմում էի խիստ աղէտալի ձախորդութիւններ,
Սրտաշարժ դէպքեր, ծովի եւ դաշտի,
Երբ մազ էր մնացել որ սպանուէի խրամի վրայ,
Ի՛նչպէս անզգամ թշնամու ձեռքը ես գերի ընկայ,

Ի՛նչպէս ծախուեցայ, ի՛նչպէս փրկանքով ինձ յետ գնեցի,
Եւ այլ դիպուածներ իմ ճամբորդական յիշատակներից,
Նկարագրելով մեծ քարանձաւներ, չոր անապատներ,
Բիրտ քարահանքեր, ժայռեր ու սարեր՝ մինչ երկինք հասած,
Ահա պատմութեան առարկաները.
Եւ մարդակերներ, իրար միս ուտող,
Եւ ադամորդիք, որոնց գլուխը ուսերից վար է։
Իսկ Դէզդէմոնան շատ մեծ ախորժով ուզում էր լսել.
Բայց տան գործերը շատ յաճախ նորան դուրս էին կանչում.
Եւ նա շտապով կարգի դնելով՝ վերադառնում էր,
Եւ իմ խօսքերը անյագ ականջով լափում էր կարծես։
Այս նկատելով՝ մի անգամ յարմար մի ժամ ընտրեցի,
Եւ այնպէս արի որ թախանձագին խնդրէ ինձանից
Պատմել իմ բոլոր պանդխտութիւնը,
Որից հատուածներ լսել էր միայն, այն էլ ոչ ուշով։
Ես ընդունեցի, եւ շատ անգամներ նորա աչքերից
Արցունք կորզեցի՝ պատմելով բախտի այն հարուածները
Որ կրել էի ջահիլ օրերում։ Երբ աւարտեցի՝
Նա ինձ նուիրեց հառաչանքների մի ամբողջ աշխարհ,
Երդուեց թէ իրա՛ւ զարմանալի է, խի՛ստ զարմանալի.
Շատ սրտաշարժ է, անչա՛փ սրտաշարժ.
Ասաց, “Նրանի լսած չլինէի„. բայց յետոյ կցեց,
“Երնէկ թէ Աստուած ինձ այդպիսի մարդ ստեղծած լինէր„։
Շնորհակալ եղաւ, եւ յետոյ ասաց,
“Եթէ կայ մի ոք ձեր ընկերներից ինձ սիրահարուած,
Բաւ է որ նորան ուսուցէք պատմել ձեր պատմութիւնը,
Եւ ես նրանն եմ„։ Այս թելադրանքը բաց արաւ լեզուս.
Նա ինձի սիրեց՝ ի սէր իմ տեսած այն վտանգների,
Եւ ես էլ նորան՝ ի սէր ցոյց տուած իր կարեկցութեան.
Ահա այն միակ կախարդութիւնը որ գործ եմ դրել։
Բայց ահա եկաւ. թող այժըմ ինքը վկայութիւն տայ։

Գալիս են Դէզդէմոնա, Եագօ եւ Սպասաւորներ։

Դուքս. Այդ պատմութիւնը եւ իմ աղջկան կարող էր գրաւել:
Բարի Բրաբանցիօ, այս վատ եղածը լաւ կողմից առէք.
Լաւ է պաշտպանուիլ կոտրած զէնքերով քան դատարկ ձեռքով:
Բրաբ. Խնդրեմ, թոյլ տուէք որ դուստրըս խօսէ: 171
Եթէ ընդունի, որ կէս տարփածուն նա ինքն է եղել՝
Հուր թափուի գլխիս եթէ այս մարդուն իզուր մեղադրեմ:
Եկ, հեզ օրիորդ. արդեօք յարգելի այս ժողովի մէջ
Ո՞վ է այն անձը, որին աւելի պարտ ես հնազանդել: 175
Դէզդ. Իմ ազնիւ հայրըս,
Երկու զանազան պարտականութիւն տեսնում եմ այստեղ.
Կեանքս ու կրթութիւնս ձեզ եմ պարտական.
Կեանքս ու կրթութիւնս ինձ ուսուցել են պատուել, յարգել ձեզ:
Դուք էք իմ տէրը. եւ մինչեւ այստեղ ձեր աղջիկն եմ ես.
Բայց ահա սա է իմ ամուսինը. 180
Եւ հէնց այն չափով, որչափ իմ մայրը ձեզ էր անձնուէր,
Ձեզ իր հօրիցն էլ գերադասելով, ես էլ յայտնում եմ
Որ անձնուէր եմ Մաւրին, իմ տիրոջ:
Բրաբ. Լաւ, Աստուած քեզ հետ: — Ես աւարտեցի: 184
Ձերդ Բարձրութիւն, այժըմ պետական գործերին անցնենք.
Լաւ էր մի զաւակ որդեգրէի, քան հայր լինէի.
Եկ այստեղ, ո՛վ Մաւր. իմ բոլոր սրտով տալիս եմ քեզ այն,
Որ եթէ ինքըդ առած չլինէիր՝
Իմ բոլոր սրտով պիտի մերժէի: — Քո շնորհիւ, գոհա՛ր,
Հոգով ուրախ եմ որ քեզանից դուրս էլ զաւակ չունիմ.
Թէ ոչ, փախուստըդ ինձ կը հարկադրէր բռնակալ դառնալ,
Եւ կապանք դնել նրանց ոտքերին: Վերջացրի, տէր իմ:
Դուքս. Թոյլ տուէք որ ես ձեր կողմից խօսեմ, եւ մի վճիռ տամ
Որ իբրեւ սանդուղք կամ թէ պատուանդան 194
Այս սիրող զոյգին թոյլ տայ բարձրանալ դէպի ձեր շնորհը:
Երբ ճար չէ մընում, եւ յոյսը հատնում,
Վատթարի գալով՝ վատն է վերջանում.
Անցած մի չարիք եթէ շատ ողբանք՝
Նոր չարիքների մենք դուռ կը բանանք.

Ինչ որ չենք կարող փորձանքից փրկել,
Թող համբերութեամբ գլխանք անարգել.
Գողօնի տէրը երբ որ ժպտում է,
Էլի նա գողից մի բան կապտում է.
Ով շռայլում է ապարդիւն կսկիծ,
Նա գողանում է սեփական ինչքից։

Բրաբ. Թող Թուրքը ուրեմն Կիպրոսը գրաւէ.
Ի՞նչ հոգ, քանի որ ժպտալը բաւ է.
Ա՛յն մարդն է կարող այդ խրատները լռութեամբ տանել,
Ով չունի այլ ցաւ, եթէ ոչ ցաւից սփոփանք հանել.
Բայց ով փոխ առնէ համբերութիւնից, որ տայ տխրութեան,
Նա պէտք է տոկայ թէ՛ ցաւին, եւ թէ՛ մխիթարութեան։
Խրատները մեղր կամ թէ լեղի են,
Նայած թէ տեղին կամ անտեղի են.
Եւ բառերը միշտ կը մնան բառեր. դեռ ինձ չէ յայտնի,
Որ ցաւոտ սրտին ականջը բուժում պարգեւած լինի։
Բայց անցէք խնդրեմ պետութեան գործին։

Դուքս. Տաճիկն ահեղ պատրաստութեամբ արշաւում է Կիպրոսի վրայ։ Օթէլլօ, տեղական ամրութիւններին ամենից լաւ քեզ են ծանօթ, եւ թէպէտ մենք այնտեղ մի կուսակալ ունինք, որ հռչակուած է իր ընդունակութեամբ, բայց եւ այնպէս՝ հասարակաց կարծիքը, արդիւնքների վեհապետուհին, աւելի մեծ վստահութեամբ քեզ է տալիս իր ձայնը. պէտք է ուրեմն զիջանես նոր ձեռք բերած բախտդ մի քիչ նսեմացնել այս տաժանելի եւ արկածալից արշաւանքով։

Օթէլլօ. Ո՛վ ակնածելի տէր Սենատորներ,
Վաղուց՝ բռնապետ սովորութիւնը
Դարձրել է ռազմի քար ու պողպատէ բիրտ անկողինը
Ինձ համար փափուկ՝ երեք հեղ ջոկած փետրէ մահճի պէս.
Խոստովանում եմ որ ես գտնում եմ չալքաշութեան մէջ
Բնածին աւիւն եւ զւարթութիւն։ Ես յանձն եմ առնում
Վարել նոր ծագած այս պատերազմը Տաճիկների դէմ.
Եւ խոնարհելով ձեր պատկառելի ժողովի առաջ՝

Խնդրում եմ յարմար տնօրինութիւն իմ կնոջ համար,
Եւ պարտ ու պատշաճ կարգադրութիւններ դիրքի եւ ծախքի,
Տան եւ ծառայի, ինչպէս վայել է նորա կենցաղին։

Դուքս. Եթէ յօժար ես՝ թող հօր մօտ կենայ։

Բրաբ. Ես չեմ ընդունում։

Օթելլօ. Ոչ էլ ես, տէր իմ։

Դեզդ. Ես էլ չեմ ուզում այնտեղ բնակուիլ,
Եւ իմ հօր աչքին միշտ երեւալով՝ բարկացնել նորան։
Ով ողորմած Դուքս, իմ առաջարկին բարեհաճօրէն
Ունկըն շնորհեցէք, եւ թող ձեր ձայնը ինձ պաշտպան կանգնի,
Եւ օգնութեան գայ իմ անփորձութեան։

Դուքս. Լաւ, Դեզդէմոնա, ի՞նչ է փափագըդ։

Դեզդ. Որ Օթելլօյին սիրեցի՝ հետը ապրելու համար՝
Ցախուռն ընթացքըս եւ փոթորկայոյզ ճակատագիրըս
Թող փողահարեն համայն աշխարհին։
Սիրտըս ամուսնուս բուն իսկ արհեստին սիրահարուած է.
Ես Օթելլօյի հոգու մէջ տեսայ նորա երեսը,
Եւ նորա փառքին եւ հերոսական շնորհքներին է,
Որ նուիրել եմ հոգիս ու բախտըս։ Ուրեմն, ազնիւ տեարք,
Թէ ինձ տուն թողնեն՝ խաղաղութեան մէջ ապրող ցեցի պէս,
Եւ ամուսինըս պատերազմ գընայ՝
Այն, որի համար նորան սիրում եմ, կը խլուի ինձնից,
Եւ դեռ պէտք է ինձ նորա զգալի բացակայութեան
Զրկանքը կրել։ Թողէք որ երթամ ես էլ նորա հետ։

Օթելլօ. Տուէք ձեր ձայնը նորա աղերսին։ Երկինքն է վկայ,
Ես այս չեմ խնդրում իմ ախորժակի հաճութեան համար,
Ոչ էլ իմ տապի կամ իմ սեփական բաւականութեան,
— Երիտասարդի վառ տենչերին իմ մէջ անցած լինելով —
Այլ նորա հոգուն սիրով գոհացում բաշխելու համար.
Եւ Աստուած չանէ որ երբ եւ իցէ ձեր մտքումն անցնի,
Թէ ես կարող եմ ձեր ինձ վստահած մեծ ու լուրջ գործը
Անխընամ թողնել՝ երբ նա գայ ինձ հետ։
Ոչ, երբ թեւաւոր Կուպիդի թեթեւ ու խօլ խաղերը

Մտքի եւ գործի ձիրքերըս փակեն հեշտ մեղկութեան մէջ,
Եւ ժամանցները պաշտօնս աղարտեն կամ թէ խաթարեն՝
Թող տանտիկիններն իմ սաղաւարտից մի տապակ շինեն,
Եւ ամեն տեսակ անարգ ու նւաստ ձախորդութիւններ
Խուժեն խմբովին համբաւիս վրայ։

Դուքս. Թող այնպէս լինի ինչպէս դուք ձեր մէջ յարմար համարէք
Նըրա մընալու կամ գալու մասին։
Գործը կանչում է, արագութիւնը թող պատասխանէ։

Ա. ՍԷՆ. Պէտք է ա՛յս գիշեր ճանապա՛րհ ընկնէք։

Օթէլլօ. Իմ աչքի վրայ։

Դուքս. Առաւօտն իննին պէտք է մենք կրկին ժողովւինք այստեղ։
— Օթէլլօ, մի սպայ թող ետեւ մնայ,
Նա քեզ կը բերէ մեր հրովարտակը եւ ամեն այլ ինչ,
Որ քո պաշտօնի եւ դիրքի համար կարեւոր լինի։

Օթէլլօ. Եթէ կը հաճի Ձեր բարձրութիւնը, իմ դրօշակիրը.
Նա վստահելի եւ պարկեշտ մարդ է.
Նըրան եմ յանձնում բերել կընոջըս եւ ամեն այլ բան
Որ ձեր շընորհը արժան համարէ ետեւից ղրկել։

Դուքս. Լաւ, այդպէս լինի։ Բարի գիշեր ձեզ իւրաքանչիւրիդ.

Բրաբանցիոյին

Եւ, ազնիւ սինիօր, եթէ ըստ ինքեան հերոսութիւնը
Զուրկ չէ հմայիչ գեղեցկութիւնից՝
Ապա ձեր փեսան, այո, աւելի սիրուն է, քան սեւ։

Ա. ՍԷՆ. Գնաս բարով, քա՛ջ Մաւր. բախտաւոր արա Դէզդէմոնային։

Բրաբ. Աչք պահիր վըրան, եթէ աչք ունիս տեսնելու համար։
Իր հօրը խաբեց, քեզ էլ կը խաբէ։

Օթէլլօ. Կեա՛նքըս դրաւ նըրա հաւատարմութեան։

Դուքսը, Սենատորները եւ Սպաները դուրս են գնում։

Դէ՛հ, պարկեշտ Եագօ, Դէզդէմոնայիս քո ձեռքդ եմ յանձնում։
Խնդրեմ, թող կինըդ ուղեկցի նըրան,
Եւ երբ յարմար է՝ երկուսին էլ բեր։
Եկ, Դէզդէմոնա, մէկ ժամ ունիմ ես, որ պէտք է քեզ հետ

Նուիրեմ սիրոյ, եւ տան գործերի, եւ կարգադրութեան։
Պէտք է յարմարուինք հանգամանքներին։ 294

Օթէլլօն եւ Դէզդէմօնան գնում են։

Ռոդր. Եագօ՛։

Եագօ. Ի՞նչ է, հոգիս։

Ռոդր. Գիտե՞ս ինչ եմ ուզում անել։

Եագօ. Էլ ի՞նչ կը լինի. մտնել անկողին եւ քնել։

Ռոդր. Գնում եմ ուղղակի ջուրն ընկնեմ։ 299

Եագօ. Եթէ այդ տեսակ բան անես՝ էլ երբեւիցէ մտիկ չեմ տայ. վա՜հ, ի՜նչ յիմարն ես եղել։

Ռոդր. Յիմարութիւնն այն է, որ մարդ ապրի՝ երբ ապրելը տանջանք է. երբ մահն է բժիշկ՝ մեռնելն է ճարը։ 303

Եագօ. Ի՜նչ ստորնութիւն։ Չորս անգամ եօթը տարի է որ ես աչք եմ բացել այս աշխարհի վրայ, եւ այն օրից որ ես կարողացել եմ շահը վնասից զանազանել՝ դեռ մէկ մարդ չեմ գտել որ ինքն իր օգուտը հասկանայ։ Ես աւելի շուտ ադամորդութիւնս մի կապիկի հետ կը փոխէի, քան թէ մի քածի համար ինձ ջուրը կը ձգէի։ 309

Ռոդր. Ի՞նչ անեմ, գիտեմ որ ամօթ է ինձ համար այսպէս զգալ, բայց առաքինութիւնս անզօր է դրա դէմ։

Եագօ. Առաքինութի՜ւն, թո՛ղ. մեզնից է կախուած այսպէս լինել կամ այնպէս։ Մեր մարմինը մեր պարտէզն է, եւ մեր կամքը՝ պարտիզպանը. կ'ուզենք նրա մէջ եղինճ կը ցանենք, կ'ուզենք հազար. մշտիկ կը ցանենք, կամ ծոթրին քաղհան կ'անենք. մէկ տեսակ կանաչեղէն կը ցանենք, կամ բոլորն իրար կը խառնենք. կը թողնենք որ պարտէզը մեր ծուլութիւնից անբեր դառնայ, կամ մեր աշխատութեամբ կը պարարտացնենք։ Այո, այդ կարողութիւնը եւ բարեկարգելու ընդունակութիւնը մեր կամքիցն է կախուած։ Եթէ մեր կեանքի կշիռը խոհականութեան մի նժար չունենայ՝ զգայասիրութեան նժարին հակակշռելու՝ մեր արեան բորբոքը եւ ստոր բնազդները մեր բանը վատ տեղ կը հասցնէին. բայց մենք ունինք խո-

հականութիւն՝ մեր կատաղի մարմաջները, մարմնական խըղձերը, եւ մեր անսանձ ցանկութիւնները հովացնելու համար. որից ես հետեւցնում եմ թէ այն, ինչ որ դու սէր ես անուանում, մի ոստիկ է, մի ընձիւղ: 327

Ռոդր. Դա ճիշդ չէ:

Եագօ. Սէրն արեան տռփանքն է եւ կամքի թուլութիւնը: Գնա, գնա, մարդ դարձիր. Ջրո՞ւմ ընկնես. կատուի ձագերին եւ աչքերը չը բացած շան լակոտներին են ջուրը ձգում: Ես միշտ ասել եմ թէ քո բարեկամն եմ, եւ խոստովանում եմ թէ ամուր եւ մշտատեւ կապերով կապուած եմ քո արժանիքի հետ: Երբէք չէի կարող քեզ այնպէս օգտակար լինել, ինչպէս այժմ: Քսակդ փողով լցրու. եկ մեզ հետ այս կռւին. կեղծ մօրուքով երեսդ ծածկիր. ասում եմ քեզ, քսակդ լցրու փողով: Անկարելի բան է որ Դէզդէմոնան երկար ժամանակ շարունակէ Մաւրին սիրել. քսակդ փողով լցրու. ոչ էլ Մաւրը նրան. թունդ կպաւ Մաւրին, թունդ էլ պոկ կը գայ. դու ջանք արա որ փողով լցնես քսակդ: Այս Մաւրերը շատ փոփոխամիտ մարդիկ են. քսակդ փողով լցրու: Այն կերակուրը որ հիմա նրա քիմքին մեղրից քաղցր է, շատ չի քաշի՝ լեղիից դառն կը թուայ: Դէզդէմոնան էլ երիտասարդ մարդու ետեւից կ'ընկնի. հէնց որ Մաւրի մարմնից կշտանայ՝ ինքն իր ընտրութեան սխալը կը նկատէ. փոփոխութիւն է պէտք, փոփոխութիւն. ուրեմն քսակդ լցրու փողով: Եթէ անպատճառ պէտք է սատանի բաժին դառնաս՝ գոնէ այդ բանը աւելի հաճելի ձեւով արա, քան թէ ջուրն ընկնելով: Փող հաւաքիր որքան կարող ես: Եթէ սուրբ պսակը եւ մի դիւրաբեկ ուխտ, որ փոխանակուած է մի թափառական բարբարոսի եւ մի խորամանկ Վենետկուհու միջեւ՝ չափազանց դժուար գործ չը լինի իմ ճարպիկութեան համար, եւ բոլոր գեհենի ցեղի համար՝ դու նրան կը վայելես: Ուրեմն, փող ճարիր: Թո՛ւհ, ջրո՞ւմ ընկնել. դա ի՞նչ միտք ունի. աւելի ընտրիր փափագիդ հասնել եւ կախուել, քան թէ չը հասած՝ ջուրն ընկնել: 356

Ռոդր. Եթէ բախտս փորձեմ՝ կարո՞ղ եմ քո վրայ յոյս դնել։

Յագօ. Իմ կողմից միամիտ կաց. գնա, փող ճարիր։ Շատ անգամ ասել եմ քեզ, եւ նորէն ու նորէն կրկնում եմ. ես Մաւրին ատում եմ. իմ դատս սրտումս է խրւած. քոնն էլ նոյնչափ խոր հիմք ունի։ Միանանք եւ նրանից ոխ հանենք։ Եթէ կարողանաս նրա գլուխը եղջիւրներով զարդարել՝ դա քեզ համար հաճոյք կը լինի, եւ ինձ՝ զւարճութիւն։ Շատ դէպքեր կան ժամանակի արգանդում, որ պէտք է ծնւեն։ Յառա՛ջ, գնա՛, փող պատրաստիր։ Վաղը էլի կը խօսենք այս մասին։ Գնաս բարով։ 366

Ռոդր. Վաղը առաւօտ ո՞ւր հանդիպենք։

Յագօ. Իմ բնակարանում։

Ռոդր. Կանուխ կը գամ քեզ մօտ։

Յագօ. Լաւ, գնաս բարով. հասկացա՞ր, Ռոդրիգօ։

Ռոդր. Ի՞նչ։

Յագօ. Տես, ջուրն ընկնել չը լինի. հասկացա՞ր։

Ռոդր. Միտքս փոխեցի. գնում եմ բոլոր կալւածներս ծախեմ։

գնում է։

Յագօ. Միշտ մի յիմար մարդ քսակս եմ շինում.
Այլապէս ի՞նչու սրբապղծէի ձեռք բերած խելքըս՝
Տալով ժամանակս այսպէս ապուշին,
Եթէ ոչ միայն իմ զւարճութեան եւ շահի համար։
Ատում եմ Մաւրին. շատեր կարծում են
Թէ նա երբեմըն սաւաններիս մէջ իմ տեղն է բռնել.
Ճի՞շդ է այդ թէ ոչ, դա ինձ յայտնի չէ.
Բայց ես այդ տեսակ կասկածի դէպքում
Այնպէս կը վարւեմ, որպէս թէ իրօք վստահ լինէի։
Նա յարգում է ինձ. ուրեմն աւելի դիւրաւ կարող եմ
Մտադրածներըս գործ դընել վըրան։
Միւս կողմից, Կասսիօն շնորհքով մարդ է.
Լաւ, տեսնենք հիմա. պաշտօնը խլել,
Կամքս էլ զարդարել խորամանկութեան երկու ցցունքով.

*Հա՛, ի՞նչպէս…, ի՞նչպէս… մի լաւ մտածեմ…*
*Քիչ յետոյ Մաւրի ականջը հալել,*
*Որպէս թէ Կասսիօն շատ է մտերիմ նըրա կընոջ հետ։*
*Նա այնպիսի դէմք եւ հաճոյական բարք ու վարք ունի,*
*Որ կասկածանքի շուտ տեղիք կը տայ։*
*Ձեւուած է կանանց գլխից հանելու։*
*Մաւրը մի անկեղծ, սրտաբաց մարդ է,*
*Որ բոլոր պարկեշտ թւացողներին պարկեշտ է կարծում.*
*Եւ կարելի է այնպէս քնքշութեամբ քթից քաշ տալ*
*Ինչպէս էշերին։*
*Գտա՛յ։ Յղացւե՛ց։ Դժոխք ու խաւար*
*Ծիւաղ զաւակին բերեն լոյս աշխարհ։*



## ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

---

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Կիպրոսի նաւահանգիստը. մի հրապարակ ծովափի մօտ:*
*Գալիս են Մոնտանօ եւ երկու Ազնուական:*

*Մոնտ.* *Այս հրուանդանից ի՞նչ ես նշմարում ծովի երեսին։*
*Ա. Ազն.* *Ոչինչ ոչինչ. խիստ յուզուած ծով է։*
*Ոչ մի առագաստ չեմ ջոկում ջրի եւ երկնքի մէջ։*
*Մոնտ.* *Կարծեմ թէ քամին բարձր է գոռացել ցամաքի վըրայ։*
*Այսչափ բուռըն հողմ երբէք չէ ցնցել մեր պատնէշները.*
*Ծովի վըրայ էլ եթէ այսպիսի շփոթ է սարքել,*
*Ի՞նչ կաղնեայ կողեր, երբ նըրանց վըրայ լեռներ են հալւում,*
*Չեն խախտուի տեղից։ Ի՞նչ ենք լսելու։*
*Բ. Ազն.* *Թուրք նաւատորմի կազմալուծումը։*
*Եկ կանգնիր այստեղ փրփրադէզ ափին,*
*Ու նայիր ինչպէս կշտամբուած կոհակն*
*Ասես խուժում է ամպերի վըրայ,*
*Հողմայոյզ ալիքն՝ իր բարձրակարկառ ամեհի բաշով՝*
*Ջուր է սըրսկում վառ Արջի վըրայ՝*
*Անշարժ բեւեռի պահապաններին մարելու համար։*
*Երբէ՜ք չեմ տեսել կատաղած ծովի այսպիսի յուզում։*
*Մոնտ.* *Եթէ Թուրքական նաւատորմիղը չէ ապաւինել*
*Մի ծովախորշում, նա ընկղմած է։*
*Անկարելի է սըրան դիմանալ։*

Գալիս է Երրորդ Ազնուականը։

Գ. Ազն. Ուրախ լո՛ւր, տղե՛րք. կռիւն աւարտուեց։
Բուռըն փոթորիկն այնպէս դմփել է Օսմանցիներին,
Որ խափանուել է նրանց խորհուրդը։
Վենետիկից եկած փառահեղ մի նաւ
Տեսել է նրանց մեծագոյն մասի նաւաբեկումը
Եւ քայքայումը։

Մոնտ. Ի՞նչ, ճի՞շդ ես ասում։

Գ. Ազն. Նաւը հէնց այստեղ խարիսխ է ձգել. մի Վէրոնեզ է։
Միքայէլ Կասսիօն, որ տեղակալն է քաջ Օթէլլօյի,
Դուրս եկաւ ցամաք. բայց Մաւրը ինքը ծովի վրայ է,
Եւ լիակատար իրաւունքներով գալիս է Կիպրոս։

Մոնտ. Ա՛հ, շատ ուրախ եմ. նա արժանաւոր կառավարիչ է։

Գ. Ազն. Բայց հէնց նոյն Կասսիօն, թէեւ խիստ հրճուած
Թուրքերի կրած կորուստի վրայ՝ շատ մտահոգ է,
Եւ աղօթում է որ Մաւրի գլխին մի փորձանք չը գայ,
Քանզի մի ուժգին եւ վատ փոթորիկ նրանց բաժնել է։

Մոնտ. Աստուած պահպանէ՛. ես ծառայել եմ նրա ձեռքի տակ.
Մարդը իսկ եւ իսկ զինուորի նման գիտէ հրամայել։
Գնանք ծովեզերք՝ թէ՛ եկած նաւը տեսնելու համար,
Թէ՛ սպասելով քաջ Օթէլլօյին՝ աչք ձգենք հեռուն՝
Մինչեւ ուր ծովը եւ լուրթ երկինքը միախառնւում են։

Գ. Ազն. Լաւ, այդպէս անենք. ամէն մի րոպէ մի նոր եկող կայ։

Գալիս է Կասսիօն։

Կասս. Շնորհակալութիւն այս պատերազմիկ կղզու քաջերին,
Որ Օթէլլօյին յարգում էք այսպէս.
Օ՛հ, թող երկինքը պաշտպանէ նրան տարերքի ընդդէմ.
Շատ վտանգալից մի ծովի վրայ կորցրի նրան։

Մոնտ. Լա՞ւ է իր նաւը։

Կասս. Այո, իր նաւը ամուր շինուած է,
Եւ նաւապետը իր գործին հմուտ եւ փորձառու է.
Ուստի, յոյսերըս, թէեւ մահամերձ,
Սակայն վստահ են որ բուժուելու են.

Դրսից ձայներ, “Նա՛ւ, նա՛ւ„։

Կասս. Ի՞նչ աղմուկ է այս։
Դ. Ազն. Ամբողջ քաղաքում մարդ չէ մնացել.
Ծովի եզերքին խուռըն ամբոխը շարքերով կանգնած՝
Գոչում է "Նաւ, նաւ"։
Կասս. Սիրտըս ասում է թէ կուսակալն է։

Թնդանօթի որոտ։

Բ. Ազն. Պատուի ողջոյն է, որ արձակում են.
Այսպէս թէ այնպէս բարեկամներ են։
Կասս. Խնդրում եմ, պարոն, գընացէք տեսէք թէ եկողն ով է,
Եւ լուր տուէք մեզ։
Բ. Ազն. Իսկոյն։
Մոնտ. Բարի տեղակալ, ձեր զօրապետը ամուսնացա՞ծ է։
Կասս. Եւ խիստ բախտաւոր։ Մի օրիորդ է նորան վիճակուել,
Որ բարձր է ամեն նկարագրումից եւ խօլ համբաւից,
Որ ներբողագիր գրիչներից վեր,
Եւ արարչակերտ իսկական ձեւի գեղեցկութեան մէջ՝
Անց է վարպետի ճարտարութիւնից։

Բ. Ազնուականը վերադառնում է։

Ի՞նչ կայ, ո՞վ եկաւ։
Բ. Ազն. Մի ոմն Եագօ, որ դրօշակիր է զօրապետի մօտ։
Կասս. Եւ ի՜նչպէս յաջող եւ շուտ է հասել.
Փոթորիկներն էլ, ուռած ծովերը եւ գոռ հողմերը,
Ակօսաւորուած սուր խարակները, դիզուած խիճերը,
Անմեղ նաւերի այդ դարանամուտ դաւաճանները,
Կարծես գեղեցկի գիտակցութիւնով՝
Իրենց մահացու բընոյթը լքել,
Եւ աստուածային Դէզդէմոնային ճամբայ են տուել
Որ անփորձ անցնի։
Մոնտ. Ո՞վ է դա։
Կասս. Հէնց նա, որ ասում էի,
Մեր զօրապետի զօրապետուհին,
Որին քաջ Եագօն պէտք է ուղեկցէր,

Եւ որի գալը եօթն օր կանխել է մեր ենթադրածը։
Հզօ՛ր Յուպիտեր, պահապան եղիր մեր Օթելլոյին,
Եւ զօրեղ շնչովդ ուռեցրու նրա առագաստները,
Որ իր պերճ նաւով օրհնութիւն բերէ այս ծովախորշին,
Սիրով բաբախի Դեզդեմոնայի բազուկների մէջ,
Նոր բոցով վառէ մեր մարած ոգին,
Եւ բերկրանք բերէ ամբողջ Կիպրոսին։

Գալիս են Դեզդեմոնա, Էմիլիա, Եագո,
Ռոդրիգո եւ ծառաներ։

Այնտեղ նայեցէք, նաւի գանձն է այն, որ ցամաք իջաւ։
Կիպրացի մարդի՛կ, ծընկաչոք նրան հիւրընկալեցէք։
— Ողջոյն ձեզ, տիկին. երկնային շնորհն
Աջից ու ձախից եւ ամեն կողմից շրջապատէ ձեզ։
Դեզդ. Շնորհակալ եմ, քաջարի Կասսիո. ի՞նչ լուր իմ մարդուց։
Կասս. Դեռ տեղ չէ հասել. ուրիշ լուր չունիմ,
Թէ ոչ, որ լաւ է, եւ ինքն էլ շուտով այստեղ կը լինի։
Դեզդ. Բայց վախենում եմ. ի՞նչպէս պատահեց որ իրար կորցրիք։
Կասս. Ծովի եւ երկնի ահեղ պայքարն էր որ մեզ բաժանեց։
Բայց ականջ դրէք . . .

Ձայներ դրսից "Նաւ, նաւ"։
Թնդանօթի որոտ։

Բ. Ազն. Բարեւ են տալիս մեր միջնաբերդին.
Սա էլ մեզնից է։
Կասս. Գնա՛ եւ լուր բեր։

Բ. Ազնուականը դուրս է գնում։

Գալուստդ բարի, սիրելի Եագո։

Էմիլիային

Բարեւ ձեզ, տիկին։
Բայց չը նեղանաս իմ ազատ վարքից, սիրելի Եագո.
Մենք վարժուած ենք քաղաքավարութեան այս խիզախ ձեւին։

Համբուրում է Էմիլիային։

Յագո. Եթէ նա շրթունքն այնքան շատ տայ ձեզ,
Որքան ինձ լեզուն՝ շուտ կը կշտանաք։
Դեզդ. Խե՜ղճ ողորմելի, խօսք չունի բերնում։
Յագո. Հա՜, եւ ի՜նչքան շատ.
Այն էլ միշտ երբ ես քնել եմ ուզում։
Ճիշդ է, ձեր առաջ մի քիչ իր լեզուն գրպանն է դընում,
Եւ մտքի մէջն է իմ դէմ մրթմրթում։
Էմիլիա. Ի՞նչ պատճառ ունիս այդպէս ասելու։
Յագո. Լաւ է, լաւ, գիտենք.
Դուք դուրսը բամբակ, տան մէջ զանգակ էք.
Խոհանոցի մէջ վայրենի կատու,
Սուրբ էք ուրիշին վիրաւորելիս,
Դեւ էք երբ որ ձեզ վիրաւորում են,
Տնտեսութեան մէջ սիրում էք խաղալ,
Եւ անկողնի մէջ տնտես ձեւանալ։
Դեզդ. Թո՛ւհ քեզ, բամբասող։
Յագո. Ճիշդ է, Թուրքը դառնամ թէ սուտ եմ ասում։
Քնից զարթնում էք խաղալու համար,
Անկողին մտնում գործելու համար։
Էմիլիա. Եթէ ուզենամ գովքըս գրել տալ՝ քե՛զ չեմ յանձնի այդ։
Յագո. Եւ շատ լաւ կ'անես։
Դեզդ. Եթէ ուզէիր ինձ գովասանել՝ ի՞նչ կը գրէիր։
Յագո. Ո՛հ, ազնիւ տիկին, այդպիսի բանի մի՛ գործածէք ինձ։
Թէ քննադատ չեմ՝ ոչնչի պէտք չեմ։
Դեզդ. Դէ՜հ, մի փորձ արա։
Մարդ ուղարկեցի՞ր նաւահանգիստը։
Յագո. Այո, տիրուհի։
Դեզդ. Սիրտս ուրախ չեմ. բայց ես խաբում եմ սրտիս ներսինը
Ուրախ թւալով։ Տեսնենք թէ ինչպէս կը գովէիր ինձ։
Յագո. Փնտռում եմ, տիկին. բայց հաւատացէք,
Բանաստեղծութիւնս այնպէս է պոկւում խելապատակէս,
Ինչպէս սօսինձը թաղիքի վրայից.
Ուղեղ, ամեն բան պոկում է իր հետ.

Բայց Մուսաս հիմա երկունքի մէջ է.
Ահա ծնունդը։
Եթէ գեղեցիկ եւ խելացի է, խելքով կը գործէ.
Գեղեցկութիւնը պէտք է գործածուի, խելքը գործածէ։

Դեզդ. Շատ լաւ գովեցիր. իսկ թէ սեւ լինի եւ մտքով ճարտա՞ր։

Յագօ. Եթէ սեւ լինի եւ մտքով ճարտար՝
Ճերմակ կը գտնէ իր սեւին յարմար։

Դեզդ. Ա՜լ աւելի վատ։

Էմիլիա. Իսկ եթէ սիրուն եւ յիմար լինի։

Յագօ. Սիրունը յիմար չի լինի.
Հէնց յիմարութեամբ ծոցը կը լցնի։

Դեզդ. Դրանք անմիտ հին պարադոքսներ են, գինետներում յիմարներին ծիծաղեցնելու համար. ուրեմն ի՞նչ ողորմելի գովեստ ես պահել այն կնոջ համար, որ տգեղ է եւ յիմար։

Յագօ. Որչափ էլ տգեղ ու յիմար լինի՝ կարող է նա էլ,
Ինչ որ խելացին ու գեղեցիկը սովոր է անել։

Դեզդ. Ի՜նչ թանձր տգիտութիւն. ամենից վատին ամենից լաւ գովեցիր։ Բայց ի՞նչ գովեստ կը տայիր մի իսկապէս պատուական կնոջ, որ իր արժանիքի վրայ վստահ՝ չարամտութիւնից անգամ յարգանք կը կորզէր։

Յագօ. Ով որ սիրուն է, սակայն ոչ գոռոզ,
Որ լեզուանի է, բայց ոչ մեծախօս,
Ոսկի շատ ունի, բայց պարզ է մնում,
Կարող է անել ինչ որ չէ անում,
Որ չարութիւնը գիտէ մոռանալ,
Եւ բարկանալիս՝ գիտէ մեղմանալ,
Այնքան ապուշ չէ եւ այնքան տգէտ
Որ ձկան պոչը փոխէ գլխի հետ,
Գիտէ մտածել, բայց միտքը չասել,
Իր հետեւողին չը դառնալ նայել,
Այդպիսի մէկը յարմար կը լինի՝
Եթէ այդպիսին գոյութիւն ունի...

Դեզդ. Հը՞, ի՞նչ անելու։

Յագօ. Իր լակոտներին ծիծ տալու,
Եւ գարեջրի հաշիւ պահելու։

Դէզդ. Վերջաբանդ թէ՛ կաղ էր, թէ՛ անմիտ։ — Էմիլիա, այս մարդուց բան չը սովորես՝ թէեւ ամուսինդ է։ — Ի՞նչ ես ասում, Կասսիօ, չէ՞ որ շատ կոշտալեզու եւ վրան բաց բաներ ասող է։

Կասս. Այո, տիկին, բաց խօսող է. պէտք է նրան իբրեւ զինուոր դատէք, ոչ թէ իբրեւ գիտնական։

Յագօ. (Առանձին.) Դէզդէմոնայի ձեռքն առնում է իր ձեռքի մէջ. հը՛, շատ լաւ, փսփսա. հէնց այսքան պզտիկ ոստայնով էլ կարող եմ Կասսիօյի պէս խոշոր ճանճին բռնել։ Այո՛, ժպտա երեսին, ժպտա. այդ սիրաքաղցրիկդ քեզ իմ թակարդս է ձգելու։ Հա՛, ճիշդ ես ասում, հէնց այդպէս է. այդ ծեքծեքումներդ այնպէս փորձանք բերեն տեղակալութեանդ գլխին, որ մէկ էլ երեք մատերդ այդքան բերնիդ չը տանես. դրանով ուզում ես պարո՛ն ձեւանալ։ Շատ բարի, լաւ համբուրեցիր. հրաշալի կերպով գլուխ տուիր, գլուխդ վկայ։ Վա՛հ, էլի մատերդ շրթունքիդ դի՞ր. գրեխի խողովակ դառնա՛ն քեզ համար։ (Փողերի հնչիւն.) Ա՛հ, Մաւրն եկաւ. նրա շեփորի ձայնն է։

Կասս. Իսկ որ այդպէս է։

Դէզդ. Ընդառաջ գնանք եւ ընդունենք նրան։

Կասս. Ահա, եկաւ։

Գալիս է Օթէլլոն՝ հետեւորդներով։

Օթէլլօ. Սիրո՛ւն ռազմիկս։

Դէզդ. Իմ սիրելի՛ Օթէլլօս։

Օթէլլօ. Որքան զարմացած, նոյնքան ուրախ եմ
Որ ինձնից առաջ արդէն հասել ես։ Ո՜վ հոգուս հրճուանք,
Եթէ ամեն մի փոթորկից յետոյ այսպէս հանդիստ կայ,
Թող փչե՜ն հողմերն մինչեւ Մահին էլ զարթեցնեն քընից,
Եւ թող բարձրանայ. յոգնատանջ նաւը սար-ծովերի վրայ,
Ոլիմպից վերեւ, եւ յետոյ այնքան վա՜ր խորասուզուի,

Որքան դժոխքը ցած է երկնքից։
Եթէ մեռնելու հէնց հիմա լինէր՝
Դա պիտի լինէր երջանիկ մեռնել.
Հոգիս հասել է այնքան անսահման բաւականութեան,
Որ վախենում եմ սրան հաւասար այլ երջանկութիւն 195
Էլ չը վիճակուի իմ անյայտ բախտին։

Դէզդ. Աստուած ոչ անէ՛.
Այլ միշտ մեր սէրը եւ մեր հրճուանքը
Համաչափ աճեն մեր օրերի հետ։

Օթէլլօ. Ամէ՛ն, ո՛վ երկինք։
Որչափ խօսում եմ հրճուանքիս վըրայ՝ դեռ չեմ կշտանում.
Դա խեղդում է ինձ. շա՛տ է ինձ այդքան ուրախութիւնը.
Ա՛յս, եւ ա՛յս լինեն մեր ամենէն խիստ ընդհարումները։ 201

Համբուրում է նրան։

Եագօ. (Առանձին.) Այո, առ այժըմ լաւ ներդաշնակ էք,
Բայց պարկեշտ մարդ չեմ՝ եթէ այս սիրուն երաժշտութեան
Լարաբոյթերը չը թուլացընեմ։

Օթէլլօ. Գընանք դղեակը։
— Լո՛ւր, բարեկամնե՛ր. կռիւը վերջացաւ. Թուրքերն ընկան ջուրը։
Ի՞նչպէս են իմ հին բարեկամները։ 206
Մեղրիկ, Կիպրոսում քեզ շատ կը սիրեն։
Ես այս մարդկանց մէջ շատ սէր եմ տեսել։
Օ՜հ, անուշի՛կըս, անկապ եմ խօսում,
Եւ զառանցում եմ ուրախութիւնից։ Սիրելի Եագօ, 210
Գընա ծովափը, եւ սնտուկներըս հանել տուր նաւից.
Նաւապետին էլ բեր միջնաբերդը.
Լաւ նաւապետ է, եւ արժանի է շատ յարգ ու պատուի։
Եկ, Դէզդէմո՛նա, նորէն Կիպրոսում գալուստըդ բարի։ 214

Ամենքը գնում են բացի Եագօյից եւ Ռոդրիգօյից։

Եագօ. Քիչ յետոյ եկ ինձ գտիր նաւամատոյցը։ Մօտ եկ։ Եթէ դու սիրտ ունիս — եւ ասում են թէ ստոր մարդիկն էլ սիրահարուելիս այնպիսի ազնուութիւն են ստանում, որ ի բնէ

չեն ունեցել — լսիր ինձ։ Տեղակալն այս գիշեր պահականոցում հսկելու է. բայց նախ եւ առաջ պէտք է քեզ ասեմ, Դեզդեմոնան ուղղակի սիրահարուած է Կասսիոյին։

Ռոդր. Կասսիոյի՞ն. բա՜հ, անկարելի բան է։

Յագօ. Մատդ դիր այսպէս, եւ բան սովորիր։ Տես ի՛նչպէս թափով սիրահարուեց Մաւրին, միայն `որովհետեւ Մաւրը՝ մեծ մեծ էր բրդում եւ պոչաւոր սուտեր էր ասում. ի՞նչ է, կարծում ես թէ հէնց այնպէս կը շարունակէ՞ նրան սիրել նրա շաղփաղփութեան համար։ Եթէ խելք կայ գլխիդ մէջ՝ այդ տեսակ բան չը մտածես։ Նրա աչքերին սնունդ է պէտք. եւ ի՞նչ մի առանձին հաճոյք է նրա համար այն դեւի երեսին նայել։ Երբ արեան բորբոքը՝ գոհացում ստանալուց յետոյ՝ սառչում է, կրկին վառելու համար, յագեցած ախորժակը նորէն գրգռելու համար՝ գրաւիչ դէմք է հարկաւոր, տարիքի համակրութիւն, լաւ ձեւեր եւ գեղեցկութիւն. իսկ Մաւրը այդ բոլորից էլ զուրկ է. ուրեմն, ի չգոյէ այդ անհրաժեշտ հրապոյրների՝ նրա մատաղ սէրը կը տեսնէ որ խաբուած է, կը սկսի զզուանք զգալ, գարշել Մաւրից, եւ ատել նրան. բնութիւնն ինքը նրան ճանապարհ ցոյց կը տայ եւ կը ստիպէ երկրորդ ընտրութիւն անել։ Դէ լաւ, պարոն, եթէ ընդունենք որ այս այսպէս է — եւ իսկապէս սա շատ ակներեւ եւ անբռնազբօս առաջադրութիւն է — ուրեմն այդ բախտաւորութեան սանդուղքի վրայ ո՞վ կայ աւելի բարձր կանգնած, քան թէ Կասսիոն, այդ յեղյեղուկ թշուառականը, որի խղճմտանքը այնքան է միայն, որ քաղաքավարութեան եւ բարեկրթութեան արտաքինն է իւրացրել՝ իր խենէշ եւ լաւ թագցրած պիղծ միտումներին աւելի դիւրաւ յագուրդ տալու համար. ի հարկէ ոչ ոք, ի հարկէ ոչ ոք. մի ճկուն ու ճարպիկ խաբեբայ, առիթներ հոտոտող. մի վարպետորդի որ իր համար առաւելութիւններ կը դարբնէ եւ կը կեղծէ՝ թէկուզ իսկական առաւելութիւն էլ չունենայ. կատարեալ սատանի ձագ. բացի դրանից՝ անիծուածը գեղեցիկ է, երիտասարդ է, եւ ունի այն բոլոր բաները, որոնք գրաւում են յի-

մարմներին եւ տհամներին. մի լիակատար թշուառակա՜ն, մի ժանտամխտ. Դեզդեմոնան էլ արդէն աչք է ձգել վրան։ 252

Ռոդր. Դեզդեմոնայից այդ տեսակ բան չեմ հաւատայ. նրա պէս սուրբ կին չը կայ։

Յագօ. Սուրբ սխտո՛ր. նրա խմած գինին էլ խաղողի ջուր է։ Եթէ սուրբ լինէր՝ երբէք Մաւրին սիրած չէր լինի. սուրբս ո՞րն է. չը տեսա՞ր միթէ ի՛նչպէս էր ձեռքը քսքսում Կասսիօյի ձեռքին. չը նկատեցի՞ր։ 231

Ռոդր. Այո, տեսայ, բայց դա պարզ քաղաքավարութիւն էր։

Յագօ. Լրբութի՛ւն, ձեռքս վկա՜յ. դա առաջաբանն է եւ մութ նախերգանքը՝ լկտանքի եւ խենէշ մտքերի մի ամբողջ պատմութեան։ Նրանց շրթունքը այնպէս էին իրար մօտեցել որ շունչները գրկախառնւում էին. կեղտոտ մտքե՛ր, Ռոդրիգօ. երբ այս փոխադարձ մտերմութիւնները ճամբայ են բաց անում, անմիջապէս ետեւից գալիս է գլխաւորը, մեծ մարզանքը, մարմնական վերջաբանը, վա՜խկ։ Բայց լսիր, մա՛րդ. դու այնպէս արա ինչպէս քեզ ասում եմ. ես եմ քեզ Վենետկից բերել։ Այս գիշեր պահակի դնա՛. հրամանը քեզ համար ձեռք կը բերեմ. Կասսիօն քեզ չէ ճանաչում. ես էլ քեզնից հեռու չեմ լինի. մի բան հնարիր որ Կասսիօյին բարկացնես, լինի դա բարձր բարձր խօսելով, կամ կարգապահութեան հակառակ մի բան անելով, կամ որ եւ է ուրիշ կերպով որ ինքդ ուզես, նայելով թէ ի՛նչպէս առիթը կը ներկայանայ։ 247

Ռոդր. Լաւ։

Յագօ. Լսիր, նա թունդ եւ բարկացկոտ մարդ է. կարելի է քեզ կը զարկէ. գրգռիր նոյնիսկ որ զարկէ. ես այնպէս կ՚անեմ որ հէնց դրա վրայ այս Կիպրացիք ապստամբեն. այն ժամանակ նրանց հանդարտացնելը ոչ մի կերպով գլուխ չի գայ, եթէ ոչ Կասսիօյին դուրը դնելով։ Այդպէս դու աւելի կարճ ճանապարհով կը համնես փափագիդ այն միջոցներով, որ կ՚ունենամ նրանց առաջ տանելու համար, եւ մենք մի այնպիսի խոչընդոտ վերացրած կը լինենք, որ եթէ մնայ, մեզ համար

ոչ մի յաջողութեան յոյս չը կայ։

Ռոդր. Լաւ, այդպէս կ'անեմ, միայն թէ առիթը կարողանամ սարքել։

Եագօ. Ես երաշխաւոր. մի քիչ յետոյ եկ միջնաբերդը. հիմա պէտք է գնամ նրա իրեղէնները նաւից դուրս բերեմ. Մնաս բարով։

Ռոդր. Մնաս բարով։

Եագօ. Որ Կասիօն նըրան սիրահարուած է, հաւատացած եմ.
Նա էլ Կասիօյին, այդ էլ կարելի եւ խելքի մօտ է.
Մաւրը, թէպէտեւ չեմ սիրում նըրան,
Հաստատուն, սիրող եւ մեծահոգի բնութեան տէր է.
Եւ, հաստատ գիտեմ, շատ գորովալից ամուսին կլինի
Իր կընոջ համար։ Դէզդէմոնային ես էլ եմ սիրում.
Ոչ միայն տենչից, թէեւ պատահմամբ
Այդ մեծ մեղքից էլ այնքան մաքուր չեմ,
Այլ մասամբ դրդուած վրէժիս փափագից,
Քանի որ իրօք կասկածներ ունիմ որ վաւաշ Մաւրը
Իմ տեղն է ցատկել. եւ երբ այդ բանը մտքովս անցնում է՝
Հանքաթոյնի պէս կրծում է ներսըս.
Ոչինչ չէ կարող սիրտըս հովացնել, եւ չի հովացնի
Մինչեւ նըրա հետ հաշիւ չը փակեմ, կընոջ տեղ կընիկ.
Եւ եթէ չեղաւ՝ գէթ Մաւրի սրտում
Այնպիսի զօրեղ մի նախանձ ցանեմ,
Որ դատողութիւնն այլ եւս բուժել չը կարողանայ։
Այժըմ; այդ բանը անելու համար՝
Այս Վենետիկցի թշուառ որսկանըս,
Որին գրգռում եմ որ թունդ յարձակուի,
Եթէ լաւ բռնէ՝ Միքայէլ Կասիօն իմ ձանկըս կ'ընկնի։
Մաւրի մօտ նըրան սոսկալի կերպով կը սեւացընեմ.
Նա՛ էլ, կարծում եմ, գիշերուայ գդակս իր գլուխն է դըրել.
Եւ այնպէս կ'անեմ որ Մաւրը ինձնից շնորհակալ լինի,
Սիրէ, վարձատրէ, որ նըրան այնպէս լաւ իշացրել եմ,
Անդորրութիւնը եւ հանգիստ կեանքը տակնուվրայ արել

*Խելառութեան չափ։ Այստեղ է արդէն, բայց դեռ անորոշ.*
*Նենգութեան դէմքը այն օրն է յայտնի,* 291
*Երբ որ իր գործը աւարտած լինի։*

Գնում է։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի փողոց. գալիս է մի Մունետիկ՝ մի յայտարարութիւն կարդալեն.*
*Ժողովուրդը հետեւում է նրան:*

*Մուն.* *Մեր ազնիւ եւ քաջարի զօրապետ Օթէլլոյի հրամանն է, որ նոր ստացուած լուրերի վրայ, որոնք Թուրքական նաւատորմի բնաջնջումն են աւետում, ամէն մարդ յաղթութեան տօն կատարէ. ոմանք պարով, ուրիշներ՝ հրախաղութեամբ, ամէն ոք իր սիրած զւարճութեամբ եւ խրախճանքով, որովհետեւ բացի այս բերկրառիթ լուրերից՝ այսօր նաեւ մեր զօրապետի հարսանեկան հանդէսն է։ Ահա ինչ որ նա բարեհաճում է յայտարարել տալ։ Դղեակի բոլոր սեղանատները բաց են, եւ ամէն մարդ կատարեալ ազատութիւն ունի խընջոյք անելու ներկայ ժամը հինգից մինչեւ որ զանգը տասնըմէկը զարկէ։ Աստուած օրհնէ Կիպրոս կղզին եւ մեր ազնիւ զօրապետ Օթէլլոյին։*

Դուրս են գնում։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Մի գաւիթ դղեակի մէջ:*

*Գալիս են Օթելլօ, Դեզդեմոնա, Կասսիօ եւ Սպասաւորներ:*

Օթելլօ. *Սիրելի Միքայէլ, հսկիր այս գիշեր պահակի վրայ.*
*Պէտք է ինքներըս այնպէս չափ դընենք մեր զուարճութեան,*
*Որ պատշաճութեան սահմանից չանցնի։*
Կասս. *Արդէն Եագօյին հրահանգ տրուած է,*
*Բայց այնու հանդերձ՝ ինքս էլ իմ աչքով կը վերահսկեմ։*
Օթելլօ. *Եագօն պարկեշտ է։ Գընաս Միքայէլ, բարի գիշեր քեզ,*
*Ու վաղն առաւօտ կանուխ եկ խօսենք։*

Դեզդեմոնային

*Երբ առքը եղաւ՝ մերն է եւ բերքը.*
*Ու շահը պէտք է դեռ բաժնենք մեր մէջ։*
*Բարի գիշեր։*

Գնում են Օթելլօ, Դեզդեմոնա եւ Սպասաւորներ։
Գալիս է Եագօն։

Կասս. *Ա՜հ, բարեւ Եագօ, գնանք պահականոց։*
Եագօ. *Դեռ ժամանակը չէ, տեղակալ. ժամը տասն էլ չը կայ։ Դեզդեմոնայի սիրոյն է որ մեր զօրապետը մեզ այսպէս վաղ արձակեց. մեղադրելի էլ չէ. տակաւին ոչ մի գիշեր չէ զուարճացել նրա հետ, եւ Դեզդեմոնան Յուպիտերին վայել պատառ է։*
Կասս. *Հրաշալի՜ կին է։*
Եագօ. *Ու, խօսք եմ տալիս, զուարճասէր։*
Կասս. *Այո, շատ թարմ ու քնքուշ կին է։*
Եագօ. *Այն ի՜նչ աչքեր են. կարծես թէ շեփորով անձնատուր լինելու հրաւէր են փչում։*
Կասս. *Հրապուրիչ աչքեր ունի, բայց եւ այնպէս շատ համեստ։*
Եագօ. *Ու երբ խօսում է՝ չէ՞ որ սիրոյ մարտակոչ է հնչեցնում։*
Կասս. *Կատարելութեան տիպարն է իսկապէս։*

Յագօ. Լաւ, երջանկութի՛ւն նրանց առագաստին։ Եկէք, տեղակալ, մի գաւ գինի ունիմ, եւ այստեղ դուրսը մի քանի Կիպրացի քաջ տղերք կան, որոնք ուզում են սեւ Օթելլօյի կենացը խմել։ 28

Կասս. Այս գիշեր ոչ, սիրելի Յագօ. իմ գլուխս խմիչքի կողմից շատ տկար եւ դժբախտ է։ Երանի թէ քաղաքավարութիւնը հիւրասիրելու մի ուրիշ միջոց հնարէր։

Յագօ. Բա՛հ, նրանք բարեկամ տղերք են. միայն մէկ բաժակ. ձեր տեղը ես կը խմեմ։ 33

Կասս. Այս գիշեր միայն մէկ գաւաթ եմ խմել, մէջն էլ խորամանկութեամբ ջուր էի խառնել, եւ տես ի՛նչ խռովութիւն է սարքել գլխիս մէջ. դժբախտաբար դա իմ տկարութիւնս է, եւ չեմ համարձակում թուլութեանս վրայ նոր բեռ դնել։

Յագօ. Բա՛հ, մա՛րդ Աստուծոյ, զուարճանալու գիշեր է. տղերքը շատ են փափագում։

Կասս. Ո՞րտեղ են։ 40

Յագօ. Այստեղ, դռանը. խնդրում եմ ներս կանչէք նրանց։

Կասս. Լաւ, բայց շատ էլ հաւան չեմ։

Կասսիօն գնում է դուրս։

Յագօ. Թէ մէկ գաւաթ էլ ես գլխին կապեմ,
Այն բոլորի հետ որ նա այս գիշեր խմել է արդէն՝
Տիրուհուս շան պէս բարկացկոտ կլինի եւ կռիւ փնտռող։
Այժըմ, իմ հիւանդ ապուշ Ռոդրիգօն, 46
Որին սէրն այնպէս յիմարացրել է,
Որ խելքի աստառն երես է շինել,
Այս գիշեր արդէն Դեզդեմոնայի առողջութեանը
Գաւեր է խմել. եւ պէտք է գնայ պահակ կանգնելու. 50
Երեք Կիպրացի երիտասարդներ, ազնիւ, խրոխտ տղերք,
Պատւի գործերում խիստ դիւրագրգիռ,
Այս կռւող կղզու բոցն ու կըրակը,
Նոյնպէս այս գիշեր պահակելու են.
Նըրանց գըլուխն էլ լիք բաժակներով լաւ տաքացրել եմ։
Այժմ, գինովների այդ նախիրի մէջ 56

Պէտք է Կասիօյին մի բան անել տամ,
Որ վիրաւորանք լինի այս կղզուն։ Ահա գալիս են։
Եթէ դէպքերն էլ աջակից լինեն իմ խորհուրդներին՝
Նաւըս կը սուրայ թէ յաջող հողմից եւ թէ հոսանքից։

Կասիօն վերադառնում է, հետը Մոնտանօն
եւ մի քանի սպաներ. մի Սպասաւոր գինի է բերում։

Կասս. Երկինք վկա՛յ, մի ահագին գաւաթ արդէն խմցրին ինձ։

Մոնտ. Չէ, հաւատա՛, մի պզտիկ գաւաթ էր, կէս քառորդ չը կար, զինուորի խօսք։

Եագօ. Գինի՛, հէյ։

Երգում է

Բաժակ զարկենք բաժակի,
Ծը՛նկ, ծը՛նկ,
Բաժակ զարկենք բաժակի,
Ծը՛նկ, ծը՛նկ,
Մարդ է զինուորը,
Կարճ է մեր օրը,
Հայդէ՛, զինուորներ, բաժակ բաժակի:

Գինի՛, տղե՛րք։

Կասս. Երկինք վկա՛յ, այս ի՛նչ սիրուն երգ է։

Եագօ. Անգլիայումն եմ սովորել. այնտեղ իսկապէս կոնծել գիտեն. ձեր Դանիացին, ձեր Գերմանացին, փորը կախ ընկած Հոլանդացին — գինի՛, հէյ — ոչինչ են ձեր Անգլիացու մօտ։

Կասս. Իրա՞ւ Անգլիացին խմելու մէջ այդքան զօրեղ է։ 77

Եագօ. Բա՛հ, Անգլիացին դեռ չը տաքացած՝ Դանիացին մեռել պրծել է. Անգլիացին դեռ չը քրտնած՝ Գերմանացին գետին է ընկել. Անգլիացին նո՛ր գինի բերել կը տայ՝ երբ Հոլանդացին կը սկսի փսխել։ 81

Կասս. Զօրապետի կենա՛ցը։

Մոնտ. Եղե՛ցի, տեղակալ. ձեռքդ դալա՛ր։

Եագօ. Ա՜խ, իմ սիրելի՛ Անգլիա։

Երգում է

Ստեփան արքան մեծ թագաւոր էր,
Բայց իր տաբատը հինգ շիլինգ արժէր.
Դեռ էլի վեց պէնս նա թանգ էր գտնում,
Եւ իր դերձակին հայհոյանք անում.
Նա թագաւոր էր շատ հռչակաւոր,
Դու մի հասարակ մարդ ես չքաւոր.
Հպարտութիւնն է աւերում մեր տուն,
Մարդ, զընա հագիր քո հին վերարկուն:
Գինի՛, հէյ։

Կասս. Հա՛, այս երգը միւսից էլ լաւն է։

Եագօ. Ուզո՞ւմ ես նորէն երգեմ։

Կասս. Ոչ, որովհետեւ, իմ կարծիքով, ով որ այդ տեսակ բաներ անէ, նա անարժան է իր պաշտօնին։ Լա՛ւ. ամենքից վեր Աստուած կայ. հոգիներ կան որ փրկուելու են, եւ հոգիներ կան որ չե՛ն փրկուելու։

Եագօ. Շատ ճիշդ է, տեղակալ։

Կասս. Ինչ որ ինձ է վերաբերում — ամէ՛ն յարգանք զօրապետին եւ ամեն աստիճանաւորի — ես յոյս ունիմ որ փրկութեան արժանի եմ։

Եագօ. Ես էլ, տեղակալ։

Կասս. Այո, բայց ներողութի՛ւն. ոչ թէ ինձնից առաջ. նախ տեղակալը պէտք է փրկւի, յետոյ դրօշակիրը։ Թողնե՛նք այդ բաները. մեր գործին գնանք։ Աստուած մեր մեղքերին թողութիւն անէ։ Պարոններ, մեր գործին նայենք։ Չը կարծէք, պարոններ, թէ ես հարբած եմ. սա իմ դրօշակիրն է. սա իմ աջ ձեռքս է, սա էլ իմ ձախը. հապա՛, տեսէք որ հարբած չեմ. կարող եմ լա՛ւ կանգնել, լա՛ւ խօսել։

Ամենքը. Հրաշալի՛։

Կասս. Դէ, որ այդպէս է, շատ լաւ. չը կարծէք ուրեմն թէ ես հարբած եմ։

Գնում է։

Մոնտ. Գնանք հարթավայրը, պարոններ. գնանք պահակներ կարգենք։

*Եագօ.* Տեսնո՞ւմ էք դրան որ դուրս ելաւ այժմ.
Մի զինուոր է դա, որ պէտք է կանգնէր Կեսարի կողքին
Եւ հրաման անէր. հիմա նայեցէք իր մոլութեանը.
Ճիշդ զուգակշիռն իր արժանիքի,
Մէկը միւսի չափ. ափսո՜ս այդ մարդը։
Շատ եմ վախենում որ Օթէլլոյի վստահութիւնը
Դրա տկարութեան մի անբախտ ժամին
Այս ամբողջ կղզին տակնուվրայ անէ։

*Մոնտ.* Այդ բանը նրան շա՞տ է պատահում։

*Եագօ.* Նրա քընելու նախաբանն է այս,
Եւ քսան չորս ժամ անքուն կը մնայ
Եթէ խմիչքը օրօրոցի պէս նրան չը ճօճէ։

*Մոնտ.* Բայց լաւ կը լինէր որ զօրապետին մի մարդ իմաց տար.
Գուցէ չէ տեսնում, եւ նրա բարի բնաւորութիւնը
Կասսիոյի դրսի՛ յատկութիւններն է միայն նկատում,
Եւ վատ կողմերին չէ նայում։ Ճիշդ չէ՞։

Գալիս է Ռոդրիգօն։

*Եագօ.* Ի՞նչ կայ, Ռոդրիգօ. շո՛ւտ, տեղակալի ետեւից հասիր։

Ռոդրիգօն դուրս է գնում։

*Մոնտ.* Շատ ցաւալի է որ ազնիւ Մաւրը
Իր փոխանորդի ծանրը պաշտօնը մէկին է յանձնել,
Որ արմատացած մի ախտի տէր է
Պարկեշտ գործ կլինէր Մաւրին իմաց տալ։

*Եագօ.* Եթէ այս սիրուն կղզին էլ ինձ տան՝ չեմ անի ես այդ։
Կասսիոյին սրտանց սիրում եմ. իրա՛ւ, շատ բան կը տայի
Նրան այդ ախտից բուժելու համար։ Բայց սուս, ի՞նչ ձայն է։

Դրսից ձայներ, “Օգնութի՛ւն, օգնութի՛ւն„։
Մտնում է Կասսիօն՝ Ռոդրիգօյին ներս հրելով։

*Կասս.* Ա՛յ դու գարշելի, ա՛յ դու անզգամ։

*Մոնտ.* Ի՞նչ է պատահել, տեղակալ։

*Կասս.* Մի փուչ կենդանի ինձ դաս տայ. այնքան կը զարկեմ
գլխին որ ողորած շիշի մէջ մտնի։

Ռոդր. Ի՞նձ կը զարկես։
Կասս. Ցոխորտո՞ւմ ես, անզգամ։

Զարկում է Ռոդրիգոյին։

Մոնտ. Ի սէր Աստուծոյ, սիրելի տեղակալ. խնդրում եմ, պարոն, ձեռք քաշէք։
Կասս. Բաց թող ինձ, այ մարդ, թէ ոչ գանգդ կը փշրեմ։
Մոնտ. Գնա, գնա, դու հարբել ես։
Կասս. Ե՞ս եմ հարբել։

Մենամարտում են։

Եագո (Առանձին՝ Ռոդրիգոյին). Հեռացիր, ասում եմ. դուրս գնա, հարայ տուր, «Ապստամբութիւն»։ (Ռոդրիգօ գնում է դուրս) Կեցէք, տեղակա՛լ. ի սէր Աստուծոյ, պարոններ։ — Էհէ՛յ, օգնութի՛ւն... Տեղակալ... պարոն... Մոնտա՛նո... պարոն... օգնեցէ՛ք... պարոններ... Ա՛ռ քեզ պահակ։ (Զանգահարում են) Զանգն ո՞վ է զարկում... Դիա՛վոլօ... էհէ՛յ. հիմա ամբողջ քաղաքը ոտքի կը կանգնի. ի սէր Աստուծոյ, տեղակալ. ձեռք վերցրէք. ամօթալի կը մնաք մինչեւ յաւիտեան։

Գալիս են Օթելլօն եւ Սպասաւորներ։

Օթելլօ. Ի՞նչ է պատահել այստեղ։
Մոնտ. Դըժ-ժո՛խք, արիւնըս գնում է դեռ եւս.
Մահացու կերպով վիրաւորուած եմ։
Օթելլօ. Ձեռք քաշէք, էհէ՛յ, թէ ոչ մեռած էք։
Եագո. Ձեռք քաշէք, էհէ՛յ. տեղակալ... պարոն...
Մոնտա՛նո... պա՞րոններ. մոռացե՞լ էք դուք թէ պարտք,
թէ պաշտօն.
Ե՛տ, զօրապետը ձե՛զ հետ է խօսում. յե՛տ, յե՛տ, ամօ՛թ ձեզ։
Օթելլօ. Էհէ՛յ, այս ի՞նչ է. ուրկի՞ց ծագեց այս.
Տաճի՞կ ենք դարձել. մե՞նք ենք մեզ անում,
Ինչ որ երկինքը Օսմանցիներին չը թողեց անել։
Թէ քրիստոնեայի ամօթ կայ ձեր մէջ՝
Թողէք այդ յիմար վայրենի կռիւը։

Ո՛վ առաջինը փորձէ յագուրդ տալ իր կատաղութեան՝
Գլխի տէրը չէ. ով շարժւի, կ՚ընկնի.
— Լռեցրէք իսկոյն այդ դժպհի զանգը.
Դա վրդովում է կղզու հանգիստը։ Ի՞նչ կայ, պարոններ։
Դու, պարկեշտ Եագօ, որ վշտից այդպէս մեռել ես դարձել,
Խօսիր, ճիշդն ասա, ո՞վ սկսեց այս.
Երդուեցնում եմ քեզ քո սիրուդ վրայ։

Եագօ. Չը գիտեմ. հիմա, հէնց այս րոպէիս
Նըրանք իրար հետ այնպէս հաշտ էին, այնպէս սիրալիր,
Ինչ հարս ու փեսայ՝ երբ որ հանւում են պառկելու համար,
Եւ յետոյ, հէնց այժմ, որպէս թէ յանկարծ մի չար մոլորակ
Մարդկանց խելագուրկ դարձրած լինէր՝
Սուրերը ուղղած իրարու կուրծքին՝ կռւի են տալիս։
Չեմ կարող ասել թէ այս յիմար վէճն ուրկից սկսաւ։
Երնէ՜կ թէ ազնիւ պատերազմի մէջ երկու ոտքերըս
Կորցրած լինէի, որ չը բերէին ինձ այստեղ վկայ։

Օթելլօ. Ասա, Միքայէլ. ի՞նչպէս ինքըդ քեզ այդքան մոռացար։

Կասս. Խնդրեմ ինձ ներէք. չեմ կարող խօսել։

Օթելլօ. Ազնիւ Մոնտանօ. դու սովոր էիր բարեկիրթ լինել.
Եւ քո դեռահաս հանդարտութիւնը եւ լըջութիւնը
Ողջ աշխարհ գիտէ. անուն ես շահել
Խելացի մարդկանց դատողութեան մէջ. այդ ի՞նչպէս եղաւ,
Որ աղարտեցիր բարի համբաւըդ այդպիսի վարքով,
Եւ շռայլեցիր շքեղ անունըդ՝
Որ գիշերային խռովարարի հռչա՞կ ստանաս։
Պատասխան տուր ինձ։

Մոնտ. Ազնիւ Օթելլօ, սոսկալի կերպով վիրաւորուած եմ.
Ձեր սպան, Եագօն, կարող է պատմել...
— Չը պէտք է խօսեմ. ինձ նեղացնում է —
Նա ձեզ կը պատմէ ինչ որ ես գիտեմ. չը գիտեմ սակայն,
Թէ ես այս գիշեր մի վատ բան ասած կամ արած լինեմ.
Միայն թէ անձի հոգածութիւնը մոլութիւն սեպւի,
Եւ պաշտպանւելը՝ բռնի մեր վրայ յարձակւողի դէմ՝

*Ցանցանք համարուի։*
Օթէլլօ. *Ա՛հ, երկի՛նք վըկայ,*
*Արիւնըս հիմա սկսում է իշխել*
*Աւելի խոհեմ վարիչներիս վրայ,*
*Եւ կիրքը, պայծառ դատողութիւնըս մթնացընելով՝*
*Փորձում է ինքը ղեկավար դառնալ։*
*Հէնց որ ես յուզուիմ, կամ այս բազուկը մի քիչ բարձրացնեմ,*
*Ձեր լաւագոյնը կը զոհուի սատտիս։ Ասացէք տեսնեմ,*
*Ի՞նչպէս սկսաւ այս պիղծ կըռիւը. ո՞վ պատճառ դարձաւ,*
*Եւ ո՛վ այս բանում յանցաւոր դուրս գայ,*
*Թէկուզ երկուորեակ եղբայրըս լինի, միատեղ ծնուած,*
*Ինձ հարկաւոր չէ։ Պատերազմական մի քաղաքի մէջ,*
*Որ յուզուած է դեռ, եւ մարդկանց սրտերն ահով դեռ լի են,*
*Ներքին, տնային կըռիւներ սա՞րքել,*
*Գիշերանց, այն էլ պահականոցո՞ւմ,*
*Ապահովութեան հէնց կեդրո՞նի մէջ։*
*Հրէշաւո՜ր բան է։ Եագօ, ո՞վ եղաւ առիթ տուողը։*
Մոնտ. *Եթէ ընկերի կամ թէ պաշտօնի կողմնապահութեամբ*
*Ճշմարտութիւնից մի մազ աւելի կամ պակաս ասես՝*
*Ապա զինուոր չես։*
Եագօ. *Ինձ նեղը մի՛ դնիր։*
*Լաւ է այս լեզուն իմ բերնից կտրեն,*
*Քան թէ Կասսիօյին վընաս հասցընէ.*
*Բայց համոզուած եմ որ ճիշդ խօսելըս չի վնասի նրան։*
*Ահա՛, զօրապետ. Մոնտանօն եւ ես խօսակցում էինք,*
*Յանկարծ մտնում է մի մարդ՝ օգնութի՜ւն աղաղակելով,*
*Կասսիօն ետեւից, սուրը դուրս քաշած որ նըրան զարկէ.*
*Սա իսկոյն թըռաւ Կասսիօյի առաջ, ուզեց կանգնեցնել.*
*Իսկ ես, վազեցի այն հարայ տուող մարդու ետեւից,*
*Մի՛ գուցէ նա իր գոռում գոչումով — ինչպէս էլ եղաւ —*
*Սարսափ տարածէ քաղաքի վըրայ։*
*Նա, ոտքով արագ, ձեռքիցըս փախաւ,*
*Եւ ես յետ դարձայ՝ սուրերի շաչիւն եւ զարկ լսելով,*

Նաև Կասսիոյի բարձրաձայն գոռալը և հայհոյելը,
Ինչ որ նրանից մինչև այս գիշեր դեռ չէի տեսել։
Երբ որ ետ դարձայ — որ շատ չը տևեց —
Ես նրանց գտայ դէմ առ դէմ զարկեր փոխանակելիս,
Ճիշդ այն դիրքի մէջ, երբ որ ինքներդ նրանց զատեցիք։
Սրանից աւել ոչինչ չը գիտեմ. բայց մարդը մարդ է.
Ամենքն լաւերն անգամ կորցնում են իրենց գլուխը.
Թէպէտև Կասսիոն, ճիշդ է, վատ վարուեց այս պարոնի հետ,
Եւ յաճախ մարդիկ կատաղութեան մէջ նրանց են զարկում,
Որ միայն իրենց լաւն են ցանկանում.
Բայց պէտք է Կասսիոն այն փախած մարդուց
Այնպիսի սաստիկ մի վիրաւորանք ստացած լինի,
Որին համբերել չէ կարողացել։

Օթելլո. Գիտեմ ես, Եագօ,
Պարկեշտութիւնդ և դէպի ընկերդ ունեցած սէրդ
Փոքրացնում են եղելութիւնը,
Թեթևացնելով Կասսիոյի մեղքը։ Եկ այստեղ, Կասսիօ.
Ես քեզ սիրում եմ, բայց այսուհետև դու իմ սպան չես։

Գալիս է Դեզդեմոնան հետևորդներով։

Մէկ տեսէք ի՛նչպէս իմ աչքի լոյսին քնից զարթեցրին։

Կասսիոյին

Այնպէս անեմ քեզ որ ուրիշներին օրինակ դառնաս։

Դեզդ. Ի՞նչ է պատահել։

Օթելլո. Ամեն բան արդէն կարգի է դրուած, իմ անուշի՛կըս։
Գնանք քնելու։

Մոնտանոյին

Իսկ ձեր վէրքերին, պարոն, ես ինքըս բժիշկ կը լինեմ։
— Դուրս տարէք սրան։
Եագօ, քաղաքին լաւ ուշ դարձրու,
Եւ հանգստացրու այս անարգ կռւից վրդովուածներին։
Եկ, Դեզդեմոնա, զինուորի կեանքն է՝ կռւի շաչիւնից
Ցնցուիլ, և ցատկել բալասան քնից։

*Ամենքը դուրս են գնում բացի Եագոյից եւ Կասիոյից։*

Եագո. Վիրաւորուա՞ծ էք, ի՞նչ է, տեղակալ։ 265

Կասիո. Այո, եւ անբուժելի՛։

Եագո. Աստուած ոչ անէ։

Կասիո. Անո՛ւնս, անո՛ւնս, անո՛ւնս. Օ՜հ, անունս կորցրի. էութեանս անմահական մասը կորցրի. եւ ինչ որ մնում է՝ անասնական է։ Անո՛ւնս, Եագո, անո՛ւնս։ 270

Եագո. Պատիւս վկա՛յ, ես էլ կարծեցի թէ մի մարմնական վէրք էք ստացել. դա աւելի զգալի է քան թէ անունի վէրքը։ Անուն ասածը մի անմիտ խաբէութիւն է, որ յաճախ շահւում է առանց արժանիքի, եւ կորցւում է առանց յանցանքի։ Դուք ոչ մի կերպով ձեր անունը կորցրած չէք լինի, եթէ ինքներդ կորցրած չը համարէք։ Ի՞նչ ասել է, մա՛րդ. շատ միջոցներ կան զօրապետի սիրտը կրկին ձեռք բերելու։ Բարկութիւնիցն է որ ձեզ առ այժմ արձակեց. խոհեմութեան պատիժ է այդ, ոչ թէ ոխի. ինչպէս մարդ իր անմեղ շանը ծեծ է տալիս՝ մի զօռող առիւծի վախ ազդելու համար։ Աղաչեցէք նրան, եւ նա կը հաշտուի։ 281

Կասիո. Աւելի լաւ է աղաչեմ որ մէկ էլ երեսիս չը նայէ, քան թէ մի այնպիսի ազնիւ հրամանատարի գլխին ինձ պէս թեթեւսոլիկ, հարբեցող եւ անմիտ մի պաշտօնեայ կապեմ։ Գինովանա՞լ, թութակի պէս դո՛ւրս տալ, կռի՛ւ սարքել, մեծաբանե՞լ, հայհոյե՞լ, ինքս իմ շուքիս հետ դատարկախօսե՞լ։ Ո՛վ դու գինու աներեւոյթ ոգի, եթէ անուն չունիս որ քեզ ճանաչեն, թող քեզ դեւ կոչենք։ 288

Եագո. Ո՞վ էր նա, որին սուր քաշած հալածում էիք։ Ձեզ ի՞նչ էր արել։

Կասիո. Չը գիտեմ։

Եագո. Կարելի՞ բան է։

Կասիո. Շատ բաներ են միտս գալիս, բայց որոշ ոչինչ. կռւեցինք, բայց ինչո՞ւ, չը գիտեմ։ Օ՜հ, Տէ՛ր Աստուած, մարդ էլ ինքն իր ձեռքով թշնամուն իր բերանը կը մտցնէ՞, որ խելքը գողանայ. մարդ էլ ուրախութեամբ, զւարճութեամբ, խնջոյ-

քով եւ կեցցէներով ինքզինքը անասունի՞ կը փոխարկէ։

Եագօ. Բայց հիմա հոգ չէ, բաւական լաւ էք. ի՞նչպէս եղաւ որ սթափեցաք։ 299

Կասս. Դեւ գինովութիւնը բարեհաճեց իր տեղը տալ Դեւ բարկութեան. մի պակասութիւն ինձ ուղարկում է ուրիշ մէկի մօտ, որ բոլորովին ինքս իմ աչքիս արհամարհելի դառնամ։

Եագօ. Չէ՛, դուք շա՛տ խստաբարոյ էք։ Թէեւ ժամանակը, տեղը եւ երկրի պայմանները նկատի առնելով՝ շատ պիտի ուզէի որ այս բանը պատահած չը լինէր, բայց հիմա որ եղածը եղած է, աշխատեցէք մի կերպ միջից դուրս գալ։ 306

Կասս. Եթէ հիմա գնամ խնդրեմ որ պաշտօնս ինձ յետ տայ՝ նա ինձ կ'ասէ, դու հարբեցող ես։ Եթէ այնքան բերաններ ունենայի, որքան Հիդրան, այդ տեսակ մի պատասխան բոլորը մէկէ՛ն կը փակէր։ Նախ՝ չէնք-շնորհք մարդ լինել, քիչ յետոյ մի խելագար, եւ ապա մի անասո՞ւն։ Օ՜հ, զարմանալի՜։ Ամեն աւելորդ բաժակ անիծուած բան է, եւ բովանդակութիւնը՝ դեւ է։ 313

Եագօ. Չէ՛, չէ՛. լաւ գինին լաւ սրտակից ընկեր է, եթէ մարդ հետը խելացի կերպով վարուի. այդքան մի՛ վատաբանէք նրան։ Բայց, տեղակալ, կարծեմ թէ գիտէք որ ես ձեզ սիրում եմ։

Կասս. Փորձով տեսայ, բարեկամ։ Ե՛ս հարբած։ 318

Եագօ. Մա՛րդ Աստուծոյ, ամեն մարդու կարող է պատահել որ մի անգամ գինովանայ, ձեզ, ինչպէս ուրիշին։ Հիմա տեսէք թէ ի՛նչ պէտք է անէք։ Մեր զօրապետը հիմա մեր զօրապետուհին է։ Ա՛յն պատճառով եմ այդպէս ասում, որ Օթէլլօն իր խելքն ու միտքը բոլորովին տուել է իր կնոջ յատկութիւններին եւ շնորհքներին, եւ բան ու գործ չունի եթէ ոչ նրանց դիտել, եւ զննել, եւ պաշտել. գնացէք ձեր սիրտը բացէք Դեզդեմոնային. աղաչեցէ՛ք, պաղատեցէք, եւ նա ձեզ կ'օգնէ որ ձեր պաշտօնը յետ ստանաք։ Նա այնքան պատրաստակամ, բարեսիրտ, սիրալիր եւ առատաշնորհ բնաւորութեան տէր է՝ որ իր բարութեան համար պակասութիւն կը համարէ

եթէ աւելի չը տայ քան ինչ որ նրանից խնդրում են։ Այս յօդը որ խզւել է ձեր եւ նրա ամուսնու մէջ՝ աղաչեցէք որ նա կապկպէ։ Ես իմ բոլոր ունեցածը գրաւ կը դնեմ մի գրօշի դէմ, որ ձեր սիրոյ մէջ գոյացած այս պատուածքը աւելի ամուր կը կպչի քան առաջ։

Կասս. Լաւ խորհուրդ ես տալիս։

Եագօ. Հաւատացէք, դա բղխում է իմ սիրոյ անկեղծութիւնից եւ պարկեշտ բարեկամութիւնից։

Կասս. Հաստատ գիտեմ. վաղն առաւօտ կանուխ կը գնամ Դեզդեմոնայից կը խնդրեմ որ իմ գործը իր ձեռքն առնէ։ Եթէ այս կերպով գլուխ չը գայ՝ պէտք է յոյս կտրեմ իմ բախտից։

Եագօ. Իրաւունք ունիք։ Բարի գիշեր, տեղակալ. պէտք է հսկելու գնամ։

Կասս. Բարի գիշեր, պարկեշտ Եագօ։

Կասսիօն գնում է դուրս։

Եագօ. Հիմա ո՞վ կ'ասէ թէ իմ արածը սրիկայութիւն է,
Երբ իմ խորհուրդը անկեղծ, պարկեշտ է,
Եւ շատ բանաւոր, եւ իսկապէս էլ միակ միջոցն է
Մաւրի շնորհը կրկին շահելու։ Շատ դիւրին բան է
Ինքնին տրամադիր Դեզդեմոնային իր կողմը գրաւել
Որ եւ է պարկեշտ մի աղաչանքով։
Նա ստեղծւած է այնպէս բարեւէտ, ինչպէս տարերքը.
Եւ ի՞նչ չէ կարող Մաւրից ստանալ,
Թէկուզ դա լինէր ուրանալ իր սուրբ մկրտութիւնը,
Մեղքի քաւութեան բոլոր նշաններն ու դրօշմները.
Եւ Մաւրի հոգին այնպէս կապւած է իր կընոջ սիրով,
Որ Դեզդեմոնան կարող է նրան կապել, արձակել,
Իր ուզածն անել, ինչպէս կամենայ նրա քմայքը
Իբր աստւած խաղալ իր մարդու տկար դատողութեան հետ։
Ի՞նչպէս ուրեմն սրիկայ եմ ես,
Երբ որ Կասսիօյին խորհուրդ եմ տալիս այն ուղին ընտրել,
Որ ճիշդ տանում է դէպ իր օգուտը։

Մի՜ դժոխային դիւաբանութիւն,
Երբ սատանաներն սաստիկ սեւ մեղքեր ուզումեն սադրել՝
Նախ հրապուրում են երկնային դէմքով, ինչպէս ես այժըմ։
Այն ինչ մէկ կողմից այս պարկեշտ խենթը
Դէզդէմոնայից կը խնդրէ իրեն բարեխօս լինել,
Եւ նա Մաւրի մօտ թունդ կը միջնորդէ՝
Ես էլ միւս կողմից Մաւրի ականջին այս թոյնը կ՚ածեմ,
Թէ նա իր մարմնի տենչի համար է,
Որ ջանք է անում Կասսիօյին բերել։
Որքան աւելի նա ճիգ գործ դնէ յօգուտ Կասսիօյի,
Այնքան իր վարկը Մաւրի մօտ կ՚ընկնի,
Այս կերպով նրա անմեղութիւնը կուպրը կը շինեմ,
Եւ նրա սրտի հէնց բարութիւնից մի ցանց կը հիւսեմ,
Որ բոլորին էլ որոգայթ ձգէ։

Գալիս է Ռոդրիգօ։

Ի՞նչ կայ, Ռոդրիգօ։

Ռոդր. Երեւի ես այս որսորդութեան մէջ վազում եմ ոչ թէ իբրեւ որսկան շուն, այլ միայն նրա՛ համար որ հաչալով ձայն ձայնի տամ։ Դրամս գրեթէ վերջացրի. այս գիշեր էլ պատուակա՛ն ծեծկերայ. եւ կարծեմ արդիւնքն այն է լինելու, որ մի քիչ փորձառութիւն ձեռք բերած կը լինեմ. եւ այսպէս, դատարկ գրպանով եւ մի քիչ աւելի խելքը գլխով կը վերադառնամ Վենետիկ։

Եագօ. Որքա՜ն թշուառ են անհամբեր մարդիկ։
Ո՞ր վէրքն է բուժուել՝ եթէ ոչ միայն աստիճանաբար.
Մարդիկ, հօ գիտե՛ս, խելքով են գործում, ոչ թէ դիւթելով.
Խելքն էլ ձգձգող ժամանակի հետ պէտք է յարմարուի.
Ի՞նչ, բանըդ լաւ չէ՞. Կասսիօն քեզ ծեծեց.
Լաւ, բայց փոխարէն այդ մի քիչ ծեծի՝
Դու էլ Կասսիօյին վռնդել տուիր։
Շատ բան է աճում արեգակի տակ,
Բայց ամեն պտուղ որ առաջ ծաղկի, առաջ կը հասնի։

Մի քիչ համբերիր: Տես, լուսացել է.
Զբօսանք ու գործ երկար ժամերը կարճացընում են:
Գընա մտիր տուն, գընա ուր որ քեզ տեղ են յատկացրել.
Գընա, ասում եմ:

Ռոդրիգօն գնում է:

Երկու բան էլ կայ որ պէտք է անեմ.
Պէտք է որ կինըս իր տիրուհու մօտ բարեխօս լինի
Կասսիօյի համար. կը ստիպեմ նորան որ այդպէս անէ.
Իսկ այդ միջոցին ես Մաւրին կ'առնեմ մէկդի կը քաշեմ,
Եւ ճի՛շդ երբ Կասսիօն Դէզդէմոնային խնդրելիս լինի,
Ներս կը մտցնեմ: Հա՜, ձեւը գտայ. ոչ դանդաղութեամբ
Գործը փչացնենք, ոչ էլ պաղութեամբ:

գնում է դուրս:



# ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Կիպրոս. դղեակի առաջ.*

*Գալիս են Կասսիօ եւ մի քանի նուագիչներ:*

Կասս. *Եկէք, վարպետներ, այստեղ նուագեցէք.*
*Ձեր նեղութիւնը լաւ կը վարձատրեմ.*
*Մի կարճ բան լինի, «Բարի լոյս, զօրապետ»:*

Նուագածութիւն:

Գալիս է Խեղկատակը:

Խեղկ. *Էդ ի՞նչ է, վարպետներ, ձեր գործիքները միթէ Նապոլի՞ց են գալիս, որ էդպէս քթից են խօսում:*

Ա. Նր. *Ի՞նչպէս, պարոն, ի՞նչպէս:*

Խեղկ. *Ասէք խնդրեմ, դրանք քամու գործիքներ են, չէ՞:*

Ա. Նր. *Ի հարկէ, պարոն, ի՞նչ ասել կ'ուզի:*

Խեղկ. *Դէ որ այդպէս զռում են՝ պոչ էլ կ'ունենան:*

Ա. Նր. *Ի՞նչ պոչ:*

Խեղկ. *Պարզ բան է, շատ քամու գործիքներ գիտեմ, որոնցից մի պոչ կայ կախուած: Բայց, վարպետներ, ահա ձեզ փող. զօրապետը էնքան հաւանեց ձեր մուզիկը, որ խնդրում է, Աստծու սիրուն, այդ աղմուկը դադարացնէք:*

Ա. Նր. *Լաւ, պարոն, էլ չենք ածի:*

Խեղկ. *Եթէ կարող էք էնպէս ածել, որ ձէնը իսկի դուրս չը գայ՝ սկսէք նորից. բայց մեր զօրապետը, ինչպէս ասում են, մուզիկ լսելու շատ մեծ փափագ չունի:*

Ա. Եր. Չենք կարող, պարոն։

Խեղկ. Ուրեմն զուռնաներդ դրէք տոպրակներիդ մէջ, եւ հայդէ՜. ինչու որ ես պէտք է գնամ. հեռացէ՛ք, չքացէք օդի մէջ, հայդէ՜։

Երաժիշտները գնում են։

Կասս. Ականջ դիր, պարկեշտ բարեկամ։

Խեղկ. Ականջ չեմ կարող դնել, բարեկամ, բայց կարող եմ ձեզ լսել։

Կասս. Խնդրեմ բաց թողնես այդ բառախաղերը. առ քեզ այս փոքրիկ ոսկին. եթէ այն տիկինը, որ զօրապետի կնոջ մօտն է լինում, արդէն վեր է կացել, ասա նրան թէ Կասսիօ անունով մէկը խնդրում է նրա հետ խօսել. կ՚անե՞ս, չէ՞։

Խեղկ. Այո, պարոն, վեր է կացել. եթէ դէպի էս կողմ վար գայ՝ ձեր ասածը նրան կը յայտարարեմ։

Կասս. Խնդրեմ, բարեկամ։

Խեղկատակը դուրս է գնում. գալիս է Եագօն։

Բարեւ քեզ, Եագօ։

Եագօ. Ուրեմն այս գիշեր անկողին չէ՞ք մտել։

Կասս. Ոչ, լոյս էր արդէն երբ բաժանուեցանք։
Ես ինձ թոյլ տուի մի մարդ ուղարկել ներսը կնոջդ մօտ.
Աղաչանքս այն է, որ մի միջոց տայ
Որ առաքինի Դէզդէմոնային կարենամ տեսնել։

Եագօ. Հէնց այս րոպէիս կ՚ուղարկեմ ձեր մօտ.
Ես էլ իմ կողմից մի բան կը հնարեմ,
Որ Մաւրին առնեմ եւ մէկդի տանեմ,
Որպէս զի ձեր գործն ու ասուլիսը անխափան լինի։

Կասս. Շատ շնորհակալ եմ։

Եագօն գնում է։

Երբէք ես այդքան բարի ու պարկեշտ մի Փլորէնտիացի
Դեռ չեմ ճանաչել։

Գալիս է Էմիլիան։

Էմիլիա. Բարեւ, տեղակալ.

*Ցաւում եմ որ ձեզ այդպէս անախորժ բան է պատահել։*
*Բայց հոգ չէ, շուտով կարգի կը դրուի.*
*Մաւրն ու իր կինը այդ մասին էին հէնց այժըմ խօսում.*
*Տիրուհիս սաստիկ պաշտպանում է ձեզ.*
*Իսկ Մաւրն ասում է, թէ նա, որին դուք վիրաւորել էք,*
*Այստեղ Կիպրոսում շատ ազգականներ եւ համբաւ ունի.*
*Եւ ինքն ստիպուած խոհեմութիւնից՝*
*Պէտք է անպատճառ ձեզ հեռու պահէ.*
*Բայց նա պնդում է թէ սիրում է ձեզ,*
*Եւ կարիք չունի ուրիշ միջնորդի,*
*Բացի սեփական իր համակրանքից,*
*Եւ հէնց առաջին պատեհ առիթը ձեռքից չի փախցնի*
*Ձեր պաշտօնը ձեզ յետ տալու համար։*

*Կասս.* *Լաւ, բայց խնդրում եմ,*
*Եթէ կարծում էք որ անյարմար չէ, եւ կարելի է,*
*Մի առիթ տաք ինձ որ երկու րոպէ Դէզդէմոնային*
*Առանձին տեսնեմ։*

*Էմիլիա.* *Ներս եկէք, խնդրեմ.*
*Ես ձեզ կը տանեմ մի տեղ, ուր ազատ*
*Ձեր սրտի ուզածն ասել կարենաք։*

*Կասս.* *Շնորհապարտ եմ ձեզ։*

**գնում են։**

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի սենեակ դղեակում.*

*Գալիս են Օթելլօ, Եագօ եւ մի քանի Ազնուականներ:*

Օթելլօ. Այս նամակները նաւապետին տուր,
Եւ ասա նորան որ յարգանքներըս յայտնէ Սէնատին։
Այդ անելուց յետ՝ եկ եւ ինձ գտիր պատնէշի վրայ,
Այնտեղ ման կը գամ։
Կասս. Շատ բարի, տէր իմ։
Օթելլօ. Պարոններ, կ՚ուզէ՞ք այն ամրութիւնը տեսնելու գնանք։
Ազն. Կը սպասաւորենք Ձերըդ Յարգութեան.

*գնում են։*

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Դղեակի առաջ.*

*Գալիս են Դեզդեմոնա, Կասսիօ եւ Էմիլիա:*

Դէզդ. Դէ՛հ, միամիտ կաց, սիրելի Կասսիօ,
Ձեռքիցս եկածը կ՚անեմ քո համար։
Էմիլիա. Արէք, տիրուհի. իրա՛ւ, ամուսինս այնպէս տխրել է,
Որ կարծես գործը իրենը լինի։
Դէզդ. Ի՛նչ ազնիւ մարդ է.
Միամիտ կացէք, ես այնպէս կ՚անեմ որ տէրըս եւ դուք
Առաջւայ նըման բարեկամ լինէք։
Կասս. Բարեսի՛րտ տիկին,
Միքայէլ Կասսիօն կայ եւ կը մընայ ձեր անկեղծ ծառան՝
Ինչ էլ գլխին գայ։
Դէզդ. Այո, լաւ գիտեմ. շնորհակալ եմ.
Գիտեմ ամուսնուս սրտանց սիրում էք. հին ծանօթներ էք.

Եւ վստահ եղէք, նա այնքան միայն հեռու կը մնայ,
Որքան որ պէտք է իր խոհեմութիւն։

Կասս. Այո, բայց, տիկին,
Այդ խոհեմութիւնը կարող է երկա՛ր, շա՛տ երկար տեւել,
Կամ թէ այնպիսի ջրիկ եւ անհիւթ կերակրով սնուիլ,
Կամ դիպուածներից նոր ծնունդ առնել,
Որ, ես բացակայ եւ տեղս ուրիշին տրուած լինելով՝
Իմ զօրապետը կարող է սէրըս եւ ծառայութիւնս
Իսպառ մոռանալ։

Դէզդ. Չէ՛, միամիտ կաց.
Այս Էմիլիայի ներկայութեանը քեզ խօսք եմ տալիս,
Որ քո պաշտօնը յետ կը տրուի քեզ։ Ապահով եղիր,
Երբ բարեկամի մի բան խոստանամ՝
Խօսքըս կը պահեմ մինչ վերջին կէտը.
Էլ հանգստութիւն չեմ տայ ամուսնուս,
Քունը կը կտրեմ մինչեւ մեղմանայ,
Այնքան կը խօսեմ մինչեւ սպառեմ համբերութիւնը.
Նրա անկողինը դպրոց կը շինեմ,
Եւ ճաշարանը՝ խոստովանարան.
Ամեն խնդրի մէջ Կասսիօյի գործը կը խառնեմ ա՛նվերջ.
Ուրեմն, Կասսիօ, գընա՛ ուրախ կաց,
Քո միջնորդուհին պատրաստ է մեռնել քան դատըդ լքել։

Հեռուից գալիս են Օթէլլօ եւ Եագօ։

Էմիլիա. Տիկին, տէրս եկաւ։
Կասս. Տիկին, թոյլ տուէք արձակուրդ խնդրել։
Դէզդ. Ինչո՞ւ. կաց եւ տես ինչպէս եմ խօսում։
Կասս. Ոչ այժըմ, տիկին. ինձ վատ եմ զգում,
Եւ աննպաստ եմ սեփական դատիս։
Դէզդ. Լաւ, այնպէս արա ինչպէս ուզում ես։

Կասսիօն գնում է դուրս։

Եագօ. Սա ինձ դուր չեկաւ։
Օթէլլօ. Հը՞, ի՞նչ ես ասում։

Յագօ. Ոչինչ, ազնիւ տէր. կամ եթէ ... չը գիտեմ թէ ինչ ...
Օթէլլօ. Կասսիոն չէ՞ր միթէ որ իմ կընոջից հիմա բաժանուեց։
Յագօ. Կասսիո՞ն. ոչ, տէր իմ, չեմ կարող կարծել
Որ նա այս ձեւով դուրս կը սողոսկէր յանցաւորի պէս՝
Հէնց որ ձեզ տեսնէր։
Օթէլլօ. Նա էր, վստահ եմ։
Դէզդ. Ի՞նչպէս ես, հոգիս.
Հէնց այս րոպէիս ես խօսում էի մի խնդրողի հետ,
Որ քո շնորհից զրկուած լինելով՝ հալւում մաշւում է։
Օթէլլօ. Ո՞ւմն ես ակնարկում։
Դէզդ. Ո՞ւմը, Կասսիոյին, քո տեղակալին։ Իմ բարի տէրըս,
Եթէ շնորհք ունիմ կամ կարողութիւն սիրտդ շարժելու՝
Խնդրում եմ իսկոյն հաշտուես նորա հետ։
Թէ ճիշդ չը լինի որ նա իսկապէս նուիրուած է քեզ,
Եւ մեղանչել է անգիտութիւնից, ոչ գիտակցօրէն՝
Ես անհմուտ եմ մի պարկեշտ երես ճանաչելու մէջ.
Աղաչում եմ քեզ, յետ կանչիր նորան։
Օթէլլօ. Նա՞ էր այստեղից դուրս գնացողը։
Դէզդ. Այո, նա ինքն էր,
Այնպէս ընկճուած, որ իր տխրութեան մի մասն ինձ թողեց,
Որ իր հետ ցաւիմ։ Քաղցրիկ սիրական, յետ կանչիր նրան։
Օթէլլօ. Ոչ այժմ, անուշիկ. մի ուրիշ անգամ։
Դէզդ. Բայց շո՞ւտով։
Օթէլլօ. Այո, աւելի շուտով երբ դու ես խնդրում։
Դէզդ. Այս գիշեր ընթրիքի՞ն։
Օթէլլօ. Ոչ, այս գիշեր ոչ։
Դէզդ. Լաւ, վաղը ճաշի՞ն։
Օթէլլօ. Ես վաղը ճաշին տանը չեմ լինի։
Գնդապետներին պէտք է հանդիպեմ բերդաքաղաքում։
Դէզդ. Դէ լաւ, ուրեմըն վաղը ընթրիքին.
Կամ երեքշաբթի առաւօտ, կամ թէ նոյն օր կէսօրին,
Կամ թէ գիշերը, կամ չորեքշաբթի.
Խնդրեմ, օրն ասա. բայց ոչ աւելի քան թէ երեք օր.

Հաւատացնում եմ, շատ է զղջացել.
Եւ նրա մեղքը, մեր սովորական դատելու ձևով,
— Թեև, ասում են, կռուի ժամանակ
Պէտք է ամենէն ընդունակները օրինակ դառնան —
Գրեթէ մի մեղք չէ, որ արժանի լինի մասնաւոր պատժի։
Երբ կարող է գալ, ասա, Օթելլօ։ Ինքս ինձ ասում եմ,
Ի՞նչ կայ աշխարհում որ ինձնից խնդրես՝ և ես քեզ մերժեմ,
Կամ թէ այդ ձևով տատանուած կանգնեմ։
Ի՞նչ մեծ բան է որ . . . սա նոյն Կասիոն է,
Որ միշտ քեզ հետ էր՝ երբ գալիս էիր սիրախօսելու.
Եւ ո՛րքան անգամ երբ ես քեզ մի քիչ բամբասում էի՝
Քո՛ կողմն էր բռնում. և հիմա ո՛րքան դժուար է դարձել
Նրան յետ բերել։ Հաւատացնում եմ, շատ բան կ'անէի . . .

Օթելլօ. Բաւ է, խնդրում եմ. թող գայ երբ ուզէ.
Ոչինչ չեմ կարող մերժել քեզ։

Դեզդ. Ի՞նչ խօսք. դա մի շնորհ չէ.
Դա այնպէս բան է, որպէս թէ խնդրեմ որ ձեռնոց հագնես,
Կամ սննդարար կերակուր ուտես, կամ քեզ տաք պահես,
Կամ մի բան անես սեփական անձիդ և օգտիդ համար.
Չէ՛, եթէ մի օր մի բան աղերսեմ,
Որով ուզենամ քո սէրը փորձել՝
Դա պիտի լինի խի՛ստ ծանրակշիռ, խի՛ստ դժուար մի բան,
Որի շնորհելը սարսափելի է։

Օթելլօ. Ոչինչ չեմ մերժի.
Որի փոխարէն ես էլ քեզանից այս բանն եմ խնդրում.
Մի քանի րոպէ առանձին թող ինձ։

Դեզդ. Ի՞նչ անեմ, մերժե՞մ. ոչ, մնա՛ս բարով, սիրելի տէրս։

Օթելլօ. Գնաս բարով, հոգիս. ես իսկոյն կը գամ։

Դեզդ. Գնանք, Էմիլիա։ — Թող այնպէս լինի, ինչ հաճոյ է քեզ.
Ի՞նչ էլ որ լինես՝ հնազանդ եմ ընդ միշտ։

Դեզդեմոնան և Էմիլիան գնում են։

Օթելլօ. Անգի՛ն արարած, դևն առնէ հոգիս թէ քեզ չեմ սիրում,
Եւ երբ չը սիրեմ՝ ապա քաօսը վերադարձել է։

Եագօ. Ազնիւ տէր…
Օթելլօ. Ի՞նչ է, Եագօ։
Եագօ. Երբ տիկնոջ տունը յաճախում էիք՝
Միքայէլ Կասսիօն գիտէ՞ր ձեր սէրը։
Օթելլօ. Այո, սկզբից գիտէր մինչեւ վերջ. ի՞նչու ես հարցնում։
Եագօ. Ոչինչ, իմ մտքի գոհացման համար.
Մի վատ բան չը կայ։
Օթելլօ. Ի՞նչ մտքիդ, Եագօ։
Եագօ. Ես չը գիտէի թէ նա տիկնոջ հետ ծանօթ է եղել։
Օթելլօ. Այո, ծանօթ էր, եւ յաճախ նա էր միջնորդը մեր մէջ։
Եագօ. Իրա՞ւ։
Օթելլօ. Իրա՞ւ, հա, իրաւ. միթէ դորա մէջ մի բա՞ն ես տեսնում։
Միթէ պարկեշտ չէ՞։
Եագօ. Պարկե՞շտ, տէր իմ։
Օթելլօ. Պարկեշտ, հա, պարկեշտ։
Եագօ. Որքան ես գիտեմ նա պարկեշտ մարդ է։
Օթելլօ. Ի՞նչ ես մտածում։
Եագօ. Մտածո՞ւմ, տէր իմ։
Օթելլօ. Մտածո՞ւմ, տէր իմ.
Երկինքը վկա՜յ, արձագանգի պէս ասածս է կրկնում.
Կարծես թէ մտքում մի ճիւաղ ունի,
Այնպէս սոսկալի որ կարելի չէ ուրիշին ցոյց տալ։
— Անպատճառ մի բան ուզում ես ասել։
Հէնց այս րոպէիս երբ Կասսիօն գընաց իմ կնոջ մօտից
Այսպէս ասացիր, "Սա ինձ դուր չեկաւ"։ Ի՞նչը դուր չեկաւ։
Եւ երբ ասացի թէ նա իմ սիրոյ բոլոր ընթացքում
Խորհրդակիցս էր՝ ասացիր "Իրա՞ւ",
Յետոյ ունքերըդ այնպէս կծկեցիր եւ ժողովեցիր,
Կարծես ահռելի մի միտք թաղեցիր ուղեղիդ մէջը։
Թէ ինձ սիրում ես՝ ցոյց տուր ինձ միտքըդ։
Եագօ. Տէր իմ, դուք գիտէք որ սիրում եմ ձեզ։
Օթելլօ. Կարծեմ սիրում ես. եւ որովհետեւ գիտեմ թէ սիրտըդ
Լեցուն է սիրով եւ պարկեշտութեամբ,

Եւ ամէն մի բառ ասելուց առաջ չափում կշռում ես,
Հէնց այդ պատճառով այս ընդհատումներդ
Ինձ էլ աւելի երկիւղ են ազդում։
Այդ տեսակ բաներ մի կեղծ ու խարդախ սրիկայի մէջ
Շատ սովորական ձեւացումներ են.
Բայց մի մարդու մէջ որ ուղղամիտ է՝
Դրանք թագնուած մեղադրանքներ են սրտից դուրս բղխած,
Որ կիրքը զսպել չէ կարողանում։

Իագօ. Ինչ որ Կասսիոյին վերաբերում է՝
Կարող եմ երդուել որ պարկեշտ մարդ է։

Օթէլլօ. Ես էլ եմ կարծում։

Իագօ. Բայց պէտք է մարդիկ հէնց այն լինէին ինչ որ թւում են.
Կամ նրանք որ չեն, շատ լաւ կը լինէր որ չը թւային։

Օթէլլօ. Այո, ամէն մարդ պէտք է այն լինէր, ինչ որ թւում է։

Իագօ. Ես էլ այդ ձեւով կարծեմ թէ Կասսիոն մի պարկեշտ մարդ է։

Օթէլլօ. Չէ՛, այդ բանի մէջ մի ուրիշ բան կայ.
Խնդրեմ, խօսիր ինձ որպէս թէ ինքըդ քեզ հետ ես խօսում,
Եւ որոճում ես մտմտուքներդ,
Տուր ամենավատ մտածումներիդ ամենավատ բառեր։

Իագօ. Բայց ոչ, ներեցէք, սիրելի տէր իմ,
Թէեւ ամէն կերպ ծառայութիւններ պարտական եմ ձեզ,
Բայց պարտ չեմ մի բան, որի մէջ նոյնիսկ գերին ազատ է.
Մտքե՞րըս յայտնել. վա՛հ, գուցէ ստոր, սխալ մտքեր են.
Ո՞ր պալատն է այն, ուր անարգ բաներ ներս չը սողոսկեն.
Ո՞վ ունի մի կուրծք այնպէս անապակ,
Ուր կեղտոտ խոհեր ատեան չը կազմեն,
Եւ օրինաւոր խորհուրդներին կից դատի չը բազմեն։

Օթէլլօ. Իագօ, դաւաճան եղած կը լինես բարեկամիդ դէմ՝
Եթէ կասկածես որ մարդիկ նրան անիրաւում են,
Եւ հեռու պահես մտածումներդ նրա ականջից։

Իագօ. Բայց աղաչում եմ... գուցէ սխալ են ենթադրածներըս,
Եւ պէտք է ասեմ թէ մի ախտ է դա իմ բնութեան մէջ՝
Ցանցաւոր բաներ տեսնել ամէն տեղ. եւ իրաւ, յաճախ

Կասկածոտ միտքըս մեղք է համարում բաներ, որ մեղք չեն։
Խնդրում եմ որ ձեր խոհեմութիւնը դեռ ուշ չը դարձնէ
Մի մարդու վրայ, որ այնքան յոռի կարծիքներ ունի,
Եւ ոչ էլ նրա ցրիւ, անհաստատ նկատածները
Ի զուր ձեր համար գլխացաւ շինէք։
Դա ոչ պատշաճ է ձեր անդորրութեան, ոչ էլ ձեր օգտին,
Ոչ իմ մարդութեան եւ պարկեշտութեան, ոչ էլ իմ խելքին,
Որ ձեզ իմացնեմ իմ խորհուրդները։

Օթելլօ. Ի՞նչ ես ուզում ասել։

Յագօ. Բարի անունը, ազնիւ տէր, մարդու ... եւ կնոջ համար
Ամենէն ազնիւ գոհարն է հոգու.
Ով որ քսակըս գողանայ՝ քիչ բան գողացած կլինի.
Մի ինչ է, ոչինչ. իմն էր, նրանն է,
Եւ հազարների գերին է եղել.
Բայց ով ինձանից անունըս շորթէ՝
Մի բան կը շորթէ, որ բընաւ նրան չի հարստացնի,
Իսկ ինձ իսկապէս կ՚աղքատացընէ։

Օթելլօ. Երկի՜նքն է վկայ, պէտք է իմանամ մտածումներըդ։

Յագօ. Չէք կարող, նոյնիսկ եթէ իմ սիրտը ձեր ձեռքում լինէր,
Եւ չէք իմանայ՝ քանի իմն է նա։

Օթելլօ. Հա՜ ...

Յագօ. Օհ, զգո՛յշ, տէր իմ, խանդոտութիւնից.
Դա այն ճիւաղն է կանանչ աչքերով,
Որ ինքն է ստեղծում այն կերակուրը որով սնւում է։
Երանելի է այն ամուսինը,
Որ լաւ գիտակ է իր անբախտութեան,
Սակայն չէ սիրում իրեն խաբողին.
Բայց ո՜հ, ի՜նչպիսի դժոխք րոպէներ պէտք է ապրի նա,
Որ թէ՛ սիրահար, թէ՛ խանդահար է,
Ով կասկածում է, բայց այնու հանդերձ սիրում է սաստիկ։

Օթելլօ. Օ՜հ, թշւառութի՜ւն։

Յագօ. Աղքատ ու գոհը հարուստ է, եւ շա՜տ.
Բայց ով անդադար աղքատանալու երկիւղի մէջ է,

Այն մարդու համար անսահման գույքն էլ այնպես աղքատ է,
Ինչպէս ձմեռը։ Ողորմա՛ծ երկինք,
Փրկիր նախանձից իմ բոլոր տոհմին։

Օթելլո. Բայց, ի՞նչ պէտք է դա.
Կարծում ես թէ ես նախանձոտ մարդու կեանք կը վա՞րէի,
Ամեն նոր լուսնի նոր կասկածներով կը հետեւէ՞ի։
Երբէ՛ք. մի անգամ կասկած յղանալ՝ իսկոյն վճռել է։
Դու ինձ այծի հետ կարող ես փոխել՝
Եթէ այլպիսի փքուն ու փչած ենթադրութիւններ
Իմ հոգու համար բան ու գործ շինեմ, քո ասած ձեւով։
Մարդ չէ կարող ինձ խանդոտ դարձնել
Ասելով թէ կինս գեղեցկուհի է, սիրում է ճաշել,
Եւ ընկերութիւն. ազատ է խօսում.
Գիտէ լաւ երգել, նուագել, պարել.
Երբ կինը լաւ է՝ դըրանք բոլորը լաւութիւններ են.
Եւ ոչ էլ իմ քիչ արժանիքներն են,
Որ ամենափոքր վախն են ինձ ազդում,
Կամ կասկած տալիս թէ նա ինձանից օտարացել է.
Աչք ունէր, տեսաւ, եւ ինքն ընտրեց ինձ։
Ոչ, Եագօ. պէտք է կասկածից առաջ մի բան նկատեմ,
Կասկածից յետոյ՝ պէտք է հաստատեմ,
Եւ երբ հաստատուի, ոչինչ չի մընայ,
Հեռո՛ւ ինձանից եւ սէր, եւ նախանձ։

Եագօ. Շատ լաւ, ուրախ եմ. ուրեմըն հիմա ազատ կարող եմ
Անձնուիրութիւնս ու սէրըս ցոյց տալ։
Քանի որ հիմա պարտ եմ ճիշդ խօսել, ահա խորհուրդըս։
Ես դեռ չեմ խօսում ապացոյցներից.
Աչքներըդ բացէք ձեր կընոջ վըրայ.
Զննեցէք նըրան, թէ Կասսիոյի հետ ինչպէս է վարւում.
Նայեցէք այսպէս, ոչ խանդոտի պէս, ոչ էլ միամիտ.
Ես չէի ուզի որ ձեր վեհանձըն եւ ազնիւ սիրտը
Հէնց իր բընածին բարութեան համար շահագործըւի.
Աչքներըդ բացէք. մեր երկրի բարքերն ինձ լաւ ծանօթ են.

Վենետիկում կանայք չեն քաշւում երբէք երկնքին ցոյց տալ
Իրենց ախտերը՝ միայն թէ ծածկեն ամուսիններից.
Նրանց մօտ խիղճը ոչ թէ չանելն է, այլ թագցնելը։

Օթելլո. Այդպէ՞ս ես կարծում։

Յագո. Իր հօրը խաբեց՝ ձեզ հետ պսակւեց.
Երբ ցոյց էր տալիս թէ դողդողում է եւ զարհուրում է
Ձեր ակնարկներից՝ ուղղակի նրանց սիրահարւած էր։

Օթելլո. Այո, այդպէս է։

Յագո. Ուրեմն հասկացէք.
Նա որ լինելով այդքան դեռահաս՝ այդպէս լաւ կեղծեց,
Եւ հօր աչքերը այնպէս կուրացրեց,
— Խեղճը կարծում էր կախարդութիւն կայ —
Բայց վատ եմ անում. շատ աղաչում եմ որ ներող լինէք
Ձեզ այդքան սաստիկ սիրելուս համար։

Օթելլո. Յագո, քեզ ընդ միշտ երախտապարտ եմ։

Յագո. Տեսնում եմ որ այս ձեզ մի քիչ յուզեց։

Օթելլո. Ոչ, բընաւ, բընաւ։

Յագո. Իրաւ, կարծում եմ։ Յոյս ունիմ որ դուք այս խօսւածները
Իմ սէրից բղխած պիտի համարէք.
Բայց նկատում եմ որ շատ էք յուզւել։
Պէտք է ձեզ խնդրեմ որ իմ ասածներն այնքան ձիգ չը տաք,
Որ շօշափելի փաստի ձեւ առնեն,
Ոչ էլ աւելի ծաւալ տաք նրանց, քան մի կասկածի։

Օթելլո. Միամիտ եղիր։

Յագո. Թէ այդպէս անէք, սիրելի տէրըս,
Խօսքերս այնպէս վատ մի հետեւանքի կարող են հանել,
Որ շատ հեռու է իմ մտածումից։
Միքայէլ Կասիօն լաւ բարեկամս է...
Տէր իմ, տեսնում եմ որ վրդովւած էք։

Օթելլո. Ոչ, վրդովւած չեմ.
Չեմ կարող կարծել որ Դէզդէմոնան առաքինի չէ։

Յագո. Շա՛տ ապրի այդպէս. դուք էլ շա՛տ ապրէք այդ գաղափարով։

Օթելլո. Սակայն եւ այնպէս՝ գուցէ բնութիւնը ճամբից շեղւելով...

Յագօ. Հա՛, բանն էլ այդ է. ինչպէս, օրինակ — Թողէք պարզ խօսեմ —
Մերժել իր ձեռքը այնքան շատերին՝
Իր երկրի, գոյնի եւ աստիճանի փեսացուներին,
Մինչդեռ տեսնում ենք որ բնութեան մէջ
Միշտ էլ նմանը նմանն է սիրում, ...
Փո՜ւհ, մարդ կարող է գարշելի մի տենչ հոտոտել այդտեղ,
Կեղտոտ հակումներ, անբնական մտքեր։ Բայց ներեցէք ինձ.
Ոչ թէ ուղղակի ակնարկութիւնըս նրա մասին է.
Թէեւ վախ ունիմ որ նրա կամքը
Վերադառնալով իր աւելի լաւ դատողութեանը՝
Ձեզ իր երկրացի տղամարդկանց հետ սկսի չափել,
Եւ գուցէ զղջայ։
Օթէլլօ. Մնա՛ս բարով, մնաս բարով։
Եթէ մի նոր բան նկատես՝ լուր տուր.
Կընոջդ էլ ասա որ նա էլ դիտէ. հեռացիր, Յագօ։
Յագօ. (Հեռանալով) Թոյլ տուէք, տէր իմ։
Օթէլլօ. Ես ի՞նչու պէտք է ամուսնանայի։
Այս պարկեշտ մարդը շատ բան է տեսնում եւ շատ բան գիտէ,
Անշուշտ աւելի քան թէ յայտնում է։
Յագօ. (Վերադառնալով) Տէր իմ, կ'ուզէի հայցել ձեզանից,
Որ այս խնդիրը սրանից աւել չը պրպտէիք,
Թողէք ժամանակին. թէեւ յարմար է,
Որ Կասիօն կրկին իր գործին կանչուի,
Քանի որ այնպէս ընդունակ է նա իր պաշտօնի մէջ,
Բայց եթէ հաճէք առ այժմ նրան հեռացած պահել,
Այդպէս կարող էք լաւ զննել նրան
Եւ այն միջոցը որ գործ կը դնէ,
Տեսնել թէ ձեր կինն արդեօք շատ սաստիկ, անհամբեր կերպով
Չի՞ ստիպի արդեօք որ նրան կրկին պաշտօնի կանչէք.
Դրանից շատ բան յայտնի կը լինի։ Մինչեւ այդ, տէր իմ,
Դուք խիստ յոռետես համարեցէք ինձ կասկածներիս մէջ,
— Եւ իսկապէս էլ լուրջ երկիւղ ունիմ որ հէնց այդպէս եմ —

Եւ ձեր կընոջը անմեղ հաշուեցէք, աղաչում եմ ձեզ։
Օթելլօ. Լաւ, մի՛ վախենայ, խոհեմ կը լինեմ։
Եագօ. Նորէն խնդրում եմ արձակուրդ շնորհէք։

գնում է։

Օթելլօ. Արտաքոյ կարգի պարկեշտ մարդ է սա. եւ հմուտ մտքով՝
Գիտէ մարդկային ամէն մի գործի բուն էութիւնը։
Եթէ համոզուիմ որ բազէս կրկին վայրիացել է՝
Թէկուզ իմ սրտի լարերից լինեն նորա կապերը՝
Դարձեալ սուլելով կ'արձակեմ նորան դէպի հողմն ի վար,
Գընայ իր բախտին իրեն որս ճարէ։
Գուցէ պատճառը այն է, որ սեւ եմ,
Կամ այն, որ չունիմ այն խօսակցութեան փափուկ ձեւերը,
Որոնք յատուկ են բանսարկուներին,
Կամ այն, որ արդէն իջնում եմ դէպի ծերութեան ձորը,
— Թէպէտեւ ոչ շատ — որ նա հեռացաւ։
Այո, խաբուած եմ, եւ միակ ճարըս նորան ատելն է։
Անիծեա՜լ լինի ամուսնութիւնը,
Որ այդ փափկասուն արարածներին մերը չը կարծենք,
Երբ պատկանում են միմիայն իրենց ախորժակներին։
Լաւ է գորտ լինեմ, ապրեմ նկուղի արտաշնչութեամբ,
Քան թէ գիտենամ որ մի անկիւն կայ իմ սիրածի մէջ
Ուրիշի համար։ Եւ սակայն, դա է մեծերի բախտը.
Նորանք նուազ են առանձնաշնորհուած քան ստոր մարդիկ.
Դա անխուսելի ճակատագիր է, ճիշդ ինչպէս մահը.
Այս երկճիւղանի անբախտութիւնը վիճակւում է մեզ
Հէնց աշխարհ գալիս։

գալիս են Դեզդեմոնա եւ Էմիլիա։

Թէ սա կեղծ լինի՝ ապա երկինքը ինքզինքն է ծաղրում։
Դեզդ. Ո՞ւր ես, սիրելիս. ճաշը պատրաստ է,
Եւ քո հրաւիրած կղզեցիները քեզ են սպասում։
Օթելլօ. Պարսաւելի եմ։
Դեզդ. Ի՞նչու է ձայնըդ այդպէս նուաղել.

Հիւա՞նդ ես, ի՞նչ է։

Օթէլլօ. Մի ցաւ եմ զգում այստեղ ճակատիս։

Դէզդ. Անքնութիւն է, ոչինչ, շուտ կ'անցնի.
Թող ամուր կապեմ, մէկ ժամում կ'անցնի։

Օթէլլօ. Այդ թաշկինակը փոքր է. թող կենայ։

Ձեռքով թաշկինակը հեռացնում է, որ ընկնում է ցած։

Գալիս եմ քո հետ։

Դէզդ. Սաստիկ ցաւում եմ որ անհանգիստ ես։

Օթէլլօն եւ Դեզդեմոնան գնում են։

Էմիլիա. Ի՜նչ լաւ որ գտայ այս թաշկինակը.
Մաւրի առաջին յիշատակն է սա Դեզդեմոնային.
Շոշորթ ամուսինս ինձ հարիւր անգամ ասել խնդրել է
Որ ես գողանամ. բայց իմ տիրուհին
Այնպէս սիրում է այս յիշատակը,
— Օթելլօն նրան երդւեցրել է որ լաւ պահպանի; —
Որ նա շարունակ ձեռքին է պահում,
Եւ համբուրում է, հետն էլ խօսում է։
Պէտք է բանւածքը օրինակել տամ Եագօյի համար.
Ի՛նչ բանի է պէտք, Աստուած է գիտակ, ոչ ես. ես միայն
Ուզում եմ նրա քմահաճոյքը կատարած լինել։

Գալիս է Եագօն։

Եագօ. Վա՜հ, ի՞նչ ես անում այստեղ մեն մենակ։

Էմիլիա. Լաւ, մի մրթմրթա։ Եագօ, քեզ համար մի բան եմ պահել.

Եագօ. Ինձ համար մի բա՞ն. է՜հ, ի՞նչ կը լինի։

Էմիլիա. Հա՜։

Եագօ. Մի յիմար կին։

Էմիլիա. Հա՜, հա՜, հէնց ա՞յդքան։
Ի՞նչ կը տաս եթէ այն թաշկինակը ...

Եագօ. Ո՞ր թաշկինակը։

Էմիլիա. Վա՜հ, Օթելլօյի առաջին ընծան.
Այն, որ շարունակ ստիպում էիր որ գողանայի։

Եագօ. Հը՞, գողացե՞լ ես։

Էմիլիա. Ոչ, երկինք վկայ, անզգուշութեամբ ձեռքից վար ձգեց,
Ես էլ պատահմամբ այնտեղ լինելով՝ գետնից վեր առի։
Տես, տես։

Եագօ. Ի՜նչ լաւ աղջիկ ես. ինձ տուր, խնդրում եմ։

Էմիլիա. Բայց ի՞նչիդ է պէտք, որ այնքան սաստիկ յորդորում էիր
Որ գողանայի։

Եագօ. (Ձեռքից յափշտակելով) Դա քո ի՞նչ գործն է։

Էմիլիա. Եթէ կարեւոր բանի համար չէ, յետ տուր։ Խե՜ղճ տիկին,
Կը խելագարուի երբ որ նկատէ թէ կորցրել է։

Եագօ. Այնպէս ձեւացրու որ դու չես տեսել. պէտք ունիմ սրան.
Գընա, հեռացիր։

Էմիլիան գնում է։

Պէտք է այս ձգեմ Կասսիոյի տունը, որ ինքը գտնէ։
Օդի պէս թեթեւ աննշան բաներ՝ խանդոտի աչքին
Սուրբ Գրքի նման ուժեղ փաստեր են։
Սա շատ բան կ՚անէ։ Մաւրը իմ թոյնից արդէն փոխւում է։
Վատ կասկածները իրենց բնոյթով այն թոյներիցն են,
Որոնք սկզբում բնաւ համ չունին,
Բայց երբ արեան վրայ մի քիչ ազդում են՝
Այրում են ինչպէս ծծումբի հանքեր։
Հա՜, հա՜, չասացի՞. ահա գալիս է։

Հեռուից գալիս է Օթելլօն։

Գընա՜, ոչ մեկոն եւ ոչ մանդրագոր,
Ոչ էլ աշխարհի բոլոր թմրաբեր օշարակները
Կարող են կրկին յետ տալ երեկուայ քո անուշ քունը։

Օթելլօ. Ի՞նձ դաւաճանել, հա՜, հա՜։

Եագօ. Վահ, ի՞նչ է. թողէք, զօրապետ։

Օթելլօ. Կո՜րիր, գո՜ւրս կորիր. տանջանքի անուին կապել ես դու ինձ։
Երդւում եմ, լաւ է շատ խաբուած լինել
Քան քիչ գիտենալ։

Եագօ. Ի՞նչպէս թէ, տէր իմ։

Օթելլօ. Նըրա լրբութեան գողցած ժամերից ի՞նչ լուր ունէի.

Ես չէի տեսնում, չէի մտածում. դա ինձ չէր նեղում.
Յաջորդ գիշերը լաւ քընում էի, անհոգ եւ ուրախ.
Կասսիօյի պաչերը չէի տեսնում նըրա շըրթունքին.
Երբ որ մի մարդուց մի բան գողանան, եւ նա այդ չը զգայ,
Թող անգէտ մընայ, եւ նըրա համար գողութիւն չը կայ:

Յագօ. Ցաւում եմ որ դուք այդպէս էք խօսում:

Օթէլլո. Օ՜հ, ես երջանիկ եղած կլինէի՝
Եթէ ընդհանուր զօրաբանակը, բանուոր, եւ այն
Ամեն ոք նըրա անուշ մարմինը ճաշակած լինէր՝
Միայն թէ ինքըս լուր չունենայի:
Իսկ այժմ, մնա՜ս բարով, ընդ մի՜շտ, անդո՜րր միտք,
Մնաս բարով՝ սրտի գոհունակութի՜ւն,
Մնացէ՛ք բարով, ցցունքով զունդե՛ր, մե՛ծ պատերազմներ,
Որ դարձընում էք փառասիրութիւնն առաքինութիւն.
Մընացէ՛ք բարով, վըրնջո՜ւն նժոյգ, շընչո՜ւն շեփոր,
Ոգեւո՜ր թմբուկ, եւ ականջ պատռող սըրի՛նգ սըրաձայն,
Դրօշա՜կ արքունի, ամեն սարք ու կարգ,
Պերճութի՜ւն, հանդէ՜ս, եւ շո՜ւք փառահեղ պատերազմների,
Եւ դո՜ւք, մահասփիւռ զոռ մեքենանե՛ր, բիրտ կոկորդներով,
Դուք որ կեղծիքն էք անմահ Դիոսի ահեղ որոտման,
Մընացէ՛ք բարով. այլ եւս Օթէլլօն զբաղմունք չունի:

Յագօ. Կարելի՞ բան է:

Օթէլլո. Դո՜ւ, թշուառական, պէտք է հաստատես որ կինըս բոզ է.
Լաւ իմացիր այդ. պէտք է ակներեւ ապացոյց տաս ինձ.
Թէ ոչ, երդւում եմ յաւիտենական հոգուս արժէքով,
Լաւ էր քեզ համար շուն ծընուած լինել,
Քան թէ հաշիւ տալ իմ զարթնած ոխին:

Յագօ. Բանն այստե՞ղ հասաւ:

Օթէլլո. Ցոյց տուր ինձ աչքով, կամ գոնէ այնպէս հաստատիր դու այդ,
Որ ցուցման վըրայ մի տեղ չը մընայ, մի կեռ չը մընայ,
Մէկ հատիկ կասկած կախ տալու համար.
Թէ ոչ, վա՜յ կեանքիդ:

Յագօ. Բայց, ազնի՛ւ տէրըս ...

Օթելլօ. Թէ ուզեցել ես նրան զրպարտել եւ ինձ չարչարել՝
Էլ մի աղօթիր. բա՛ց թող այլ եւս ամեն ապաշաւ,
Սոսկանք կուտակիր սոսկանքի գլխին,
Գործեր կատարիր, որ երկինքը լայ, եւ երկիրն ապշի.
Քանզի սրանից աւելի մեծ մեղք
Չես կարող բարդել մեղքերիդ վրայ։
Եագօ. Ո՜հ, ողորմութի՜ւն, երկի՜նք, փրկիր ինձ։
Մարդ չէ՞ք դուք, ի՞նչ է, խելք ու միտք չո՞ւնիք, եւ հոգի չո՞ւնիք.
Դէ՛հ, Աստուա՛ծ ձեզ հետ, առէ՛ք պաշտօնըս։ Ի՜նչ տխմարն եմ ես,
Որ ինքս իմ ձեռքով պարկեշտութիւնըս ինձ մեղք եմ շինում.
Հրէշաւո՛ր աշխարհ. տե՛ս, տե՛ս, ո՛վ աշխարհ,
Ի՜նչ վտանգաւոր բան է ուղղամիտ եւ պարկեշտ լինել։
Շնորհակալ եմ շահածիս համար.
Էլ այս րոպէից ոչ մի բարեկամ չը կայ ինձ համար,
Երբ սէրն այսպիսի փորձանք է ծընում։
Օթելլօ. Ոչ, կաց. պէտք է դու պարկեշտ մարդ լինես։
Եագօ. Աւելի լաւ էր խոհեմ լինէի.
Պարկեշտութիւնը մի խելագար է,
Որ իր շահածը ինքն է կորցնում։
Օթելլօ. Երկինքը վկա՛յ,
Մէկ մտածում եմ որ կինս անմեղ է, մէկ, որ անմեղ չէ.
Մէկ մտածում եմ որ դու պարկեշտ ես, մէկ, որ պարկեշտ չես.
Ապացո՛յց պէտք է։ Նրա անունը,
Որ Դիանայի դէմքից ամբիծ էր,
Այժըմ մըրոտ է, այժըմ սեւ է նա հէնց իմ դէմքի պէս։
Եթէ աշխարհում չուան, թոյն, դաշոյն, կըրակ ու գետ կայ,
Ես չեմ հանդուրժի։ Պէտք է համոզուիմ։
Եագօ. Տէր իմ, տեսնում եմ որ բուռըն կիրքը ձեր սիրտն ուտում է։
Սաստիկ զղջում եմ որ ես այդ բանը ձեր առաջ դըրի։
Ի՞նչ է, կ'ուզէի՞ք համոզուած լինել։
Օթելլօ. Ոչ թէ կ'ուզէի, այլ պահանջում եմ։
Եագօ. Եւ կարելի է. բայց ի՞նչպէս, տէր իմ. ի՞նչպէս համոզուիք։
Ի՞նչ է, կ'ուզէի՞ք իբր վերատեսուչ բերան բաց արած՝

Նայել թէ նրան ինչպէս են...
Օթելլօ. Օ՜հ, դեւ ու դժոխք։
Եագօ. Բայց սաստիկ դժուար կը լինէր, կարծեմ,
Նրանց սարքել տալ այդ տեսարանը։
Գետինը մտնե՜ն, եթէ մարդկային ուրիշ աչքեր էլ՝
Բացի իրենցից՝ տեսնեն երբ նրանք իրար վրայ են։
Էլ ի՞նչ ուրեմըն, ի՞նչպէս ուրեմըն, ի՞նչ պիտի ասեմ.
Ո՞ւրկից ձեզ համար համոզում բերեմ.
Թէկուզ այծերից աւելի տաքոտ լինէին նրանք,
Կապիկներից տաք, ջեռուցած գայլերից աւելի կրքոտ,
Եւ գինովացած տգիտութիւնից աւելի տխմար՝
Դարձեալ չէք կարող ձեր աչքով տեսնել։
Բայց, ասում եմ ձեզ, եթէ յանցանքի երեւոյթները,
Զօրեղ յարակից պարագաներով,
Որ ուղիղ տանում եւ ճշմարտութեան դուռն են հասցնում,
Ձեզ կը համոզեն՝ լաւ, կը համոզուիք։
Օթելլօ. Տուր կենդանի փաստ որ ինձ խաբում է։
Եագօ. Շատ էլ չեմ սիրում ես այդ պաշտօնը.
Բայց քանի որ այժմ այս բանում այսքան առաջ եմ մղուել,
Դրդուած իմ յիմար պարկեշտութիւնից եւ անմիտ սէրից՝
Կ՚երթամ մինչեւ վերջ։
Քանի օր առաջ ես պառկած էի Կասսիօյի կողքին,
Եւ տառապելով ատամնացաւից՝ քունըս չէր տանում։
Մարդիկ կան ոգով այնպէս թուլաջիղ,
Որ քնի մէջ էլ խօսում են իրենց գործերի վրայ.
Այդպիսի մէկն էլ հէնց այս Կասսիօն է։
Նա քնած տեղը այսպէս էր ասում “Քաղցրիկ Դէզդէմոնա,
Թող զգոյշ լինենք, ծածկենք մեր սէրը„։
Եւ յետոյ, տէր իմ, նա ձեռքըս բռնեց եւ պինդ ղորեց,
Ասաց, „Ա՜խ, հոգիս„ եւ յետոյ այնպէս պինդ համբուրեց ինձ,
Կարծես ուզում էր ամէն մի համբոյր,
Որ բուսած լինէր շրթունքիս վրայ, արմատից պոկել.
Յետոյ իր ազդրը դրեց զիստիս վրայ, հառաչանք հանեց,

Կրկին համբուրեց, եւ յետոյ ասաց,
«Անիծուած լինի այն բախտը, որ քեզ Մաւրին վիճակեց»։
Օթէլլօ. Հրէշայի՜ն բան է, հրէշայի՜ն բան է։
Եագօ. Բա՜հ, երազ էր դա։
Օթէլլօ. Բայց ապացոյց է մի նախկին դէպքի. 456
Շատ վատ նշան է, թէպէտեւ երազ։
Եագօ. Եւ դա կարող է ոյժ տալ թերեւըս ուրիշ փաստերի,
Որոնք թոյլ լինեն իբրեւ ապացոյց։
Օթէլլօ. Կը փրթե՛մ նըրան։
Եագօ. Չէ՛, խոհեմ եղէք. դեռ յայտնի չէ մեզ որ բան է եղել.
Գուցէ տակաւին նա անմեղ լինի. բայց ա՛յս ասացէք. 461
Մի ելակներով նախշած թաշկինակ չէ՞ք տեսել երբէք
Ձեր կնոջ ձեռքին։
Օթէլլօ. Հէնց մի այդպիսին ինքս եմ ընծայել.
Դա իմ առաջին տուած պարգեւն էր։
Եագօ. Չէի իմանում. բայց մի այդպիսին 465
— Եւ հաստատ գիտեմ որ ձեր կնոջն է —
Ես այսօր տեսայ Կասսիոյի ձեռքին. երեսն էր սրբում։
Օթէլլօ. Եթէ այն լինի ...
Եագօ. Այն, կամ ուրիշը, որ ձեր կնոջն է,
Դա էլ նոր փաստ է փաստերի վըրայ ձեր կընոջ ընդդէմ։
Օթէլլօ. Ա՜խ, այն ստրուկը քառասուն հազար կեանք պէտք է ունենա՛ր.
Մէկը շատ քիչ է, շատ տկար բան է իմ վրէժի համար.
Հիմա տեսնում եմ որ ճշմարիտ է։ 472
Ինձ նայիր, Եագօ. բոլոր խօլ սէրըս փչում եմ հողմին.
Գնա՜ց.
Զարթիր, սե՜ւ վըրէժ՝ քո փոս նկուղից. 475
Սէր, յանձնիր թագըդ, սրտաշէն գահըդ բռնակալ ոխին.
Ուռչի՛ր, կո՛ւրծք, ուռիր, քո կըրած բեռնով, իժերի խայթով։
Եագօ. Դուք հանդարտ կացէք։
Օթէլլօ. Օ՜հ, արի՜ւն, արի՜ւն։
Եագօ. Դուք համբերեցէք, ասում եմ. գուցէ ձեր միտքը փոխէք.
Օթէլլօ. Ոչ, Եագօ, երբէք. Պոնտեան ծովի պէս՝ 480

Որի սառցային բուռն հոսանքը
Երբէք չէ տեսել յետադարձ ծփանք,
Այլ դիմում է շեշտ դէպի Պրոպոնտիկ եւ Հելլեսպոնտես,
Իմ արիւնախանձ մտածումներն էլ՝ ուժգին ընթացքով՝
Չը պէտք է երբէք դէպի յետ նայեն,
Եւ յետ ընկրկեն դէպի խոնարհ սէր,
Մինչեւ ընդարձակ եւ լայն վրէժը կուլ տայ բոլորին։
Այժըմ, այն բիւրեղ երկինքը վկա՛յ,
Ի պատիւ իմ այս սրբազան ուխտի երդում եմ անում։

Ծունկ է չոքում։ Եագօն էլ չոքում է։

Եագօ. Դեռ մի՛ վեր կենաք։ Վկայ եղէք ինձ, մշտավա՛ռ լոյսեր,
Ո՛վ տարերք որ մեզ շրջապատում էք,
Վկայ եղէք դուք, որ Եագօն այստեղ ուխտում է ձօնել
Իր խելքի, ձեռքի եւ սրտի բոլոր ունակութիւնը
Իր խաբուած տիրոջ ծառայութեանը։
Թող նա հրամայէ, եւ հնազանդելը խղճի պարտք է ինձ,
Ի՛նչ արիւնահեղ գործ էլ որ լինի։

Վեր են կենում։

Օթելլօ. Ողջունում եմ սէրդ՝
Ոչ թէ ընդունայն շնորհակալութեամբ,
Այլ սիրայօժար ընդունելութեամբ,
Եւ իսկոյն եւ եթ քեզ գործ եմ յանձնում.
Երեք օրուայ մէջ պէտք է լուր բերես թէ Կասիոն մեռաւ։

Եագօ. Բարեկամս մեռաւ. եղաւ ձեր կամքը.
Բայց խընայեցէք ձեր կնոջ կեանքին։

Օթելլօ. Դըժո՛խք, լիրբ բոզը։
Եկ առանձնանանք. ես պէտք է գնամ մի միջոց գտնեմ
Սիրուն դիւուկին շուտ սպանելու։
Այսուհետ դու ես իմ տեղակալը։

Եագօ. Ձեր անձնուէրը մինչեւ յաւիտեան։

Գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ՉՈՐՐՈՐԴ

*Դղեակի առաջ:*

*Գալիս են Դեզդեմոնա, Էմիլիա եւ Խեղկատակը:*

*Դէզդ.* Գիտե՞ս, տղայ, թէ Տեղակալ Կասսիօյին որտեղ կարելի է գտնել։

*Խեղկ.* Ոչ մի տեղ։

*Դէզդ.* Ինչո՞ւ, մարդ։

*Խեղկ.* Հօ չի կորել որ գտնուի։

*Դէզդ.* Ձեռք վերցրու. ո՞ւր է բնակւում։

*Խեղկ.* Թէ որ ասեմ ուր է բնակւում, պէտք է սուտ ասեմ։

*Դէզդ.* Սրա խօսքերից բա՞ն դուրս կը գայ։

*Խեղկ.* Ինչո՞ւ չէ. էն որ չեմ իմանում որտեղ է բնակւում։ Թէ որ նրա համար բնակարան հնարեմ, ասեմ էստեղ է բնակւում, կամ էնտեղ, էդ կը լինի սուտ ասել։

*Դէզդ.* Կարող ես հարցնել, եւ մի կարգին պատասխան բերել ինձ։

*Խեղկ.* Հա՛, նրա համար ողջ աշխարքին քրիստոնեական կը սովորացնեմ. այսինքն հարցեր կը տամ, եւ պատասխան կը ստանամ։

*Դէզդ.* Գնա նրան գտիր եւ ասա շուտ գայ այստեղ. ասա ամուսնուս նրա մասին համոզել եմ, եւ յոյս ունիմ որ ամեն բան կարգի կը դրուի։

*Խեղկ.* Էդ բանը ադամորդու կարողութիւնից դուրս չի. ուրեմն կը փորձեմ անել։

*Դէզդ.* Էմիլիա, թաշկինակս ո՞րտեղ պէտք է կորցրած լինեմ։

*Էմիլիա.* Չը գիտեմ, տիկին։

*Դէզդ.* Հաւատացնում եմ, աւելի լաւ էր
Կրուզադօներով լեցուն քսակըս կորցրած լինէի։
Թէ ազնիւ Մաւրըս բարեմիտ չլինէր,
Եւ զերծ այնպիսի նըւաստութիւնից,
Որով շաղւած են նախանձոտները՝ հէնց այս կը բաւէր
Նըրան վատ բաներ մտածել տալու։

Էմիլիա. Նախանձոտ մարդ չէ՞։
Դեզդ. Ո՞վ, նա՞. կարծեմ թէ իր երկրի արեւն,
Ամէն այդպիսի մաղձոտութիւններ քամել է նրանից։
Էմիլիա. Տեսէք, գալիս է։
Դեզդ. Ձեռք չեմ վերցնի մինչեւ Կասսիոյին յետ կանչել չը տամ։
— Ի՞նչպէս ես, տէրըս։
Օթելլո. Լաւ եմ, տիկինս։
Առանձին
Օ՜հ, ի՜նչ դժւար է կեղծաւորելը։
— Իսկ դու ի՞նչպէս ես, Դեզդեմոնա։
Դեզդ. Լաւ, բարի տէրըս։
Օթելլո. Ձեռքդ տուր տեսնեմ. այս ձեռքը, տիկին, շատ խոնաւ ձեռք է։
Դեզդ. Դեռ չէ պառաւել, դեռ ցաւ չէ տեսել։
Օթելլո. Սա ցոյց է տալիս տարփոտ բնութիւն, բաշխասէր մի սիրտ.
Տաք, տաք, եւ տամուկ. այս ձեռքիդ համար
Ազատութիւնը վնասակար բան է, մենացում է պէտք,
ծոմ, աղօթք. պատիժ, եւ ճգնութիւններ.
Այստեղ մի ջահիլ քրտնաթոր դեւ կայ,
Որ սովորաբար շւայտանում է։ Լաւ ձեռք է, բա՛ց ձեռք։
Դեզդ. Իրաւունք ունիս այդպէս ասելու.
Քանզի այդ ձեռքն էր որ սիրտըս տւաւ։
Օթելլո. Շատ առատ ձեռք է. հին ատեն սիրտն էր ձեռքի տուողը.
Բայց մեր հիմակւայ զինանշանը ձեռքն է, ոչ սիրտը։
Դեզդ. Ես այդ բաներից ոչինչ չը գիտեմ։
Տեսնե՜նք, խոստո՛ւմըդ։
Օթելլո. Ի՞նչ խոստում, ճուտիկ։
Դեզդ. Մարդ եմ ուղարկել Կասսիոն գայ այստեղ եւ խօսի քեզ հետ։
Օթելլո. Մի շատ խիստ հարբուխ նեղացնում է ինձ.
Թաշկինակդ տուր։
Դեզդ. Ահա, սիրելիս։
Օթելլո. Իմ ընծայածը։
Դեզդ. Մօտս չէ հիմա։
Օթելլո. Ի՞նչպէս, մօտդ չէ՞։

Դէզդ. Իրաւ ոչ, տէր իմ։
Օթելլո. Դա շատ վատ բան է։
Այդ թաշկինակը մի Եգիպտուհի տուել էր մօրըս.
Մի կախարդ կին էր, որ գիտէր կարդալ մարդկանց մտքերը.
Նա մօրս ասել էր, որքան որ պահէ այդ թաշկինակը՝
Դա սիրոյ հմայք կը բաշխէ նրան,
Եւ հօրըս սիրտը կապուած կը լինի նրա սիրովը.
Բայց եթէ կորցնէ, կամ ուրիշին տայ՝
Հայրըս կը սկսի զզուել նրանից,
Եւ նրա տենչը նոր հրապուրանքներ կը սկսի փնտռել։
Մայրըս մեռնելիս ինձ տուաւ, ասաց որ եթէ բախտը
Ինձ կին շնորհէ՝ ես էլ նրան տամ.
Այդպէս էլ արի. ուրեմն զգոյշ կաց.
Աչքիդ լոյսի պէս գուրգուրա վրան։
Եթէ կորցնես կամ ուրիշին տաս՝
Դա մի այնպիսի կորուստ կը լինի,
Որին ոչ մի բան չի հաւասարւի։
Դէզդ. Իրա՞ւ ես ասում։
Օթելլո. Հաւատացնում եմ. հիւսուածքի մէջը կախարդութիւն կայ.
Մի Սիբիլլուհի, որ երկու հարիւր արեւի շրջան
Հաշուել էր արդէն այս աշխարհի մէջ,
Մարգարէական իր մոլուցքի մէջ կերպասն է հիւսել,
Սրբազան որդներ մետաքսն են նիւթել,
Ներկը շինուած է մումիայի հիւթից,
Որ այն վհուկը կոյս աղջիկների սրտից էր մզել։
Դէզդ. Իրա՞ւ ես ասում։
Օթելլո. Իրաւ. ուրեմն տես որ լաւ պահես։
Դէզդ. Երանի երբէք տեսած չլինէի։
Օթելլո. Հը՞, ի՞նչու, ի՞նչ կայ։
Դէզդ. Ի՞նչու ես սարսած եւ վռազ խօսում։
Օթելլո. Կորե՞լ է, ասա, ձեռքիցդ ընկե՞լ է։
Դէզդ. Աստուա՛ծ փրկէ մեզ։
Օթելլո. Հը՞, ի՞նչ ես ասում։

Դէզդ. Ոչի՛նչ, չէ կորել. բայց դիցուք կորե՞լ։
Օթէլլօ. Ի՞նչպէս։
Դէզդ. Ասում եմ, չէ կորել։
Օթէլլօ. Գնա բեր տեսնեմ։
Դէզդ. Կարող եմ բերել, հիմա չեմ ուզում։
Այդ էլ մի խաղ է միջնորդութիւնըս մերժելու համար։
Խնդրում եմ թոյլ տուր որ Կասսիոն յետ գայ։
Օթէլլօ. Թաշկինակը բեր. սիրտըս վատ բան է նախազգուշակում։
Դէզդ. Լաւ, լաւ. Նըրա պէս ընդունակ մի մարդ երբէք չես գտնի։
Օթէլլօ. Թաշկինա՛կը։
Դէզդ. Կասսիոյից խօսիր, աղաչում եմ քեզ։
Օթէլլօ. Թաշկինա՛կը։
Դէզդ. Մի մարդ որ իր բախտն ամէն ժամանակ
Քո պաշտպանութեան վրայ է հիմնել,
Որ վտանգներիդ ընկերն է եղել...
Օթէլլօ. Թաշկինա՛կը։
Դէզդ. Ճիշդ, վատ ես անում։
Օթէլլօ. Կորի՛ր։

Դուրս է գնում։

Էմիլիա. Սա՞ չէ նախանձոտ։
Դէզդ. Երբէք այսպէս բան դեռ չէի տեսել։
Հաստատ, հըրաշք կայ թաշկինակի մէջ.
Սաստիկ դժբախտ եմ որ կորցըրել եմ։
Էմիլիա. Մէկ երկու տարում անկարելի է մարդկանց ճանաչել.
Նրանք բոլորն էլ ստամոքսներ են, իսկ մենք կերակուր.
Քանի քաղցած են՝ մեզ լաւ ուտում են,
Եւ երբ որ կուշտ են՝ մեզ յետ են փսխում։

Գալիս են Եագօն և Կասսիոն։

Եագօ. Ուրիշ ճար չը կայ. տիկինն է կարող.
Եւ տես, բախտ ունիս. գնա աղաչիր։
Դէզդ. Ի՞նչպէս ես, Կասսիօ. ի՞նչ նոր բան ունիս։
Կասս. Հին աղաչանքս է, տիկին. խնդրում եմ

Որ ձեր ազդեցիկ միջնորդութիւնով կեանք տաք ինձ նորէն,
Որ կրկին շահեմ այն մարդու սէրը,
Որին իմ սրտի բոլոր զօրութեամբ մեծարել եմ միշտ։
Էլ չեմ սպասի։ Եթէ մեղքս այնքան մահացու մեղք է,
Որ ոչ իմ անցեալ ծառայութիւնը, ոչ ներկայ վիշտըս,
Ոչ էլ ապագայ անձնուիրութեան մտադրութիւնըս
Չեն կարող այլ եւս յետ գընել կրկին նըրա շընորհը՝
Այդ իմանալն էլ շահ է ինձ համար,
Որով իմ բախտին համակերպուելով՝ այլ ճամբայ բռնեմ
Եւ շնորհ մուրամ իմ ճակատագրից։

Դեզդ. Աւա՛ղ, սիրե՛լի, սիրե՛լի Կասսիօ.
Ջատագովութիւնս անդաշն է դարձել.
Իմ ամուսինը ամուսինըս չէ.
Եթէ դէմքով էլ նա այնպէս փոխուէր ինչպէս բընոյթով՝
Նըրան տեսնելիս չէի ճանաչի։
Երնէկ թէ ինձ էլ ամէն սուրբ ոգի այնպէս թեւարկէր,
Ինչպէս քեզ համար ես բոլոր ուժով բարեխօսեցի,
Եւ թիրախ դարձայ նըրա բարկութեան իմ խիզախ խօսքով։
Մի քիչ համբերիր. ինչ որ կարող եմ, կ'անեմ քեզ համար,
Եւ շատ աւելի քան ինքս ինձ համար կը յանդգնէի.
Թող դա քեզ բաւէ։

Յագօ. Տէ՞րըս բարկանայ։

Էմիլիա. Հիմա դուրս գնաց, եւ անտարակոյս խիստ վրդովուած էր։

Յագօ. Կարելի՞ բան է որ նա բարկանայ. ինքըս տեսել եմ
Երբ թնդանօթը օդն էր թռցնում նըրա շարքերը,
Եւ, դեւի նման, կարծես թէ նըրա հէնց գրկի միջից
Ցրուեց սեփական նըրա եղբօրը. եւ նա՞ բարկանայ։
Պէտք է ուրեմըն մի մեծ բան լինի. գընամ նըրա մօտ.
Թէ բարկացած է՝ ուրեմըն բա՛ն կայ։

Դեզդ. Գընա, խնդրում եմ։

Յագօն դուրս է գնում։

Պէտք է պետական մի մեծ գործ լինի,
Կամ թէ Վենետիկում սարքըւած մի դաւ,

Այստեղ Կիպրոսում երևան գալով
Նրա ջինջ միտքը պղտորած լինի.
Եւ միշտ այսպիսի պարագաներում
Մարդիկ սովոր են մանրերը թափել փոքրերի գլխին,
Թէև մեծերը լինեն մեղաւոր.
Միշտ էլ այդպէս է. բաւ է որ մի քիչ մեր մատը ցաւի,
Եւ մեր միւս առողջ անդամներին էլ ցաւ կը հաղորդէ։
Չէ՛, թող գիտենանք, մարդիկ աստուած չեն,
Ոչ էլ նրանցից այնպիսի յարգանք և սէր սպասենք,
Որպէս վայել է հարս ու փեսային։
Պախարակիր ինձ, Էմիլիա, որ ես, վատ դատախազըս՝
Հոգուս մէջ նրան անսիրութեան մէջ զրպարտում էի,
Այն ինչ տեսնում եմ որ ես վկային կաշառել էի,
Եւ ի զուր էի նրան մեղադրում։

Էմիլիա. Տայ Աստուած որ լոկ պետական գործեր, ինչպէս կարծում էք,
Լինեն պատճառը, ոչ թէ մի կարծիք, նախանձի մի խօլք
Ձեզ վերաբերեալ։

Դէզդ. Աւա՜ղ, ես երբէք առիթ չեմ տուել։

Էմիլիա. Բայց խանդոտներին այդպիսի խօսքով չէք հանդարտացնի.
Պատճառից չէ որ խանդոտ են դառնում,
Հապա խանդոտ են, քանզի խանդոտ են.
Մի հրէշ է դա, ինքնին յղացած, իրենից ծնած։

Դէզդ. Աստուած հեռացնէ այդպիսի հրէշին անմեղ հոգուց։

Էմիլիա. Ամէ՛ն, տիկին։

Դէզդ. Գնամ նրա մօտ։
— Կասսիօ, դու այստեղ մի քիչ զբօսնիր,
Եթէ ես նրան տրամադիր տեսնեմ
Նորէն քո գործը մէջտեղ կը բերեմ,
Եւ վերջին ծիրըս գործի կը դնեմ որ յաջողեցնեմ։

Կասս. Շատ շնորհապարտ եմ Ձեր Ազնուութեան։

Դէզդեմոնան եւ Էմիլեան գնում են.

Գալիս է Բիանկան։

Բիանկա. Բարեւ քեզ, բարեւ, սիրելի Կասիո։
Կասս. Գործդ ի՞նչ է այստեղ։
Ի՞նչպէս ես, հոգիս, իմ սիրուն Բիանկա.
Ճիշդը, անուշիկ, քեզ էի գալիս։
Բիանկա. Ես էլ գնում էի քո բնակարանը.
Այս ի՞նչ է, Կասիո, մի՛ շաբաթ չը գալ, եօ՛թն օր ու գիշեր.
Ութը քսան ժամ եւ ութն էլ վրան.
Եւ սիրականից հեռու ժամերը՝
Ութը քսան անգամ դանդաղ են, քան թէ ժամացոյցի վրայ։
Տաղտկալի՜ հաշիւ։
Կասս. Ներիր ինձ, Բիանկա,
Բոլոր ժամանակ կապարէ հոգսեր ճնշել են հոգիս.
Բայց հիմա այնքան շարունակ կը գամ, որ տեղը լցնեմ։

Թաշկինակը տալիս է նրան։

Բիանկա. Ո՞րտեղից էր այս, Կասիո. անպատճառ մի յիշատակ է
Որ ստացել ես մի նոր սիրուհուց.
Ահա զգալի բացակայութեանդ պատճառն եմ զգում.
Բանն այստե՞ղ հասաւ։ Լաւ, լաւ։
Կասս. Թող, ա՛յ կին.
Նետիր այդ յիմար ենթադրութիւններդ այն դեւի գլխին,
Որ այդ բաները փչել է խելքիդ։ Նախանձո՞ւմ ես այժմ,
Թէ մի սիրուհի նուիրել է ինձ, մի յիշատա՞կ է.
Ոչ, հաւատա ինձ, սիրելի Բիանկա։
Բիանկա. Հապա ո՞ւմն է սա։
Կասս. Չը գիտեմ, հոգիս. սենեակումս գտայ։
Սրա բանուածքը ինձ դուր է գալիս.
Նախ քան յետ ուզեն—եւ հաստատ գիտեմ որ կը գան կ՚ուզեն—
Շատ կը ցանկայի օրինակել տամ։ Առ, օրինակիր.
Իսկ այժմ հեռացիր։
Բիանկա. Հեռանա՞մ, ի՞նչու։
Կասս. Զօրապետին եմ սպասում այստեղ.
Ինձ համար լաւ չէ, եւ չեմ կամենում

Որ նա ինձ այստեղ կնօջ հետ տեսնէ։

*Բիանքա.* Ի՞նչու, խնդրում եմ։

*Կասս.* Ոչ որովհետեւ չեմ սիրում ես քեզ։

*Բիանքա.* Բայց ինձ չես սիրում. խնդրեմ մի քիչ տեղ ընկերացիր ինձ։
Ասա, այս գիշեր շո՞ւտ կը գաս ինձ մօտ։

*Կասս.* Քի՛չ տեղ եմ կարող քեզ ընկերանալ.
Պէտք է հէնց այստեղ նրան սպասեմ. բայց շուտով կը գամ։

*Բիանքա.* Շատ լաւ, ի՞նչ անեմ. պէտք է յարմարւիմ հանգամանքներին։

գնում են։



## ԱՐԱՐՈՒԱԾ ՉՈՐՐՈՐԴ

—

### ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Կիպրոսում, Դղեակի առաջ:*

*Դուրս են Օթէլլօ եւ Եագօ:*

Եագօ. Ա՞յդպէս էք կարծում։
Օթէլլօ. Կարծո՞ւմ, Եագօ։
Եագօ. Ի՞նչ, գաղտնի համբո՞յր։
Օթէլլօ. Արգելուա՜ծ համբոյր։
Եագօ. Կամ մերկ, անկողնում, իր սիրածի հետ,
Մէկ ժամ, կամ աւել, առա՞նց վատ մտքի։
Օթէլլօ. Մերկ, անկողնի մէջ, առանց վատ մտքի՝
Նշանակում է սատանին խաբել։
Նրանք որ մաքուր ուզում են մնալ, բայց այդ էլ անել,
Սատանան նրանց առաքինութիւնն ուզում է փորձել,
Նրանք՝ երկինքին։
Եագօ. Թէ ոչինչ չանեն՝ ներելի մեղք է.
Բայց երբ կնոջս մի թաշկինակ տամ...
Օթէլլօ. Յետո՞յ։
Եագօ. Յետոյ այն, տէր իմ, որ դա նրանն է.
Ուրեմն իր ինչքը նա կարող է տալ ում որ կամենայ։
Օթէլլօ. Ի՞նչ խօսք. իր պատուի պաշտպանն էլ ինքն է.
Կարո՞ղ է միթէ ուրիշ մարդու տալ։
Եագօ. Պատիւ ասածը անտեսանելի մի էութիւն է.
Շատ մարդիկ ունին, եւ սակայն չունին։

Բայց թաշկինակը ...
Օթելլո. Երկինքն է վկայ, երանի թէ ես մոռացած լինէի.
Դու ասում էիր — Օ՜հ, դա ճախրում է իմ մտքի վրայ
Ինչպէս ագռաւը մի վարակուած տան կտուրի վրայ՝
Իբրեւ բօթաբեր ամէնքի համար —
Դու ասում էիր որ թաշկինակըս նրա ձեռքի՞ն էր։
Յագո. Այո, յետոյ ի՞նչ։
Օթելլո. Դա շատ վատ բան է։
Յագո. Իսկ ի՞նչ կ'անէիք
Եթէ ասէի թէ ձեր կընոջ հետ տեսել եմ նրան,
Կամ թէ ասում էր ... քանի որ այնպէս սրիկաներ կան,
Որոնք հէնց իրե՛նց հետապնդումով,
Կամ մի սիրուհու խնդրանկամ տենչով,
Կանանց խաբելուց կամ թէ գոհացում բաշխելուց յետոյ՝
Անկարելի է որ չը պարծենան։
Օթելլո. Մի բա՞ն է պատմել։
Յագո. Այո, պատմել է. բայց վստահ եղէք,
Ինչ որ ասել է, կ'երդուի որ սուտ է։
Օթելլո. Եւ ի՞նչ է ասել։
Յագո. Թէ նա ... չը գիտեմ ... ինչեր է արել։
Օթելլո. Ի՞նչ, ի՞նչ։
Յագո. Պառկե՞լ է։
Օթելլո. Նրա՞ հետ։
Յագո. Հետը, կամ վրան, ինչպէս որ ուզէք։
Օթելլո. Հե՛տը, կամ վրա՛ն. հե՛տը պառկել, զարշելի՜ բան է. Թաշկինակը ... Թող խոստովանի ... Թաշկինակը ... Թող խոստովանի, եւ ապա կախուի։ Նախ կախուի, յետոյ խոստովանի։ Դողէրոց եմ բռնել։ Բնութիւնն իմ մէջ այս մռայլ կրքոտութեան չէր հասնի՝ եթէ մի ներքին ձայն չը խօսէր։ Բառերը չեն որ ինձ այսպէս ցնցում են. վա՜խ. քիթ, ականջ, շրթունք ... կարելի՞ բան է. խոստովանութի՞ւն, թաշկինա՞կ ... Օ՜հ, չա՜ր սատանայ։

Ընկնում է ջղաձգութեան մէջ։

Եագօ. Ներգործիր, դեղս. այսպէս են բռնում դիւրախաբներին.
Եւ շատ պատուական եւ մաքուր կանայք հէնց այս ձեւով է,
Որ թէեւ անմեղ՝ խայտառակւում են։
Հէյ, էհէյ, տէ՛ր իմ, էհէյ, ասում եմ, Օթէ՛լլօ, տէ՛ր իմ։

Գալիս է Կասսիօն։

Հը՞, ի՞նչ կայ, Կասսիօ։
Կասս. Ի՞նչ է պատահել։
Եագօ. Տէրըս ընկել է լուսնոտութեան մէջ.
Երկրորդ անգամն է, իսկ առաջինը երեկ պատահեց։
Կասս. Քունքերը շփիր։
Եագօ. Ո՛չ, դա լաւ բան չէ.
Պէտք է տագնապը հանդարտ անց կենայ.
Թէ ոչ, բերանը կը փրփրոտի, եւ հետզհետէ
Կ՚ընկնի վայրենի կատաղութեան մէջ.
Տես, շարժւում է. գնա մի րոպէ եւ հեռու կեցիր.
Այժմ ուշքի կը գայ. երբ նա դուրս գնայ՝
Մի մեծ բանի վրայ կը խօսեմ քեզ հետ։

Կասսիօն գնում է փողոց։

Ի՞նչպէս էք, տէր իմ, չը լինի՞ գլխից վիրաւորուել էք։
Օթէլլօ. Հա՛, ծաղրո՞ւմ ես ինձ։
Եագօ. Ե՞ս ձեզ ծաղրեմ. ոչ, երկինք վկայ։
Ձեր անբախտութեան տղամարդի պէս պէտք է դիմանաք։
Օթէլլօ. Կոտոշով մարդը հրէշ է, գազան է։
Եագօ. Եթէ այդպէս է՝ մեծ քաղաքներում գազաններ շատ կան,
Եւ շատ կիրթ հրէշներ։
Օթէլլօ. Եւ խոստովանե՞ց։
Եագօ. Իմ բարի տէրըս, տղամարդ եղէք.
Իմացէք, ամեն մօրուք ունեցող որ լծի տակ է,
Պէտք է ձեր կողքին իր լուծը քաշէ։
Միլիոն մարդիկ կան այսօր կենդանի,
Որ ամեն գիշեր պառկում են իրենց պիղծ անկողնի մէջ,
Եւ երդւում կ՚անեն որ դա իրենց է միայն սեփական։

Դեռ ձեր վիճակը նրանցից լաւ է.
Օ՜հ դժոխայի՛ն չարախնդութիւն,
Օ՜հ, չար սատանի գերագո՜յն հեգնանք,
Մի պոռնիկ գգուել անհոգ անկողնում,
Եւ առաքինի համարել նրան։
Ոչ, թող գիտենամ, եւ գիտենալով իմ ի՛նչ լինելը՝
Կ՚իմանամ թէ նա ի՛նչ պէտք է լինի։

Օթէլլօ. Խելօք մարդ ես դու, տարակոյս չը կայ։

Եագօ. Դուք հեռու գնացէք մի քանի րոպէ,
Եւ համբերութեամբ բաւականացէք ականջ դընելով։
Երբ որ քիչ առաջ դուք այստեղ վշտից ընկճուել էիք՝
— Եւ ձեզ պէս մարդուն այդպիսի կիրքը անվայել բան է —
Կասիօն ներս եկաւ. ես նրան հեռացրի,
Եւ ձեր ուշաթափ լինելու մասին մի բան հնարեցի.
Յետոյ խնդրեցի որ շուտով յետ գայ ինձ հետ խօսելու.
Նա էլ խոստացաւ։ Դուք մի տեղ մտէք, եւ մտիկ տուէք
Ի՛նչ ծաղր, ի՛նչ ծանակ եւ ի՛նչ ակնյայտ արհամարհանք կայ
Նրա երեսի ամէն գծի վրայ։
Ես այնպէս կ՚անեմ որ նորէն ամբողջ պատմութիւնն ասէ.
Թէ ու՛ր, եւ ի՛նչպէս, քանի՛ օր առաջ եւ քանի՛ անգամ
Նա ձեր կնոջ հետ պառկել է արդէն եւ պառկելու է.
Տեսէք, ասում եմ, նրա ձեւերը։ Բա՜հ, համբերութի՜ւն.
Եթէ ոչ կ՚ասեմ դուք գլխով ոտքով մաղձ էք, ոչ թէ մարդ։

Օթէլլօ. Լսիր ինձ, Եագօ. համբերութեան մէջ խորամանկ կլինեմ.
Բայց, հասկանո՞ւմ ես, սաստիկ արիւնռուշտ։

Եագօ. Լաւ, վնաս չունի.
Բայց ամէն մի բան իր ժամանակին. քաշուեցէք մէկդի։

Օթէլլօն թագնւում է։

Հիմա Կասիօյին Բիանքայի մասին հարցումներ կ՚անեմ.
Անառակ մի կին, որ հաց ու հագուստ ճարելու համար
Տարփանք է ծախում. մի խեղճ արարած,
Որ խենթանում է Կասիօյի վրայ։

Այդ կանանց բախտն է շատերին խաբել եւ մէկից խաբուիլ.
Կասսիօն, երբ նրա անունն են տալիս,
Ուշքից գնում է։ Ահա գալիս է։

(Կասսիօն գալիս է։)

Բաւ է սա ժպտայ, Մաւրը կը գժուի,
Եւ նրա յիմար խանդոտութիւնը
Պէտք է Կասսիոյի քմծիծաղներին, թեթեւ ձեւերին
Թիւր մեկնութիւն տայ։ — Հիմա ի՞նչպէս էք, տեղակալ։

Կասս. Է՛լ աւելի վատ, երբ ինձ կանչում ես հէնց այն տիտղոսով,
Որից զրկուելը մահ է ինձ համար։

Յագօ. Հոգ չէ, խնդրեցէք Դեզդեմոնային, եւ նա կը շնորհէ։

(Ցած ձայնով)

Եթէ Բիանքայից կախուած լինէր դա՝
Ի՜նչ շուտ ձեր գործը կարգի կը դրուէր։

Կասս. (Ծիծաղելով) Խեղճ ողորմելի։

Օթէլլօ. Հա՛, ինչպէս արդէն քահքահ է անում։

Յագօ. Մի կին չեմ տեսել որ մարդու վրայ այդքան խենթանայ։

Կասս. Խեղճիկ. կարծեմ թէ սիրում է նա ինձ։

Օթէլլօ. Հաղիւ է հերքում, եւ ծիծաղում է։

Յագօ. Լսեցէք, Կասսիօ։

Օթէլլօ. Հիմա ստիպում է որ նորէն պատմէ. այդպէս, լաւ, շատ լաւ։

Յագօ. Լուր է տարածում որպէս թէ նրան առնել էք ուզում։
Իրա՞ւ միտք ունիք։

Կասս. Հա՛, հա՛, հա՛։

Օթէլլօ. Յաղթանակո՞ւմ ես, Հռովմայեցի՛, յաղթանակո՞ւմ ես։

Կասս. Ե՞ս նրան առնեմ, ի՞նչ, մի հասարակաց կնոջ հետ ամուսնանա՞մ. ի սէր Աստուծոյ, գթա իմ խելքիս. այնքան էլ ցնդած մի՛ կարծիր ինձ. հա՛, հա՛, հա՛։

Օթէլլօ. Այո, այո, այո. շահողը միշտ կը ծիծաղի։

Յագօ. Ազնի՛ւ խօսք, լուր է տարածուած թէ դուք նրա հետ ամուսնանում էք։

Կասս. Ճիշդն ասա, խնդրեմ։

Յագօ. Անազնիւ մարդ եմ, եթէ սուտ ասեմ։
Օթելլօ. Ուրեմն ինձ խարանե՞լ էք։ Լաւ։
Կասս. Այդ կապիկն ինքը տարածած կը լինի. համոզուած է որ ես նրա հետ ամուսնանալու եմ. իր ինքնասիրութիւնից եւ ինքնահաւանութիւնիցն է այդպէս կարծել, ոչ թէ ես եմ մի բան խոստացել։ 133
Օթելլօ. Յագօն ինձ նշան է անում. հիմա կը սկսի պատմել։
Կասս. Հէնց հիմա այստեղ էր. ամեն տեղ վազ է տալիս ետեւիցս։ Անցեալ օր ծովեզերքում մի քանի Վենետիկցիների հետ խօսում էի, մէկ էլ տեսնեմ տիկինիկը եկաւ, եւ, ձեռքս վկա՜յ, փաթաթուեց վզիս, այսպէս... 138
Օթելլօ. Ճչալով “Օ՜հ իմ սիրելի Կասսիօ„. շարժումը այդ է նշանակում։
Կասս. Այսպէս կախ ընկաւ վզիցս, թեք ընկաւ վրաս եւ սկսաւ լաց լինել, ինձ քաշ տալ, հրել. հա՜, հա՜, հա՜։
Օթելլօ. Հիմա պատմում է թէ ինչպէս նրան քաշ տուաւ տարաւ իմ սենեակը։ Օ՜հ, այդ քիթդ տեսնում եմ, բայց դեռ չը գիտեմ թէ որ շան առաջն եմ նետելու։
Կասս. Այո, պէտք է հեռանամ այդ կնոջից։ 145
Յագօ. Ահա, գալիս է։
Կասս. Իսկ որ ժանտակուզ, միայն անուշահոտը։

Գալիս է Բիանկան։

Ի՞նչ ես ուզում այսպէս ետեւիցս ընկնելով։ 148
Բիանքա. Սատանան եւ իր մայրն ընկնե՜ն քո ետեւից, ի՞նչ էիր ուզում ասել այս թաշկինակն ինձ տալով։ Ես ի՜նչ յիմարն էի որ ընդունեցի։ Ի՞նչ է, նստեմ բանուածքը քեզ համար օրինակե՞մ. ի՜նչ լաւ էլ հնարել ես, որպէս թէ սենեակումդ ես գտել, եւ չը գիտես թէ ո՛վ է այնտեղ թողել։ Անպատճառ մի շան աղջիկ քեզ նուիրած կը լինի. եւ ես բանուածքն օրինակե՞մ։ Վեր առ, տար տուր աչքիդ լոյսին։ Որտեղից էլ ձեռք բերած լինես՝ ես օրինակողը չեմ։ 156
Կասս. Ի՞նչ խօսք է, անուշիկ Բիանքա, ի՞նչ խօսք է։
Օթելլօ. Երկինքը վկա՜յ, հէնց իմ թաշկինակս պէտք է լինի։

Բիանքա. Եթէ այս գիշեր կը գաս ընթրիքի, եկ. եթէ չես ուզում գալ, եկ երբ որ կ'ուզես։

գնում է դուրս։

Եագօ. Վազէք ետեւից, վազէք։

Կասս. Այո, պէտք է ետեւից գնամ. թէ ոչ՝ փողոցում կը խայտառակէ ինձ։

Եագօ. Ընթրիքին նրա մօտ կը լինէ՞ք։

Կասս. Այո, այդպէս է միտքս։

Եագօ. Լաւ, կարելի է կը հանդիպեմ ձեզ. բան ունիմ ասելու։

Կասս. Եկ խնդրեմ. կը գա՞ս։

Եագօ. Այո, գնացէք, մի՛ խօսէք։

Կասսիօն դուրս է գնում։

Օթելլօ. (Առաջ գալով) Ի՞նչպէս սպանեմ նրան, Եագօ։

Եագօ. Տեսա՞ք ինչպէս էր ծիծաղում իր լրբութեան վրայ։

Օթելլօ. Օ՜հ, Եագօ։

Եագօ. Թաշկինակն էլ տեսա՞ք։

Օթելլօ. Իմն էր։

Եագօ. Ձերն էր, այս ձեռքս վկայ. եւ տեսնե՜լ թէ ինչպէս է գնահատում ձեր այն յիմար կնոջը. նա տուել է Կասսիօյին, եւ Կասսիօն՝ իր պոռնիկին։

Օթելլօ. Ա՜խ, ինը տարի շարունակ խողխողէի՜ այդ թշւառականին։ Ի՜նչ հրաշալի կին, ի՜նչ գեղեցիկ կին, ի՜նչ անուշիկ կին։

Եագօ. Դէ լա՛ւ, այդ բոլորը պէտք է մոռանաք։

Օթելլօ. Այո, թող փտի ու փչանայ. պէտք է ա՛յս գիշեր սատանի բաժին դառնայ. չը պէտք է ապրի, չէ՛. սիրտս քար է կտրել. երբ ձեռքով զարկում եմ՝ ձեռքս ցաւում է։ Օ՜հ, ամբողջ աշխարհը նրա նման անուշիկ էակ չունի.. նա արժանի էր մի կայսեր կողքին թիկն տալու եւ նրան հրաման անելու։

Եագօ. Բայց ուրիշ կողմ էք գնում։

Օթելլօ. Գետինը մտնի. ասում եմ թէ նա ի՜նչ բան է. ի՜նչ նուրբ ձեռք ասեղնագործութեան մէջ, ի՜նչ զմայլելի նուա-

գող, ո՜հ, նա իր երգով արջին էլ կարող է մեղմացնել. ի՜նչ բարձր ու հարուստ իմացականութիւն, ի՜նչ երեւակայութիւն։

**Յագօ.** Է՜լ աւելի վատ։

**Օթէլլօ.** Այո, հազար, հազար անգամ. եւ յետոյ՝ այնպէս հեզահամբոյր բնաւորութիւն։

**Յագօ.** Այո, շա՜տ հեզահամբոյր։

**Օթէլլօ.** Իսկապէս. բայց եւ այնպէս՝ ափսո՜ս, Յագօ, ափսո՜ս. ո՜հ, Յագօ, ափսո՜ս։

**Յագօ.** Հիմա որ այդքան սքանչացած էք նրա նենգութեան վրայ՝ լա՛ւ, լիազօրութիւն տուէք նրան որ իր ուզածն անէ։ Եթէ դա ձեզ վնաս չէ տալիս՝ ոչ ոքի վնաս չէ տալիս։

**Օթէլլօ.** Կը փրթեմ նրան. ի՛նձ խայտառակել։

**Յագօ.** Գարշելի բան է։

**Օթէլլօ.** Այն էլ իմ սպայի հետ։

**Յագօ.** Աւելի գարշելի։

**Օթէլլօ.** Մի քիչ թոյն գտիր ինձ համար, Յագօ. այս գիշեր։ Չեմ ուզում հետը խօսքի բռնուիլ. մի գուցէ նրա մարմինը եւ գեղեցկութիւնը միտքս խախտեն։ Հէնց այս գիշեր, Յագօ։

**Յագօ.** Թոյնով մի անէք, անկողնումը խեղդեցէք, հէնց այն անկողնում որ նա պղծել է։

**Օթէլլօ.** Լաւ, լաւ ասացիր. դրա արդարութիւնը ինձ դուր է գալիս. շատ լաւ։

**Յագօ.** Իսկ ինչ Կասսիոյին է վերաբերում՝ նրա գործը ինձ թողէք. կէս գիշերին լուրը կը լսէք։

**Օթէլլօ.** Շա՜տ լաւ. (Փողերի ձայն ներսից.) Այս ի՞նչ փողահարութիւն է։

**Յագօ.** Պէտք է Վենետիկից եկող լինի, անշո՛ւշտ։ Լոդովիկոն է, Դուքսի կողմից եկած. նայեցէք, ձեր կինն էլ հետն է։

Գալիս են Լոդովիկօ, Դեզդեմոնա եւ Սպասաւորներ։

**Լոդով.** Աստուած պահէ ձեզ, յարգոյ զօրապետ։

**Օթէլլօ.** Ողջոյն ձեզ, տէր իմ։

Լոդով. Դուքսը եւ բոլոր Սէնատորները ողջունում են ձեզ։

Տալիս է մի թուղթ։

Օթէլլօ. Ես համբուրում եմ նրանց շնորհի այս հաղորդիչը։

Բաց է անում թուղթը եւ կարդում։

Դէզդ. Ի՞նչ նոր լուր ունիք, սիրելի Լոդովիկ։
Եագօ. Սինիօր, ուրախ եմ ձեզ հանդիպելուս, ձեզ գալուստ բարի։
Լոդով. Շնորհակալ եմ. ի՞նչպէս է արդեօք տեղակալ Կասսիօն։
Եագօ. Ապրում է, տէր իմ։
Դէզդ. Ա՜հ, սինիօր, նրա եւ ամուսնուս մէջ մի գժտութիւն կայ,
Բայց դուք բոլորը կարգի կը դնէք։
Օթէլլօ. Ա՞յդքան վստահ ես։
Դէզդ. Տէր իմ։
Օթէլլօ. (կարդում է) "Անպատճառ արէք այս բանը, եթէ...„
Լոդով. Ձեզ հետ չէր, տիկին. նամակն էր կարդում։
Ի՞նչ, զօրապետի եւ Կասսիօյի մէջ բա՞ն է պատահել։
Դէզդ. Շատ ցաւալի բան. շատ բան կը տայի որ հաշտեցնէի՝
Այնքան որ Կասսիօն սիրելի է ինձ։
Օթէլլօ. Կրակ ու ծծո՜ւմբ։
Դէզդ. Տէր իմ։
Օթէլլօ. Գժուե՞լ ես։
Դէզդ. Բարկացա՞ւ, ի՞նչ է։
Լոդով. Գուցէ նամակը նրան վրդովեց.
Կարծեմ թէ նրան հրահանգ է տուած Վենետիկ դառնալ՝
Կասսիօյին իր տեղ նշանակելով իբրեւ կուսակալ։
Դէզդ. Ճի՞շդ. շատ ուրախ եմ։
Օթէլլօ. Իրա՞ւ,
Դէզդ. Ի՞նչ, տէր իմ։
Օթէլլօ. Ուրախ եմ որ քեզ գժուած եմ տեսնում։
Դէզդ. Ինչո՞ւ, սիրելիս։
Օթէլլօ. Դե՜ւ։

Զարկում է Դէզդէմոնային։

Դէզդ. Այսպիսի բանի արժանի չէի։

Լոդով. Տէր իմ, Վենետիկում ոչ ոք չը պիտի հաւատար սորան,
Թէկուզ երդուէի որ ինքս եմ տեսել. դա չափից անց է.
Ներում խնդրեցէք. նա լաց է լինում։

Օթէլլօ. Դեւ, դեւ, դեւ.
Երկրի արգանդը եթէ յղանար կնոջ արցունքից՝
Ամեն կաթիլից մի կոկորդիլոս կը ծնուէր։ Կորի՛ր,
Կորիր իմ աչքից։

Դէզդ. Չեմ կենայ՝ երբ դա անախորժ է ձեզ։

Ուզում է գնալ։

Լոդով. Ի՜նչ հնազանդ կին է. աղաչում եմ ես Ձերդ Յարգութեան,
Յետ կանչէք նրան։

Օթէլլօ. Տիկին։

Դէզդ. Տէր իմ։

Օթէլլօ. Ի՞նչ էք կամենում նրանից, տէր իմ։

Լոդով. Ո՞վ, ե՞ս, զօրապետ։

Օթէլլօ. Այո, ուզեցիք նրան յետ կանչեմ։
Նա լաւ կարող է դառնալ, յետ դառնալ, եւ նորէն գնալ,
Եւ նորէն դառնալ. եւ կարող է լալ, տէր իմ, այո, լալ.
Եւ շատ հնազանդ է, ինչպէս ասացիք, հնազանդ, շա՜տ հնազանդ։
— Շարունակիր լալ։ — Գալով այս խնդրին, սիրելի տէր իմ,
— Ի՜նչ լաւ նկարուած վշտահարութիւն —
Ինձ յետ են կանչել։ — Գնա, քիչ յետոյ քեզ կանչել կը տամ։
— Տէր իմ, հնազանդ եմ այս հրամանագրին,
Եւ շուտ Վենետիկ կը վերադառնամ։ — Հա՛յդէ, դո՜ւրս կորիր։

Դէզդեմոնան դուրս է գնում։

Կասսիոն կը մնայ իմ պաշտօնի մէջ։
Եւ շնորհ արէք, տէր իմ, այս գիշեր ինձ հետ ընթրելու։
Բարով էք եկել Կիպրոս, ազնիւ տէր։
— Այծե՜ր, կապիկնե՜ր . . .

Դուրս է գնում։

Լոդով. Սա՞ է ուրեմըն այն ազնիւ Մաւրը,
Որին ողջ Սէնատն ամենակարող մարդն է անուանում.

Սա՞ է այն հոգին, որին ոչ մի կիրք չէ կարող ցնցել,
Որի ամրակուռ առաքինութիւնը
Դիպուածի նետից կամ բախտի սլաքից
Ոչ խաղխղուել է եւ ոչ թափանցուել։

Եագօ. Սաստիկ փոխուել է։

Լոդով. Խելքը գլխի՞ն է. չէ՞ ցնդել արդեօք։

Եագօ. Այն է, ինչ որ կայ. չը պէտք է յայտնեմ իմ գաղափարը։
Ինչ պէտք է լինէր — եթէ նա այն չէ, որ պէտք է լինէր —
Տա՜յ Աստուած՝ լինէր։

Լոդով. Իր կնո՞ջը զարկել։

Եագօ. Ճիշդ է, լաւ բան չէր. բայց երանի թէ հաստատ լինէի,
Որ այդ զարկելը ամենէն վատն էր։

Լոդով. Սովորութի՞ւնն է,
Թէ այս նամակը այսպէս բորբոքեց նրա արիւնը,
Եւ նոր ստեղծեց այս թերութիւնը։

Եագօ. Աւա՜ղ, ի՞նչ ասեմ.
Պարկեշտութիւն չէ իմ կողմից՝ յայտնել թէ ինչե՛ր գիտեմ,
Ինչե՛ր եմ տեսել։ Ինքներդ նրան շուտով կը տեսնէք,
Եւ նրա վարքը նրան այնպէս լաւ կը ներկայացնէ,
Որ իմ ասելուն կարիք չի մնայ։ Ետեւից գնացէք,
Եւ տեսէք ինչպէս կը շարունակէ։

Լոդով. Շատ ցաւալի է որ նրա մասին յուսախաբ եղայ։

Դուրս են գնում։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի սենեակ դղեակում:*

*Գալիս են Օթէլլօ եւ Էմիլիա:*

*Օթէլլօ.* Ոչինչ չե՞ս տեսել ուրեմն։
*Էմիլիա.* Ոչինչ,
Եւ ոչ էլ լսել, ոչ էլ կասկածել։
*Օթէլլօ.* Այո, տեսել ես նրան Կասսիօյի հետ։
*Էմիլիա.* Բայց ես դրա մէջ վատ բան չեմ տեսել,
Եւ ամեն մի վանկ որ շունչը նրանց մէջ փոխանակել է
Ես էլ լսել եմ։
*Օթէլլօ.* Եւ երբէք նրանք չե՞ն փսփսացել։
*Էմիլիա.* Երբէ՛ք։
*Օթէլլօ.* Եւ իրենց մօտից քեզ չե՞ն հեռացրել։
*Էմիլիա.* Երբէ՛ք։
*Օթէլլօ.* Հովանոց, ձեռնոց, դիմակ կամ այլ բան բերելո՞ւ համար։
*Էմիլիա.* Երբէ՛ք, տէր իմ։
*Օթէլլօ.* Զարմանալի է։
*Էմիլիա.* Պատրաստ եմ երդուել, տէր իմ, որ ձեր կինն առաքինի է.
Հոգիս գրաւ կը տամ. եթէ դուք ուրիշ գաղափար ունիք,
Հեռացրէք ձեզնից. դա պատրում է ձեզ.
Եթէ մի սրիկայ այդպիսի կարծիք ձեր գլուխն է խոթել՝
Թող Աստուած նրան օձի անէծքով փոխարէնն անէ։
Եթէ նա պարկեշտ, եւ հաւատարիմ, եւ մաքուր կին չէ՝
Ուրեմն աշխարհում ոչ մի երջանիկ ամուսին չը կայ,
Եւ նրանց կանանց ամենէն սուրբը
Աղտոտ է ինչպէս զրպարտութիւնը։
*Օթէլլօ.* Գնա ասա գայ։

Էմիլիան գնում է դուրս։

Շատ թունդ է խօսում.
Բայց ո՞ր կաւատն է որ այսպէս չասէ. խորամանկ բոզ է.
Փակուած ու կողպած մի պահարան է գարշ գաղտնիքների.

Եւ այնու հանդերձ նա ծունկ կը չոքէ եւ աղօթք կ'անէ.
Ինքըս տեսել եմ։

Գալիս են Դեզդեմոնա եւ Էմիլիա։

Դեզդ. Ի՞նչ էք կամենում, տէր իմ։
Օթելլօ. Եկ այստեղ, ճուտիկ։
Դեզդ. Ի՞նչ էք ցանկանում։
Օթելլօ. Աչքերըդ տեսնեմ. նայիր երեսիս։
Դեզդ. Ի՞նչ սարսափելի մի քմայք է դա։
Օթելլօ. (Էմիլիային) Պաշտօնի՛դ, տիկին.
Թող զուգուողները առանձին մնան, եւ դուռը փակիր.
Թէ մարդ գայ՝ հազա, կամ թէ հը՛մ արա.
Արհեստըդ գործ դիր, արհեստըդ, դէ՛հ, շո՛ւտ։

Էմիլիան դուրս է գնում։

Դեզդ. Ոտքերդ ընկնեմ, ասա՛, ի՞նչ է այդ խօսքերիդ միտքը.
Ես հասկանում եմ բառերիդ միջի կատաղութիւնը,
Բայց ոչ բառերը։
Օթելլօ. Հա՛, հա՛, դու ի՞նչ ես։
Դեզդ. Քո կինը, տէր իմ, քո հաւատարիմ եւ անկեղծ կինը։
Օթելլօ. Հա՛, երդում արա, եւ դժոխք գնա.
Թէ ոչ, երկնքի բնակիչներին այնքան նման ես,
Որ դեւերն էլ քեզ կը վախենան բռնել.
Ուրեմն երկպատիկ մեղապարտ դարձիր,
Երդուելով թէ դու առաքինի ես։
Դեզդ. Աստուա՛ծ լաւ գիտէ։
Օթելլօ. Աստուած լաւ գիտէ որ այնպէս կեղծ ես, ինչպէս դժոխքը։
Դեզդ. Դէպի ո՞ւմ, տէր իմ. ո՞ւմ հետ, ի՞նչպէս կեղծ։
Օթելլօ. Ա՜հ, Դեզդեմոնա. կորի՛ր, կորի՛ր, կորի՛ր։
Դեզդ. Վա՜յ իմ սեւ օրիս, ինչո՞ւ ես լալիս.
Ե՞ս եմ պատճառը այս արտասուքիդ, սիրելի՛ տէրըս.
Եթէ պատահմամբ կասկածում ես դու
Թէ հօրըս գործն է քո յետ կանչուելըդ,
Ես ի՞նչ մեղք ունիմ. թէ հայրըս քո հետ թշնամացել է,

Նոյնպէս եւ ինձ հետ։
Օթէլլօ. Եթէ երկինքը ուզէր փորձել ինձ պատուհասներով,
Ամէն տեսակ ցաւ եւ անարգութիւն տեղար մերկ գլխիս,
Խորասուզէր ինձ մինչեւ շրթունքըս աղքատութեան մէջ,
Գերութեան տար ինձ, եւ վերջին յոյսըս պատրանք դարձընէր,
Դարձեալ իմ հոգու մի խորշիկի մէջ
Ես համբերութեան մի փոքրիկ կաթիլ գտած կլինէի.
Բայց վա՜յ, ինձ դարձնել մի անշարժ արձան,
Որ անարգանքի ամբողջ աշխարհը՝
Իր դանդաղաշարժ մատովը ցոյց տայ,
Լա՜ւ, ես դըրան էլ կը հանդուրժէի. այդ էլ լաւ, շատ լաւ.
Բայց այնտեղ, ուր սիրտս աւանդ եմ դրել,
Ուր պէտք է ապրեմ, կամ բընաւ չապրեմ,
Այն իսկ աղբիւրը, որից բղխում է կեանքիս հոսանքը,
Թէ ոչ, կը ցամքի, այնտեղի՞ց վանուիլ,
Կամ թէ պահել այն որպէս ջրամբար զազիր գորտերի,
Որ այնտեղ զուգւին եւ սերունդ բերեն.
Գունատուիր այստեղ, ո՛վ համբերութիւն,
Ո՛վ դու վարդաշուրթ մատաղ քերովբէ,
Եւ մռայլ դարձիր ինչպէս դժոխքը։
Դէզդ. Յոյս ունիմ որ ինձ իմ ազնիւ տէրը պարկեշտ է կարծում։
Օթէլլօ. Հա՜, այո, ինչպէս ամառուայ ճանճերն սպանդանոցում,
Որ ձուից չելած զուգաւորւում են։ Ո՛վ դու վայրի խոտ,
Որ այնպէս սիրուն եւ սիրասուն ես,
Այնպէս քաղցրաբոյր, որ զգայարանքըն արբեցընում ես,
Երանի երբէք ծնուած չլինէիր։
Դէզդ. Աւա՜ղ, ի՞նչ անգէտ յանցանք եմ գործել։
Օթէլլօ. Այս մաքուր թուղթը, այս շքեղ գիրքը
Մի՞թէ շինուած էր որ վրան “բոզ„ գրեն.
Ինչ մեղք ես գործե՜լ. գործե՜լ. այ պոռնի՜կ, հասարակաց բո՜զ։
Թէ ասեմ միայն քո արածները՝
Ամէն մի թուշըս հնոց կը դառնայ,
Եւ մոխիր կ'անէ համեստութիւնը։

*Ի՞նչ մեղք ես գործե՞լ. երկինքը հոտից իր քիթն է խցում,*
*Լուսինն ամօթից իր աչքն է գոցում,*
*Եւ լկտի քամին, որ հանդիպողին համբոյր է տալիս,*
*Փախչում է երկրի քարայրների մէջ, որ չը լսէ այդ։*
*Ի՞նչ մեղք ես գործել, անամօթ պոռնիկ։*
Դէզդ. *Երկինքը վկա՜յ, զրպարտում ես ինձ։*
Օթէլլօ. *Դու բոզ չե՞ս։*
Դէզդ. *Երբէ՛ք, թէ քրիստոնեայ եմ։*
*Եթէ այս անօթն ամեն ապօրէն եւ պիղծ հպումից*
*Անարատ պահել իմ տիրոջ համար՝*
*Դա բոզ լինել չէ, ուրեմըն բոզ չեմ։*
Օթէլլօ. *Ի՞նչ, դու պոռնիկ չես։*
Դէզդ. *Ոչ, չը փրկուի՛մ։*
Օթէլլօ. *Կարելի՞ բան է։*
Դէզդ. *Փրկիր մեզ, երկի՛նք։*
Օթէլլօ. *Ուրեմըն քեզնից ներում եմ խնդրում,*
*Ես քեզ դրել եմ այն Վենետիկցի ճարպիկ բոզի տեղ,*
*Որ պսակուել է Օթէլլօյի հետ։*

**Ձայնը բարձրացնելով։**

*— Իսկ դո՛ւ, այ կնիկ, դու Սուրբ Պետրոսի ճիշդ հակառակը,*

**Գալիս է Էմիլիան։**

*Դո՛ւ, դո՛ւ. վերջացրինք մեր անելիքը.*
*Առ փող քո քաշած նեղութեան համար.*
*Բանալին շուռ տուր, եւ մեր գաղտնիքը լաւ ծածուկ պահիր։*

**Դուրս է գնում։**

Էմիլիա. *Վա՜յ մեզ, այս մարդը ի՛նչեր է կարծում։*
*Ի՞նչպէս էք, տիկին. աւա՜ղ, ի՞նչպէս էք, իմ բարի տիկին։*
Դէզդ. *Կէս քուն, կէս արթուն։*
Էմիլիա. *Սիրելի տիկին, ի՞նչ է պատահել տիրոջըս։*
Դէզդ. *Ո՞ւմը։*
Էմիլիա. *Տիրոջըս, տիկին։*
Դէզդ. *Ո՞վ է քո տէրը։*

Էմիլիա. Նա որ և ձերն է, անուշիկ տիկին։
Դեզդ. Ոչ, ես տէր չունիմ. մի՛ խօսիր ինձ հետ, Էմիլիա։
Ձեմ կարող գէթ լալ, և բացի լալուց պատասխան չունիմ.
Խնդրեմ, Էմիլիա, որ հարսանիքիս իմ սաւանները
Այս գիշեր քաշես անկողնիս վրայ. տես, չը մոռանաս.
Եւ գնա կանչիր ամուսնուդ այստեղ։
Էմիլիա. Ի՜նչ փոփոխութիւն։

Դուրս է գնում։

Դեզդ. Ցեղն է որ ինձ հետ այսպէս են վարւում, այո, շատ տեղն է,
Ի՞նչպէս եմ վարւել, որ ամուսինըս կարողացել է
Ամենաչնչին կասկածը գամել
Ամենափոքրիկ իմ սխալանքին։

Գալիս է Էմիլիան Եագոյի հետ։

Յագո. Ի՞նչ էք հրամայում, տիկին. ի՞նչպէս էք։
Դեզդ. Աւա՜ղ, ի՞նչ ասեմ.
Նրանք որ փոքրիկ երեխաներին ուզում են կրթել,
Այդ բանն անում են մեղմ միջոցներով, դիւրին դասերով.
Թող նա էլ ինձ հետ այդ ձևով վարւէր.
Եւ իրաւն ասած, երբ ինձ սաստում են, մանուկ եմ դառնում։
Յագո. Ի՞նչ է պատահել, ազնիւ տիրուհի։
Էմիլիա. Վա՜հ, Յագո, տէրըս նրան բոզ կանչեց,
Եւ գլխին այնպէս ծանր անարգանքներ և լուտանք թափեց,
Որ անմեղ սիրտը երբէք չի տանի։
Դեզդ. Ի՞նձ այդ անունը։
Յագո. Ի՞նչ անուն, տիկին։
Դեզդ. Այն որ կինդ ասաց որ տէրս ինձ տւաւ։
Էմիլիա. Բոզ կանչեց նրան. մի գռեհիկ գինով
Այդպիսի անուն չէր տայ իր քածին։
Յագո. Ու ինչո՞ւ համար։
Դեզդ. Չը գիտեմ. միայն՝ ես այնքան գիտեմ որ այդ բանը չեմ։
Յագո. Մի՛ լաք, տիրուհիս, մի՛ լաք. ի՜նչ փորձանք։
Էմիլիա. Սրա՞ համար էր որ մերժեց այնքան լաւ առաջարկներ,

Թողեց հայր, երկիր եւ բարեկամներ,
Որ պոռնի՞կ կոչուի. մարդ լաց չը լինի՞։
Դէզդ. Իմ չար բախտիցն է։
Եագո. Շատ ամօ՜թ նրան.
Ո՞ւրկից է խելքին այդ քամին փչել։
Դէզդ. Երկինքը գիտէ։
Էմիլիա. Թող կախուիմ՝ եթէ մի պիղծ սրիկայ,
Քսու, բանսարկու մի թշուառական
Մի երեսապաշտ, քծնող անզգամ,
Որեւ է պաշտօն շահելու համար՝
Այս զրպարտանքը սարքած չը լինի. կախուի՛մ, թէ ճիշդ չէ։
Եագո. Վա՜հ, այդպիսի մարդ չը կայ աշխարհում. կարելի բան չէ։
Դէզդ. Եթէ լինի էլ՝ թող Աստուած ների։
Էմիլիա. Չուա՛նը ների. դժոխքը ծամէ նրա կմախքը.
Ինչո՞ւ տիկնոջըս պոռնիկ անուն տան.
Ո՞վ է նրա հետ մտերիմ եղել.
Ո՞ւր, ե՞րբ, ի՞նչ ձեւով, ի՞նչ երեւոյթ կայ այդպիսի բանի։
Մի պիղծ սըրիկայ խաբել է Մաւրին,
Մի առաջնակարգ ստոր սըրիկայ, մի փնթի սրիկայ։
Օ՜հ, երկի՛նք, ի՞նչու այսպիսի կեղտոտ արարածներին
Չես խայտառակում, եւ ամեն ազնիւ մարդու ձեռքի մէջ
Մի մտրակ դընում, որ մերկ մտրակէ այդ թշուառներին
Երկրի մէկ ծայրից մինչեւ միւս ծայրը՝
Հէնց արեւելքից մինչեւ արեւմուտք։
Եագո. Այդպէս մի՛ գոռա. ձայնդ դուրս է գնում։
Էմիլիա. Թո՜ւհ դրանց վրայ. ճիշդ մի այդպիսի փուչ կենդանին էր,
Որ խելքիդ սատանն երես էր շինել,
Եւ քո մտքի մէջ իմ եւ Մաւրի վրայ կասկած էր ձգել։
Եագո. Դու խենթ ես, գնա՛։
Դէզդ. Օ՜հ, բարի՛ Եագօ,
Ի՞նչ պէտք է անեմ որ նրա սիրտը կրկին ձեռք բերեմ։
Ազնիւ բարեկամ, գնա նրա մօտ.
Երդւում եմ հէնց այս երկնքի լոյսով,

Չը գիտեմ ինչպէս բարկացրի նրան։ Չոքում եմ այստեղ.
Թէ երբ եւ իցէ նրա սիրոյ դէմ մեղանչած լինեմ,
Խօսքով, խորհրդով, ո՛ւր մնաց գործով.
Աչքերս, ականջըս, կամ թէ որեւ է զգայարանըս
Ուրիշ անձի վրայ հիացած լինի,
Եւ եթէ նրան այժմ էլ չեմ սիրում, եւ միշտ չեմ սիրել,
Եւ չեմ սիրելու մինչեւ յաւիտեան խանդակաթ սիրով,
Թէկուզ ինձ վանէ մուրացկանի պէս՝
Թող որ փրկութեան երես չը տեսնեմ։
Անսիրութիւնը շատ բան է կարող,
Եւ նա կարող է իր անսիրութեամբ կեանքըս կործանել,
Բայց երբէք իմ սէրն արատաւորել։
Չեմ կարող ասել, "պոռնիկ".
Զզւում եմ բառը արտասանելուց.
Բայց այն գործն անել, որ այդ տիտղոսին արժանի լինի,
Աշխարհի բոլոր ունայնութիւնների համագումարը
Ինձ չէր հրապուրի։

Եագօ. Խնդրեմ, մի՛ յուզւէք.
Տրամադրութիւնը տեղը չէ եղել.
Պետութեան գործից յուզուած է եղել,
Եւ ձեր վրայ է իր մաղձը թափել։

Դէզդ. Երնէկ այդ լինէր եւ ոչ ուրիշ բան։

Եագօ. Հէնց այդ է միայն, հաւատացէք ինձ։

Փողահարութիւն։

Ահա փողերը ճաշի են կանչում.
Վենետիկից եկած պաշտօնեաները մնում են ճաշի.
Գնացէք ներս, մի՛ լաք. բոլորը կ՚անցնի։

Դէզդէմոնան եւ Էմիլիան գնում են։

Գալիս է Ռոդրիգօն։

Եագօ. Ի՞նչ կայ, Ռոդրիգօ։

Ռոդր. Տեսնում եմ՝ ինձ հետ շիտակ չես վարւում։

Եագօ. Ինչպէս ոչ շիտակ։

Ռոդր. Ամեն օր մի բան ես հնարում եւ ինձ խաղացնում ես, Յագօ։ Հիմա տեսնում եմ որ ինձ աւելի արգելք ես դառնում ամեն պատեհութիւնից, քան թէ ամենափոքրիկ ձեռնտուութիւնն ես անում։ Վճռել եմ այլ եւս չը համբերել. ինչ էլ որ յիմարաբար մինչեւ հիմա տարել եմ, չեմ ուզում առանց աղմուկի բոլորը կուլ տալ։ 197

Յագօ. Ուզո՞ւմ ես լսել, Ռոդրիգօ։

Ռոդր. Բա՛հ, այդ խօսքերից շատ եմ լսել. քո ասածներիդ եւ արածներիդ մէջ ոչ մի խնամութիւն չը կայ։

Յագօ. Դու անիրաւ տեղն ես ինձ մեղադրում։

Ռոդր. Երբէք, այլ միայն իրաւունքով։ Բոլոր ունեցած չունեցածս ձեռքից տուել եմ։ Այնքան գոհարներ, որ դու ես ինձնից առել Դեզդեմոնային տալու համար, բաւական էին մի ուխտաւոր միանձնուհի գլխից հանելու։ Ամեն անգամ ասել ես որ նա ընդունեց, եւ փոխարէնը յոյսեր տուաւ, եւ խոստացաւ շուտով ուշադրութիւն անել եւ ծանօթանալ ինձ հետ. բայց այդ բոլորից ոչինչ չեմ տեսնում։ 208

Յագօ. Լաւ, շարունակիր, շատ լաւ։

Ռոդր. "Շատ լաւ, շարունակիր„. չեմ կարող շարունակել. մա՛րդ. շատ լաւ էլ չէ. ձեռքս վկայ, ասում եմ որ արածդ կեղտոտ բան է, եւ սկսում եմ հասկանալ որ ինձ ձեռք ես առել։

Յագօ. Շատ լաւ։ 213

Ռոդր. Քեզ ասում եմ որ շատ լաւ չէ։ Կը գնամ Դեզդեմոնային կ՚ասեմ ով լինելս. եթէ գոհարներս յետ կը տայ՝ ես էլ ձեռք կը քաշեմ, եւ ներողութիւն կը խնդրեմ ապօրինի հետապնդումիս համար. եթէ ոչ, լաւ իմացիր որ քեզնից հաշիւ եմ պահանջելու։

Յագօ. Ասելիքդ ասացի՞ր։ 219

Ռոդր. Այո, եւ ինչ որ ասացի, երդւում եմ որ կ՚անեմ։

Յագօ. Լաւ, հիմա տեսնում եմ որ ոգի կայ մէջդ, եւ այս րոպէից սկսում եմ աւելի լաւ գաղափար ունենալ քո մասին։ Ձեռքդ տուր, Ռոդրիգօ. իրաւունք ունիս ինձ յանդիմանելու. բայց եւ այնպէս, երդւում եմ, քո գործի մէջ բոլորովին

շիտակ եմ վարուել։ 225

Ռոդր. Չէ երեւում։

Եագօ. Ճիշդ է, չէ երեւում, եւ կասկածանքդ խելքի եւ դատողութեան հակառակ չէ. բայց լսիր, Ռոդրիգօ. եթէ իսկապէս քո մէջ կայ այն բանը, որ հիմա աւելի քան երբէք հաւատում եմ թէ կայ, այսինքն, կամք, քաջասրտութիւն, եւ արիութիւն, ցոյց տուր այս գիշեր. եւ եթէ վաղը գիշեր Դեզդեմոնային չը վայելես՝ ճամբայ դիր ինձ այս աշխարհից դաւաճանութեամբ, եւ թակարդ լարիր կեանքիս դէմ։

Ռոդր. Լաւ, ասա տեսնենք. խելքի գալո՞ւ բան է, լինելո՞ւ բան է թէ ոչ։ 235

Եագօ. Պարոն, Վենետիկից յատուկ պաշտօնեայ է եկել, որ Կասիօյին նշանակէ Օթելլօյի տեղ։

Ռոդր. Ճի՞շդ ես ասում. ուրեմն Օթելլօն եւ Դեզդեմոնան Վենետի՞կ են վերադառնում։ 239

Եագօ. Ոչ, Օթելլօն գնում է Մաւրիտանիա, եւ գեղեցիկ Դեզդեմոնային էլ տանում է իր հետ. միայն թէ մի բան պատահի որ նրան ստիպէ աւելի երկար մնալ այստեղ, եւ դրա միակ միջոցը՝ Կասիօյին մէջտեղից վերացնելն է։

Ռոդր. Ի՞նչ է նշանակում “մէջտեղից վերացնել„։ 244

Եագօ. Պարզ բան է, այնպէս անել որ նա չը կարողանայ Օթելլօյի տեղը բռնել. ուղեղը ցրուել։

Ռոդր. Եւ ուզում ես որ ես անեմ այդ բանը, չէ՞։

Եագօ. Այո, եթէ քաջութիւն ունիս շահդ եւ իրաւունքդ պաշտպանելու։ Կասիօն այս գիշեր մի պոռնիկի տանը ընթրիքի է գնալու. ես էլ գնալու եմ այնտեղ. նա դեռ անտեղեակ է թէ ի՛նչ մեծ բախտի եւ պատուի է արժանացել։ Եթէ մի տեղ թագնուիս եւ սպասես նրա դուրս գալուն — եւ ես այնպէս կը յարմարցնեմ որ այդ բանն ընկնի տասներկուսի եւ մէկի մէջտեղը — այն ժամանակ նրա գլխին ի՛նչ փորձանք որ ուզես կարող ես բերել։ Ես էլ հեռու չեմ լինի, քո օգնութեան կը գամ, եւ նա մեր երկուսի ձեռքից չի ազատուի։ Ի՞նչ ես շշմել ու կանգնել. եկ ինձ հետ գնանք.

Ես քեզ կ՚ապացուցեմ որ նրա մահը այնպէս անհրաժեշտ բան է մեզ համար, որ ինքդ քեզ պարտաւոր կը զգաս նրան անհետացնելու։ Ընթրիքի ժամն է վաղուց, եւ գիշերը անց է կենում. դէ՛հ, գործի՛։

Ռոդր. Դեռ լաւ համոզուած չեմ։

Եագօ. Կը համոզուիս։

*Դուրս են գնում։*

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Մի ուրիշ սրահ դղեակում:*

*Գալիս են Օթէլլօ, Լոդովիկօ, Դեզդեմոնա, Էմիլիա եւ Սպասաւորներ:*

Լոդով. Խնդրում եմ, տէր իմ, սրանից աւել նեղութիւն մի՛ կրէք։

Օթէլլօ. Օ, ներողութի՛ւն. մի քիչ քայլելը լաւ է ինձ համար։

Լոդով. Բարի գիշեր, տիկին. շնորհակալութիւն Ձեր Ազնուութեան։

Դէզդ. Ու բարի գալուստ Ձերդ Յարգութեան։

Օթէլլօ. Գալի՞ս էք, տէր իմ։ — Է՛յ, Դէզդէմոնա . . .

Դէզդ. Տէր իմ։

Օթէլլօ. Գնա եւ իսկոյն անկողին մտիր.
Ես մէկ րոպէից կը վերադառնամ։
Սպասուհուդ էլ արձակիր. արա ինչպէս ասում եմ։

Դէզդ. Լաւ, տէր իմ։

*Օթէլլօ, Լոդովիկօ եւ Սպասաւորները դուրս են գնում։*

Էմիլիա. Հիմա ի՞նչպէս է. հիմա աւելի հանդարտ է թւում։

Դէզդ. Ասաց թէ իսկոյն կը վերադառնայ։
Ինձ էլ պատուիրեց անկողին մտնեմ եւ քեզ արձակեմ։

Էմիլիա. Ու ինձ արձակէ՞ք։

Դէզդ. Այդպէս հրամայեց.

Ուրեմըն տուր ինձ գիշերազգեստըս, սիրելի Էմիլիա,
Եւ մնաս բարով. հիմա չը պէտք է նրան բարկացնենք։
Էմիլիա. Երնէկ թէ նրան տեսած չլինէիք։
Դէզդ. Այդպէս մի՛ ասիր. իմ սէրը նրան այնպէս փարած է,
Որ նոյնիսկ նրա կոշտութիւնները, պարսաւանքները,
Խոժոռումները — գնդասեղները դուրս քաշիր, խնդրեմ —
Ինձ համար հմայք եւ հրապոյր ունին։
Էմիլիա. Այն սաւանները քաշել եմ արդէն անկողնի վրայ։
Դէզդ. Բոլորը մէկ է։ Տէ՛ր Աստուած, ի՜նչպէս խոլ մտքեր ունինք։
Թէ քեզնից առաջ մեռնեմ, Էմիլիա,
Այն սաւաններից մէկի մէջ, խնդրեմ, պատանիր դու ինձ։
Էմիլիա. Վա՜յ, ի՞նչ խօսքեր են։
Դէզդ. Էմիլիա, մայրըս մի նաժիշտ ունէր Բարբարա անունով.
Խեղճը սիրում էր, եւ իր սիրածը շշորթ դուրս եկաւ,
Եւ նրան լքեց. մի ուռենու երգ գիտէր, մի հին բան,
Որ նրա բախտին յարմար էր գալիս.
Եւ նա այդ երգը երգելով մեռաւ.
Այդ երգն այս գիշեր մտքէս չէ ելնում.
Սիրտըս ուզում է որ գնամ նստեմ, գլուխըս թեք արած,
Եւ երգեմ այն խեղճ Բարբարայի պէս։ Շուտ արա, խնդրեմ։
Էմիլիա. Ուզո՞ւմ էք բերեմ գիշերազգեստը։
Դէզդ. Չէ, գնդասեղներն այստեղ դուրս քաշիր։
Այս Լոդովիկօն շնորհքով մարդ է։
Էմիլիա. Եւ շա՜տ գեղեցիկ։
Դէզդ. Լաւ խօսել գիտէ։
Էմիլիա. Վենետիկում մի տիկին եմ ճանաչում, որ բոբիկ ոտքով
Երուսաղէմ կ'երթար՝ եթէ կարողանար շրթունքը դիպցնել
նրա ստորին շրթունքին։
Դէզդ. (Երգելով)
Ուռի տակ խղճալին նստած է տրտմագին,
Երգեցէք դուք, կանանչ ուռենի,
Ձեռքը դրած իր կուրծքին, գլուխը կախ իր ծնկին.
Երգեցէք ուռենի՜, ուռենի՜:

Սառնորակ մի վտակ մրմնջում է կողքից,
Երգեցէք ուռենի, ուռենի.
Քարերն էլ փափկում են իր աղի արցունքից.
Սրանք դիր այնտեղ։
Երգեցէք, ուռենի, ուռենի։
Շտապիր խնդրեմ, նա շուտով կը գայ։
Այն դալար ուռենուց ինձ պսակ հիւսեցէք,
Թէեւ նա լքեց ինձ՝ մի՛ նորան բամբասէք։
Ոչ, հետեւեալ տունը այս չէ։ Սո՛ս, ո՞վ է դուռը զարկում։
Էմիլիա. Քամին է։
Դէզդ. (Երգում է)։
Ասացի դու կեղծ ես, ուրիշին սիրում ես.
Երգեցէք ուռենի, ուռենի.
Նա ասաց “Քեզ ի՞նչ փոյթ, ուրիշին կը սիրես„։
Ուրեմն գնա, բարի գիշեր. աչքերս քոր են գալիս. արդեօք լացի նշա՞ն է։
Էմիլիա. Ոչինչի նշան չէ։
Դէզդ. Այդպէս եմ լսել. Օ՜հ, այս մարդերը, մարդերը.
Ճի՞շդ, խղճիդ առաջ, ասա, Էմիլիա,
Կարծո՞ւմ ես իրաւ թէ կնիկներ կան,
Որոնք խաբում են այնպէս բիրտ կերպով ամուսիններին։
Էմիլիա. Կան, ի հարկէ կան։
Դէզդ. Իսկ դու կ՚անէի՞ր, թէկուզ աշխարհը քեզ պարգեւ տային։
Էմիլիա. Անշուշտ կ՚անէի. դուք չէի՞ք անի։
Դէզդ. Ոչ, երդւում եմ ես երկնքի լոյսով։
Էմիլիա. Երկնքի լոյսով ի՞նչու կ՚անէի. մթնում կ՚անէի։
Դէզդ. Իրա՞ւ կ՚անէիր՝ եթէ աշխարհը քեզ պարգեւ տային։
Էմիլիա. Ամբողջ աշխարհը ահագին բան է.
Շատ խոշոր գին է մի այդքան փոքրիկ յանցանքի համար։
Դէզդ. Չէ, հաստատ գիտեմ, դու չէիր անի։
Էմիլիա. Չէ, հաստատ գիտեմ, շատ լաւ կ՚անէի, եւ անելուց յետոյ՝ յետ կ՚անէի. պարզ բան է, մի մատանու համար, մի

քանի կանգուն կերպասի, մի շրջազգեստի, մի գլխարկի, կամ թէ այդ տեսակ մանր մունր բաների համար չէի անի. բայց ամբո՞ղջ աշխարհի համար։ Վա՜հ, ո՞վ է որ իր ամուսնին չը խաբէ՝ նրան թագաւոր դարձնելու համար։ Ես քաւարանին էլ կը յօժարուէի դրա համար։

Դէզդ. Անիծուած լինեմ՝ թէ այդպիսի մեղք գործեմ, թէկուզ ամբողջ աշխարհն էլ ինձ տան։

Էմիլիա. Բայց մեղքը աշխարհի միջումն է մեղք. եւ երբ աշխարհը ձեր նեղութեան փոխարէն ձեռք բերած լինէք՝ դա կը լինի մի մեղք ձեր սեփական աշխարհի մէջ, եւ դուք ինքներդ կարող էք իսկոյն մեղքը չքմեղել։

Դէզդ. Չեմ կարծում որ այդպիսի կին գոյութիւն ունենայ։

Էմիլիա. Մէկի տեղ տասը, եւ դեռ այնքան շատ,
Որ կը լցնէին հէնց այն աշխարհը որ ձեռք բերէին.
Բայց ես կարծում եմ որ եթէ կանայք ճամբից շեղւում են՝
Ամուսիններն են միայն մեղաւոր.
Կա՛մ իրենց պարտքը կատարելու մէջ դանդաղանում են,
Եւ կամ մեր գանձը տանում թափում են այլ գոգերի մէջ,
Կամ բռնկւում են յիմար նախանձից,
Եւ զրկում են մեզ ազատութիւնից, կամ ծեծում են մեզ,
Կամ չարութիւնից պակասեցնում են մեր օրածախսը։
Բա՜հ, ի՞նչ ասել է, մենք էլ մաղձ ունինք.
Թէեւ բարի ենք՝ բայց ոխ էլ ունինք.
Թող լաւ իմանան ամուսինները,
Որ իրենց կանայք, ճիշդ իրենց նման, զգացում ունին,
Նրանք էլ տեսնում եւ հոտոտում են,
Եւ քիմք էլ ունին թէ՛ քաղցրի համար եւ թէ՛ թթուի.
Ի՞նչ ասել է դա, որ թողնում են մեզ եւ նորին բռնում։
Զւարճութի՞ւն է. այո, կարծում եմ.
Ցանկութիւնի՞ց է դա ծնունդ առնում. այո, կարծում եմ,
Թուլութիւնի՞ց է այդ սխալանքը. այո, այդ էլ կայ.
Լաւ, մենք ցանկութիւն, զւարճութեան սէր, թուլութիւն չունի՞նք,

*Ինչպէս այրերը։ Թող ուրեմն նրանք լաւ վարուեն մեզ հետ,*
*Կամ գէթ իմանան, որ եթէ երբեք մենք վատ ենք անում,*
*Նրանց վատ վարքն է մեզ սովորեցնում։*

Դէզդ. *Գնա, բարի գիշեր. Թող ինձ երկինքը այնպիսի վարք տայ,*
*Որ ոչ թէ վատից ես էլ վատանամ,*
*Այլ վատը տեսնեմ, ինքըս լաւանամ։*

Գնում են։



# ԱՐԱՐՈՒԱԾ ՀԻՆԳԵՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Մի փողոց Կիպրոսում:*

*Գալիս են Յագօ եւ Ռոդրիգօ:*

Յագօ. *Եկ այստեղ, կանգնիր այս մոյթի ետեւ. նա իսկոյն կը գայ.*
*Պատուական սուրըդ դուրս քաշած պահիր, եւ թունդ ներս խրիր.*
*Շուտ, շուտ. մի՛ վախիր. ես էլ արմուկիդ կանգնած կը լինեմ.*
*Դա մեզ կը ստեղծէ, կամ կը կործանէ. յիշիր այդ բանը.*
*Եւ լարիր բոլոր վճռականութիւնդ։*

Ռոդր. *Ձեռքիս մօտ կանգնիր. գուցէ ես վրիպեմ։*

Յագօ. *Այստեղ եմ, կողքիդ. համարձակ եղիր, եւ լաւ դիրք բռնիր։*

*Հեռանում է։*

Ռոդր. *Այս գործն ինձ շատ էլ չէ ոգեւորում.*
*Թէեւ համոզիչ պատճառներ բերեց.*
*Բայց մի մարդու կեանքն ի՞նչ մի մեծ բան է.*
*Եկ, սուր. թող մեռնի։*

Յագօ. *Այնքան քորեցի այս նոր պալարը մինչեւ բորբոքուեց.*
*Կատաղում է այժմ. հիմա թէ Կասիօն սրան սպանէ,*
*Թէ սա Կասիօյին, թէ երկուսն իրար,*
*Որ ձեւն էլ լինի, շահ է ինձ համար։*
*Եթէ Ռոդրիգօն կենդանի մնայ՝*
*Ետ կը պահանջէ այնքան ոսկիներն ու գոհարները,*
*Որ ես կորզել եմ որպէս ընծաներ Դեզդեմոնային։*
*Ոչ, դա չի լինի։ Իսկ եթէ Կասիօն կենդանի մնայ՝*

Նրա կեանքի մէջ մի ամենօրեայ գեղեցկութիւն կայ,
Որ ինձ նրա մօտ տգեղացնում է։ Բացի դրանից՝
Մաւրը կարող է իմ ասածները յայտնել Կասսիոյին,
Եւ դա կարող է ինձ շատ թանկ նստել։
Ոչ, պէտք է մեռնի. թող լինի. ահա, իր ոտքի ձայնն է։

Գալիս է Կասսիոն։

Ռոդր. Հա՛, ճանաչում եմ իր ոտքի ձայնը։ Մեռի՛ր, սրրիկայ։

Յարձակւում է Կասսիոյի վրայ։

Կասս. Այդ զարկըդ տունըս քանդած կը լինէր՝
Եթէ իմ զրահը քո ենթադրածից ամուր չը լինէր.
Այժմ քոնը փորձենք։

Սուրը քաշում, եւ վիրաւորում է Ռոդրիգոյին։

Ռոդր. Օ՜հ, սպանեց ինձ։

Եագօն ետեւից գալիս է եւ Կասսիոյին ոտքից
վիրաւորում, եւ փախչում է։

Կասս. Ոտքըս. յաւիտեան հաշմանդամ դարձայ։
Ըհէ՜յ, օգնութի՛ւն, մարդասպանութի՛ւն, մարդասպանութի՛ւն։

Գալիս է Օթելլօն։

Օթելլօ. Կասսիոյի ձայնն է. Եագօն պահել է իր տուած խօսքը։
Ռոդր. Ես անազնի՛ւըս։
Օթելլօ. Ճի՛շդ որ այդպէս է։
Կասս. Ըհէ՜յ, օգնութիւն . . . ճրա՜գ . . . վիրաբո՜յժ։
Օթելլօ. Նա է։ Քա՜ջ Եագօ, պարկեշտ եւ ուղիղ,
Որ բարեկամիդ եղած զրկանքը այսպէս ազդում է
Քո ազնիւ սրտիդ։ Քեզնից դաս կ'առնեմ։
Գողտրիկ, սիրականդ ընկած է տապաստ,
Քո պիղծ օրհասն էլ գալիս է շտապ։ Գալիս եմ, պոռնիկ.
Ջնջւեցա՛ն սրտէս այն հմայքները, քո այն աչքե՛րը.
Լկտանքով պղծւած քո անկողինը
Լկտի արիւնով պէտք է շաղախւի։

Գնում է Օթելլօն։

Հեռուից գալիս են Լոդովիկօն եւ Գրացիանօն։

Կասս. Էհէ՜յ, օգնութի՜ւն, պահապան չըկա՞յ, մի անցորդ չըկա՞յ.
Մարդասպանութի՜ւն, մարդասպանութի՜ւն։
Գրաց. Պէտք է մի փորձանք պատահած լինի. ահաւո՛ր ձայն է։
Կասս. Օգնութի՜ւն։
Լոդով. Լսիր։
Ռոդր. Անզգա՛մ սրիկայ։
Լոդով. Մի քանի հոգու հեծեծանքներ են. ի՜նչ մութ գիշեր է։
Սրանք կարող են հնարքներ լինել.
Վտանգաւոր է ինքներըս մենակ ձայնի կողմ գնալ։
Ռոդր. Ոչ ոք չէ՞ գալիս, արիւնըս կ'երթայ մինչեւ որ մեռնեմ։
Լոդով. Սո՜ւս։

Գալիս է Եագօն՝ մի ճրագ ձեռքին։

Գրաց. Մի մարդ է գալիս, նայիր, շապիկով, ճրագով ու զէնքով։
Եագօ. Ո՞վ է, ի՞նչ ձայն է օգնութիւն կանչում։
Լոդով. Մենք չենք իմանում։
Կասս. Այստեղ եմ, այստեղ, ի սէր Աստուծոյ,
Հասէք օգնութեան։
Եագօ. Ի՞նչ է պատահել,
Գրաց. Ա՛հ. Օթելլօյի դրօշակիրն է սա, որչափ տեսնում եմ։
Լոդով. Այո, նա ինքն է. շատ սրտոտ մարդ է։
Եագօ. Ո՞վքեր էք այդտեղ այդպէս ողբագին օգնութեան կանչում։
Կասս. Եագօ՛, ա՜խ, ոտքե՜ս, սրիկաները տունըս քանդեցին.
Օգնութիւն տուր ինձ։
Եագօ. Վա՜յ ինձ, տեղակալ. ի՞նչ սրիկաներ։
Կասս. Կարծեմ թէ մէկը այս մօտերքումն է. չէ կարող փախչել։
Եագօ. Ա՜յ դաւաճաններ։

Լոդովիկօյին եւ Գրացիանօյին։

Ռոդր. Ո՞վքեր էք այդտեղ. օգնութեան եկէք։
Օ՜հ, օգնեցէք ինձ։
Կասս. Մէկը հէնց դա է։
Եագօ. Մարդասպա՜ն սրիկայ, ա՜յ դու սրիկայ։

Դաշոյնով զարկում է Ռոդրիգօյին։

Ռոդր. Անիծեա՜լ Եագո, դիւային դու շուն։
Եագո. Մթնում սպանե՞լ. ո՞ւր են արիւնխում աւազակները։
Այսպէս լո՞ւռ քաղաք. մարդասպանութի՜ւն, մարդասպանու-թի՜ւն.
Ի՞նչ մարդիկ էք դուք. չա՞ր էք թէ բարի։
Լոդով. Առաջ փորձեցէք, յետոյ գովեցէք։
Եագո. Սինիօր Լոդովիկո՞ն։
Լոդով. Նա ինքը, պարոն։
Եագո. Ա՜խ, ներողութիւն.
Այստեղ Կասսիօյին չարագործ մարդիկ վիրաւորել են։
Գրաց. Կասսիօյի՞ն։
Եագո. Այո։ — Ի՞նչպէս էք, եղբայր։
Կասս. Ոտքըս կտրել են, երկու մաս արել։
Եագո. Աստուած ոչ անէ՜։
Ճրա՜գ, պարոններ, հէնց իմ շապիկով վէրքը կը կապեմ։

գալիս է Բիանքան։

Բիանքա. Ի՞նչ կայ, հէ՜յ, ո՞վ է օգնութեան կանչում։
Եագո. Ով է կանչո՜ւմ։
Բիանքա. Ո՜հ, իմ սիրելի՜, իմ անո՜ւշ Կասսիօ, Ո՜հ Կասսի՜օ, Կասսի՜օ։
Եագո. Ա՜յ դու պիղծ պոռնիկ։ Կասսիօ, ունի՞ք դուք որեւէ կասկած
Թէ ո՞վքեր են ձեզ այսպէս հաշմացրել։
Կասս. Ոչ։
Գրաց. Ցաւում եմ որ ձեզ այսպէս եմ գտնում.
Ես գալիս էի ձեզ որոնելու։
Եագո. Տուր մի ծնկակապ։ Հա, այսպէս, եղաւ.
Ա՜հ, մի պատգարակ որ սրան տանենք.
Բիանքա. Ուշքից գնում է, վա՜յ, Կասսիօ՛, Կասսիօ՛։
Եագո. Պարոններ, լսէք. լուրջ կասկած ունիմ,
Որ այս խայտառակն այս ոճիրի մէջ մաս է ունեցել։
Մի քիչ համբերիր, սիրելի Կասսիօ։
— Մի ճրագ տուէք։ Տեսնեմ այս դէմքը ծանօ՞թ է թէ ոչ։
Վա՜յ, իմ սիրելի հայրենակիցըս եւ բարեկամը՞ս,

Ռոդրիգո՞ն, ոչ, ոչ․ այո, նա ինքն է․ երկի՛նք, Ռոդրիգո՞ն։

Գրաց. Այն Վենետիկցի՞ն։

Յագո. Նա ինքը, տէր իմ․ ճանաչո՞ւմ էիք։

Գրաց. Ճանաչո՞ւմ, այո՛։

Յագո. Սինիոր Գրացիանո՞․ խնդրեմ ներէք ինձ․
Այս արիւնահեղ դէպքերի մեղքն է,
Որ անուշադիր եղայ ձեր հանդէպ։

Գրաց. Հոգ չէ․ ուրախ եմ ձեզ հանդիպելուս։

Յագո. Ի՞նչպէս էք, Կասսիո․ ա՜հ, մի պատգարա՜կ։

Գրաց. Սա Ռոդրիգո՞ն է։

Յագո. Նա է, նա ինքը։

Մի պատգարակ են բերում։

Ա՜հ, ի՛նչ լաւ եղաւ այս պատգարակը։
Հիմա մի լաւ մարդ թող զգուշութեամբ սրան տուն տանէ,
Ես էլ շուտ գնամ եւ զօրապետի բժշկին բերեմ․

Բիանկային։

Իսկ դու, այ կնիկ, նեղութիւն մի՛ կրիր․
Կասսիօ, այս մարդը, որ վիրաւորուած ընկած է այստեղ,
Իմ բարեկամն էր։ Ձեր եւ նրա մէջ մի բա՞ն կար արդեօք։

Կասս. Ոչինչ, ես նրան չեմ իսկ ճանաչում։

Յագո. (Բիանկային)։ Ա՜հ, գունատւո՞ւմ ես։
— Հէ՜յ, եկէք սրան տարէք բաց օդում։

Կասսիոյին եւ Ռոդրիգոյին տանում են դուրս։

Կեցէք, պարոններ։ — Այ կին, ինչո՞ւ ես այդպէս գունատուել։
— Տեսնո՞ւմ էք աչքերն ինչպէս մոլոր են։
Չէ՛, երբ որ այդպէս աչքերդ յառում ես՝
Ուրեմըն դու մեզ շատ բաներ կ'ասես։
— Մէկ լաւ նայեցէք սրան, խնդրում եմ․
Նայեցէք վրան․ տեսնո՞ւմ էք, պարոններ․
Ցանցանքը ինքը լեզու կը բանայ,
Թէկուզ պապանձուին ամեն լեզուները։

Գալիս է Էմիլիան։

Էմիլիա. Վա՜յ ինձ, սա ի՞նչ է, ի՞նչ կայ, էրիկս։
Եագօ. Այստեղ մութի մէջ փորձ է կատարուել Կասսիօյի վրայ,
Ռոդրիգն է եղել եւ այլ ընկերներ, որոնք փախել են.
Կասսիօն շատ սաստիկ վիրաւորուած է, Ռոդրիգօն մեռած։
Էմիլիա. Խե՜ղճ ազնիւ պարոն, խե՜ղճ, ազնիւ Կասսիօ։
Եագօ. Անառակութեան պտուղն այս է միշտ։ Խնդրեմ, Էմիլիա,
Գընա Կասսիօյից հարցափորձ արա,
Թէ նա այս գիշեր որտեղ է ընթրել.

Բիանքային։

Ի՞նչ է, դողո՞ւմ ես։

Բիանքա. Իմ տանն է ընթրել. բայց ես չեմ դողում։
Եագօ. Ա՜հ, հօ՜, քո տա՞նը. լաւ, լաւ, եկ ինձ հետ, հրամայում
եմ քեզ։
Էմիլիա. Թո՜ւհ քեզ, թո՜ւհ, պոռնիկ։
Բիանքա. Ոչ, ես պոռնիկ չեմ, այլ նոյնքան պարկեշտ
Որքան դու, որ ինձ թքում մրում ես։
Էմիլիա. Որքա՞ն ես. թո՜ւհ քեզ։
Եագօ. Բարի՜ պարոններ, գնանք Կասսիօյի վէրքերը կապենք։
— Դու էլ եկ, այ կին. մենք քեզ կը ստիպենք շատ բաներ պատմել։
— Վազիր, Էմիլիա, գնա միջնաբերդ,
Եւ զօրապետին եւ իր կնոջը պատմիր եղածը։
Եկէք, պարոններ, գնացէք առաջ։

Առանձին։

Կամ այս գիշերը բախտըս կը շինէ,
Կամ գլխով ոտքով ինձ կը կործանէ։

Գնում են։

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի ննջարան դղեակի առաջ:*
*Դեզդեմոնան անկողնում քնած. մի ճրագ վառւում է:*
*Գալիս է Օթելլօն:*

*Օթելլօ.* Պատճառն է, հոգիս, պատճա՛ռը.
Թողէք ձեր առաջ չանւանեմ ես այն, ողջախո՛հ աստղեր.
Պատճառը միայն։ Սակայն արիւնը չեմ ուզում թափել.
Չեմ ուզում խազել ձիւնից աւելի սպիտակ մորթը,
Աւելի ողորկ քան ալաբաստրը յուշարձանների.
Բայց մեռնի՛ պիտի. թէ ոչ՝ շատ մարդկանց կը դաւաճանէ։
Լոյսը հանգցընեմ, եւ յետոյ . . . լոյսը հանգցնեմ.
Եթէ քեզ մարեմ, բոցի պաշտօնեայ,
Կարող եմ կրկին յետ տալ քեզ լոյսըդ՝ երբ որ փոշմանեմ.
Բայց երբ քո՛ լոյսը մի անգամ մարեմ,
Ո՛վ դու հրաշակերտ գերազանց բնութեան,
Չը գիտեմ ո՛ւր է Պրոմէթէոսեան այն ջերմութիւնը,
Որ լոյսըդ կրկին վառել կարենայ։
Երբ վարդը քաղեմ՝ չեմ կարող նորէն կեանք բաշխել նրան.
Պէտք է թառամի՛. թող դեռ հոտ քաշեմ իր թփի վրայ։

*Համբուրում է։*

Ո՛հ, շունչ խնկաբոյր, քիչ է մնացել
Համոզես նոյնիսկ Արդարութեանը, որ սուրը փշրէ։
Ա՛խ, մէ՛կ էլ, մէ՛կ էլ. հէնց այսպէս եղիր երբ մեռած լինես,
Ու քեզ կը սպանեմ, յետոյ կը սիրեմ.
Մէ՛կ էլ, եւ թող այս վերջինը լինի.
Երբէք չէ եղել այսքան անուշ բան այսքան մահացու։
Պէտք է արտասւեմ, բայց սրանք անգութ արտասուքներ են.
Վիշտըս նման է երկնային վշտի.
Զարկում է նրան, որին սիրում է։ Զարթնում է ահա։
*Դէզդ.* Ո՛վ է։ Օթելլօ՞։
*Օթելլօ.* Ես եմ, Դեզդեմոնա։

Դէզդ. Չե՞ս գալիս քնես, սիրելիս։
Օթէլլօ. Աղօթք արե՞լ ես այս գիշեր, Դէզդէմոնա։
Դէզդ. Այո, սիրելիս։
Օթէլլօ. Եթէ յիշում ես մի մեղք՝ դեռ անհաշտ երկնային շնորհի
Եւ թողութեան հետ՝ շուտ ներում հայցիր։
Դէզդ. Վա՜յ ինձ, սիրելիս. միտքդ ի՞նչ է միթէ։
Օթէլլօ. Աղօթիր, եւ կարճ. ես ման եմ գալիս.
Չեմ ուզում սպանել անպատրաստ հոգիդ.
Ո՛չ, Աստուած չանէ՛. չէի կամենայ հոգիդ սպանել։
Դէզդ. Սպանե՞լ։
Օթէլլօ. Այո, սպանել։
Դէզդ. Ուրեմըն Աստուած թող ինձ ողորմի։
Օթէլլօ. Ամէ՛ն ասում եմ իմ բոլոր սրտով։
Դէզդ. Եթէ այդպէս է՝ յոյս ունիմ որ դու չես սպանի ինձ։
Օթէլլօ. Հը՛մ . . .
Դէզդ. Բայց այնու հանդերձ՝ վախում եմ քեզնից.
Պէտք է իսկապէս մահացու լինես՝
Երբ որ աչքերըդ այդպէս դառնում են.
Չը գիտեմ ինչու պէտք է վախենամ, երբ մեղք չեմ գործել.
Սակայն զգում եմ որ վախենում եմ։
Օթէլլօ. Միտ բեր մեղքերըդ։
Դէզդ. Մեղքըս քո սէրն է։
Օթէլլօ. Դըրա համար է, որ պէտք է մեռնես։
Դէզդ. Անբնական մահ է՝ որ սպանում է սիրելու համար։
Վա՜յ ինձ, ինչո՞ւ ես շըրթունքըդ կըծում.
Արիւնածարաւ մի կիրք ցնցում է քո բոլոր կազմը.
Վատ նշաններ են. բայց դեռ յոյս ունիմ,
Յոյս ունիմ որ դրանք ինձ չեն սպառնում։
Օթէլլօ. Լո՛ւռ, եւ հանդարտ կաց։
Դէզդ. Շատ լաւ, բայց ի՞նչ կայ։
Օթէլլօ. Իմ այնքան սիրած այն թաշկինակը, որ ես քեզ տուի,
Դու պարգեւել ես նոյնը Կասսիոյին։
Դէզդ. Ո՛չ, կեանքըս վկայ, ոչ, հոգի՛ս վկայ։

Կանչել տուր մարդուն, եւ հարցում արա։
Օթէլլօ. Հոգիս, զգո՛յշ կաց, երդմնազանցութիւն մի՛ անիր. զգո՛յշ.
Մահուանդ անկողնում գտնւում ես այժմ։
Դէզդ. Այո, բայց դեռ ոչ մեռնելու համար.
Օթէլլօ. Հէնց այս րոպէիս. ուրեմըն մեղքըդ պարզ խոստովանիր։
Որքան ամէն մի կէտ երդումով ժխտես՝
Դարձեալ չես կարող ցրել կամ խեղդել պինդ համոզումըս,
Որից գոռում եմ։ Մեռնելու ես դու։
Դէզդ. Աստուա՛ծ գթայ ինձ։
Օթէլլօ. Ամէ՛ն, ասում եմ։
Դէզդ. Բայց դու էլ գթա. երբէ՛ք ես քո դէմ յանցանք չեմ գործել.
Երբէք Կասսիոյին չեմ սիրել, երբէ՛ք,
Եթէ ոչ միայն այնպիսի սիրով,
Որպէս երկինքը թոյլատրում է մեզ ընդհանուր կերպով։
Ոչ մի յիշատակ չեմ տուել նրան։
Օթէլլօ. Երկինքը վկայ, իմ թաշկինակը նրա ձեռքին տեսայ։
Օհ, երդմնադրժուած կին, այդ ձեւով սիրտըս քարացնում ես դու,
Եւ սպանութիւն կոչել ես տալիս իմ անելիքը,
Ինչ որ ողջակէզ համարում էի։
Իմ աչքով տեսայ այն թաշկինակը։
Դէզդ. Գտել է ուրեմն։
Ես չեմ ընծայել. կանչել տուր այստեղ.
Թող խոստովանի ճշմարտութիւնը։
Օթէլլօ. Խոստովանել է։
Դէզդ. Ի՞նչ, տէր իմ։
Օթէլլօ. Թէ նա եղել է քեզ հետ։
Դէզդ. Ի՞նչպէս, վա՞տ մտքով։
Օթէլլօ. Այո։
Դէզդ. Ոչ, այդպիսի բան չէ կարող ասել։
Օթէլլօ. Այո, չէ կարող, բերանը փակ է։
Պարկեշտ Եագոյին հրաման է տուած այդ բանի մասին։
Դէզդ. Օ՜հ, կռահում եմ. ի՞նչպէս, մեռա՞ծ է։
Օթէլլօ. Ամէն մի մազը մի կեանք ունենար՝

Իմ մեծ վրէժը ստամոքս ունէր ամէնքի համար։

Դեզդ. Աւա՜ղ, այն խեղճին դաւաճանել են. ես էլ կորած եմ։

Օթելլո. Պոռնի՛կ, իմ առաջ յանդգնում ես լա՞լ այն մարդու համար։

Դեզդ. Օ՜հ, վռնդիր ինձ, բայց մի՛ սպանիր։

Օթելլո. Կորսուի՛ր, պոռնի՛կ։

Դեզդ. Վաղը սպանիր. գոնէ այս գիշեր կենդանի թող ինձ։

Օթելլո. Եթէ դիմադրես։

Դեզդ. Մի կէս ժա՜մ։

Օթելլո. Հիմա որ սկսաւ՝ սպասել չը կայ։

Դեզդ. Այնքան որ միայն մի աղօթք ասեմ։

Օթելլո. Էլ ուշ է։

Խեղդում է նրան։

Էմիլիա. (Դրսից) Տէ՜ր իմ, հէ՜յ, տէ՜ր իմ, տէ՜ր իմ, տէ՜ր իմ, հէ՜յ։

Օթելլո. Այս ի՞նչ աղմուկ է. չէ՞ մեռել, դեռ ո՞չ, ո՞չ բոլորովի՞ն։
Ես որ անգութ եմ, դարձեալ գութ ունիմ.
Չեմ ուզում տանջանքըդ երկարացնել։
Հը՛, այսպէս, այսպէս։

Դաշոյնով սպանում է։

Էմիլիա. (Դրսից) Օ՜հ, տէ՜ր իմ, տէ՜ր իմ։

Օթելլո. Ո՞վ է։

Էմիլիա. (Դրսից) Օ՜հ, բարի՜ տէրըս, մի բառ ասեմ ձեզ։

Օթելլո. Հա՛, Էմիլիան է։ — Սպասի՛ր մի քիչ։ — Մեռած է։
Եկած կը լինի Կասիոյի մահը յայտնելու համար։
Շատ մեծ աղմուկ կար։ Հա՛, էլ չէ՞ շարժւում։
Լուռ, շիրիմի պէս։ Ներ՞ս գայ. յարմա՞ր է.
Կարծեմ թէ նորէն մի շարժում արաւ։ Ոչ։ Ի՞նչպէս անել։
Եթէ ներս մտնէ՝ անպատճառ կ'ուզէ կնոջս հետ խօսել.
Կնո՞ջս, կնո՞ջս. ի՞նչ կին. կին չունիմ.
Օ՜հ, անտանելի՜, օ՜հ, ողբալի՜ ժամ.
Կարծես թէ հիմա արեւ ու լուսին պէտք է խաւարէին,
Եւ երկրագունդը փոփոխութիւնից սոսկահար եղած՝
Բերանը բանայ։

Էմիլիա. (Դրսից) Աղաչում եմ, տէր, թոյլ տուէք որ ձեզ

Երկու բառ ասեմ. Օ՜հ, բարի՜ տէրըս։
Օթէլլօ. Մոռցել էի քեզ. եկ ներս, Էմիլիա.
Կամաց. մի րոպէ։ — Վարագոյրները քաշեմ։ — Ո՞րտեղ ես։

(Դուռը բաց է անում. գալիս է Էմիլիան.)

Ասելիքդ ի՞նչ է։
Էմիլիա. Օ՜հ, բարի՜ տէրըս,
Մի սարսափելի մարդասպանութիւն գործուել է այնտեղ։
Օթէլլօ. Ե՞րբ, հիմա՞։
Էմիլիա. Այո, հէնց հիմա, տէր իմ։
Օթէլլօ. Լուսնի մեղքն է այդ.
Շատ աւելի է երկրին մօտեցել, քան թէ սովոր էր,
Եւ դա է մարդկանց խելագարացրել։
Էմիլիա. Կասսիոն սպանեց Ռոդրիգօ կոչուած մի Վենետիկցու։
Օթէլլօ. Ռոդրիգօն սպանուե՞ց, Կասսիո՞ն էլ սպանուեց։
Էմիլիա. Կասսիոն չէ սպանուել։
Օթէլլօ. Կասսիոն չէ՞ սպանուել.
Ախ աններդաշնակ մարդասպանութիւն,
Քաղցրալուր վրէժը խռպոտ է դառնում։
Դէզդ. Օ՜հ, ի զո՜ւր. ի զո՜ւր սպանութիւն է։
Էմիլիա. Վա՜յ, ի՞նչ ձայն է սա։
Օթէլլօ. Դա՞. ի՞նչ ձայն։
Էմիլիա. Վա՜յ ինձ, վա՜յ հոգուս. տիրուհուս ձայնն էր։

(Վազում է դէպի անկողինը եւ վարագոյրները յետ է տալիս։)

Օգնութի՜ւն, օգնութի՜ւն, հասէ՜ք, օգնութի՜ւն։
Ախ, խօսիր նորէն, սիրելի տիկին, ա՜խ, Դէզդէմոնա,
Անուշի՜կ տիկին, ա՜հ, խօսի՜ր, խօսի՜ր։
Դէզդ. Անմեղ եմ մեռնում։
Էմիլիա. Ո՞վ է արել այս։
Դէզդ. Ոչ ոք, ես ինքըս։ Մնաս բարով.
Տուր իմ ողջոյնը բարի ամուսնուս։ Օ՜հ, մնա՜ս բարով։

(Մեռնում է։)

Օթէլլո. Ո՞վ պետք է նրան սպանած լինի։
Էմիլիա. Աւա՜ղ, ո՞վ գիտէ։
Օթէլլո. Լսեցիր ասաց որ ես չեմ արել։
Էմիլիա. Այո, ինքն ասաց. պետք է ճշմարիտ վկայութիւն տամ։
Օթէլլո. Իբրեւ ստախոս գնաց ուղղակի այրող դժոխքը.
Ես եմ սպանել։
Էմիլիա. Օ՜հ, աւելի սուրբ հրեշտակ էր ապա.
Եւ աւելի սեւ սատանայ ես դու։
Օթէլլո. Մոլորուել էր նա, պոռնիկ էր դարձել։
Էմիլիա. Դու զրպարտում ես նրան, դեւ ես դու։
Օթէլլո. Կեղծ էր ինչպէս ջուր։
Էմիլիա. Թո՛ւնդ ես ինչպէս հուր, որ կեղծ ես կոչում այնպէս էակին.
Օ՜հ, նա անկեղծ էր ինչպէս մի հրեշտակ։
Օթէլլո. Կասիոյի հարճն էր. ամուսնուդ հարցրու, թէ չես հաւատում.
Օ՜հ, ես դժոխքի խորքերի խորքին արժան կլինէի՝
Եթէ որ առանց արդար հիմքերի գործած լինէի։
Քո ամուսինը ամէն բան գիտէր։
Էմիլիա. Իմ ամուսի՞նը։
Օթէլլո. Քո ամուսինը։
Էմիլիա. Թէ մեղանչե՞լ է ամուսնութեան դէմ։
Օթէլլո. Հա՛, Կասիոյի հետ։ Եթէ պարկեշտ կին եղած լինէր նա,
Եւ Աստուած ուզէր մի ուրիշ աշխարհ ստեղծել նորէն,
Մէկ կտոր անբիծ զուտ ոսկեքարից՝
Նրան չէի փոխի այդ աշխարհի հետ։
Էմիլիա. Իմ ամուսի՞նը։
Օթէլլո. Այո, նա եղաւ առաջին անգամ աչքերս բացողը։
Նա պարկեշտ մարդ է, ատում է այն տիղմը, որ փակչում է
Զազիր գործերին։
Էմիլիա. Իմ ամուսի՞նը։
Օթէլլո. Այ կին, ի՞նչ պետք կայ այդքան կրկնութեան.
Այո, ասում եմ, քո ամուսինը։
Էմիլիա. Օ՜հ, իմ տիրուհի՛ս.
Սրիկայութիւնը խաղ է խաղացել խեղճ սիրոյ գլխին։

Ամուսինս ասէ թէ նա խարդախ էր։
Օթելլօ. Նա ինքը, այ կին.
Քո ամուսինը. խօսք չե՞ս հասկանում.
Իմ բարեկամը, քո ամուսինը, պարկեշտ, պարկեշտ Եագօն։
Էմիլիա. Թէ նա է ասել՝ նրա չար հոգին
Օրը կէս ցորեն փտի փչանայ. պիղծ սուտ է ասել.
Իմ խեղճ տիկինը շա՜տ էր սիրահար իր փուչ ընտրածին։
Օթելլօ. Հա՜։
Էմիլիա. Ինչ կ'ուզես արա.
Այս գործըդ այնքան քիչ է արժանի արքայութեանը,
Որքան դու՝ նրան։
Օթելլօ. Լաւ է որ լռես։
Էմիլիա. Քո մէջ կիսով չափ այնքան ոյժ չը կայ ինձ վնասելու,
Որքան իմ մէջ կայ վնաս կրելու։
Ցիմա՜ր, բթամի՜տ, տգէ՜տ ինչպէս կեղտ, մի բան ես արել...
Ի՞նչ փոյթ ինձ սուրըդ. պէտք է աշխարհում խայտառակեմ քեզ՝
Թէկուզ քսան կեանք տուժելու լինեմ։
Օգնութի՜ւն, օգնութի՜ւն, հասէ՛ք, օգնութի՜ւն.
Մաւրն սպանել է իմ խեղճ տիրուհուս.
Մարդասպանութի՜ւն, մարդասպանութի՜ւն։

Գալիս են Մոնտանօ, Գրացիանօ, Եագօ եւ ուրիշներ։

Մոնտ. Ի՞նչ է պատահել, ի՞նչ կայ, զօրապետ։
Էմիլիա. Ա՛հ, եկա՞ր, Եագօ. հա՛, երեսըդ պա՛րզ,
Որ մարդիկ իրենց սպանութիւնը քո վզիդ դնեն։
Գրաց. Ի՞նչ է պատահել։
Էմիլիա. Թէ մարդ ես՝ հերքիր այս ապիրատին.
Ասում է թէ դու նրան ասել ես թէ նրա կինը
Անպարկեշտ կին էր. գիտեմ չես ասել.
Գիտեմ, այդպիսի սրիկայ չես դու.
Դէ խօսիր, խօսիր, սիրտըս պայթում է։
Եագօ. Ես այն եմ ասել, ինչ մտածել եմ,
Եւ ինչ ասել եմ, ինքն էլ տեսել է թէ իսկ եւ ճիշդ է։

Էմիլիա. Բայց ասե՞լ ես թէ նա անառակ էր։
Եագօ. Այո, ասել եմ։
Էմիլիա. Դու սուտ ես խօսել, մի զարշելի՜ սուտ, դժոխայի՜ն սուտ.
Հոգիս չը փրկուի՜, սո՛ւտ է, չա՛ր սուտ է.
Նա՞ Կասսիօյի հետ. ասել ես թէ նա Կասսիօ՛յի հետ էր։
Եագօ. Նրա հետ, տիկին։ Սո՛ւս, լեզուդ քաշիր։
Էմիլիա. Լեզուս չեմ քաշի. ես պարտ եմ խօսել.
Տիրուհիս ահա մեռած ընկած է իր անկողնի մէջ։
Ամենք. Ո՜հ, Աստուած չանէ՜։
Էմիլիա. Եւ հէնց քո տուած զեկուցումներն են
Այս սպանութեան պատճառը դարձել։
Օթէլլօ. Ի՞նչ էք շւարել, պարոններ. ճիշդ է. ճշմարտութիւնն է։
Գրաց. Ի՛նչ զարհուրելի ճշմարտութիւն է։
Մոնտ. Հրէշաւո՜ր արարք։
Էմիլիա. Սրբիկայութի՜ւն, սրբիկայութի՜ւն, սրբիկայութի՜ւն.
Նոր եմ ըմբռնում, նոր եմ ըմբռնում, նոր եմ հոտն առնում.
Սրբիկայութի՜ւն. այն ժամանակն էլ դա մտքովս անցաւ.
Ես ինձ կը սպանեմ ցաւից. ո՜հ, վա՜յ ինձ, սրբիկայութի՜ւն։
Եագօ. Խելագարուե՞լ ես. հրամայում եմ քեզ, տուն գնա իսկոյն։
Էմիլիա. Ազնիւ պարոններ, թոյլ տուէք խօսեմ.
Գիտեմ իմ պարտքս է սրան հնազանդել, բայց ոչ թէ այժըմ։
Ո՛վ գիտէ, Եագօ, գուցէ տան երես չը տեսնեմ երբէք։
Օթէլլօ. Ո՜հ, ո՜հ, ո՜հ։
Էմիլիա. Այո, տապալուիր գետնին եւ գոռա ցաւից.
Դու մի այնպիսի անուշ եւ անմեղ էակ ես սպանել,
Որի նմանը աշխարհ չէ եկել։
Օթէլլօ. (վեր կենալով) Նա լրբացել էր.
— Չը ճանաչեցի ես ձեզ, մօրեղբայր.
Այնտեղ փռուած է ձեր քրոջ դուստրը,
Եւ նորա շունչը հէնց այս ձեռքերը այժըմ կտրեցին։
Գիտեմ, արարքըս անգութ է թւում եւ զարհուրելի։
Գրաց. Խե՜ղճ Դէզդէմոնա. աւա՜ղ, ուրախ եմ որ հայրըդ մեռաւ.
Ամուսնութիւնըդ մահացու եղաւ այն խեղճի համար.

Կսկիծն էր միայն որ խզեց միջից ծերութեան թելը.
Եթէ նա հիմա կենդանի լինէր՝
Այս տեսարանը յուսահատութեան կը դրդէր նրան.
Այո, կ'անիծէր իր կողքին կանգնած բարի հրեշտակին,
Եւ կ'ընկնէր դժոխք։

Օթէլլօ. Ողբալի՛ բան է.
Բայց Եագօն գիտէ թէ հազար անգամ նա Կասսիօյի հետ
Պիղծ գործ էր գործել. Կասսիօն իր բերնով խոստովանել է.
Եւ նա, փոխարէն իր տարփածուի սիրագործութեան,
Նրան էր տուել այն սիրոյ գրաւն ու յիշատակը,
Որ իմ առաջին տուածս ընծան էր։
Աչքովս տեսայ Կասսիօյի ձեռքում. մի թաշկինակ էր,
Մի հին յիշատակ, մի նուէր, որ հայրս տուել էր մօրըս։

Էմիլիա. Երկի՛նք, հրեշտակնե՛ր։

Եագօ. Սո՛ւս, ձայնըդ կտրիր։

Էմիլիա. Ոչ, պէտք է դուրս գայ, դուրս գայ. Ե՞ս լռեմ.
Ոչ, ես կը խօսեմ աւելի ազատ քան հիւսիս հողմը.
Թող երկինք, մարդիկ եւ սատանաներ,
Բոլորը, բոլորն ինձ ամօ՛թ գոռան, դարձեալ կը խօսեմ։

Եագօ. Խելքըդ ժողովիր, եւ գնա տունըդ։

Էմիլիա. Չեմ գնայ։

*Եագօն փորձում է սպանել Էմիլիային։*

Գրաց. Թո՛ւհ քեզ, սո՛ւր քաշել մի կնոջ վրայ։

Էմիլիա. Ո՜վ դու ապուշ Մաւր, այն թաշկինակը որ դու ասում ես,
Ե՛ս դէպքով գտայ եւ տուի մարդուս.
Շատ եւ շատ անգամ նա խիստ լրջօրէն ինձ աղաչել էր
Որ գողանայի, ինչ որ իսկապէս շատ անտեղի էր
Այսպիսի չնչին մի բանի համար։

Եագօ. Անզգա՛մ պոռնիկ։

Էմիլիա. Նա Կասսիօյին տա՛լ. ոչ, վա՜յ իմ գլխիս,
Ես ինքըս գտայ եւ մարդուս տուի։

Եագօ. Կե՛ղտ, սուտ ես ասում։

Էմիլիա. Երկինքը վկայ, ես սուտ չեմ ասում, սուտ չէ, պարոններ. 244
Մարդասպա՛ն ապուշ, քեզ պէս յիմարին այնպէս ազնիւ կի՞ն։
Օթէլլօ. Միթէ երկնքում ուրիշ քար չը կա՞յ բացի կայծակից։
Ընտրեա՛լ սրիկայ։

Օթէլլօն յարձակւում է Եագօյի վրայ.
Եագօն ետւից զարկում է Էմիլիային եւ ինքը փախչում։

Գրաց. Կինն ընկնում է վար. անշուշտ սպանեց այս խեղճ կնոջը։
Էմիլիա. Այ, ա՜յ, ա՜յ, մեռա՜յ. օ՜հ, ինձ էլ դրէք տիրուհուս կողքին։
Գրաց. Նա փախաւ ձեռքից եւ կինն սպանեց։
Մոնտ. Նենգամիտ սրիկա՜յ։
Առէք այս զէնքը, որ Մաւրի ձեռքից յափշտակեցի։ 251
Վազէք, փակեցէք դրսի դռները. չը թողնէք փախչի.
Եթէ չը բռնէք՝ գէթ սպանեցէք.
Ես էլ գնում եմ որ գուցէ բռնեմ այն սրիկային.
Դժոխքի սրիկայ։

Մոնտանօ եւ Գրացիանօ դուրս են գնում։

Օթէլլօ. Կտրիճ չեմ այլ եւս. 255
Ամեն մի թզուկ խլում է սուրըս.
Բայց ինչո՞ւ պէտք է դեռ պատիւն ապրի՝
Երբ որ մեռած է պարկեշտութիւնը։ Թող բոլո՛րն երթայ։
Էմիլիա. Խեղճ տիկին, ի՞նչ էր երգըդ գուշակում։ 259
Սը՞ս, լսո՞ւմ ես ինձ. թող կարապի պէս երգելով մեռնեմ.

Երգում է։

Ուռենի՜, ուռենի՜, ուռենի՜։
Մա՜ւր, նա սուրբ էր. նա քեզ սիրում էր, դու անգո՜ւթ Մաւր,
Թող երանութեան երես չը տեսնեմ՝ թէ սուտ եմ ասում։
Այժըմ ասելով ինչ մտածում եմ՝ մեռնում եմ, մեռնում։

Մեռնում է։

Օթէլլօ. Մի այլ զէնք էլ կայ այս սենեակի մէջ. 165
Սպանիական սուր, սառուցով ջրած,
Ահա, այստեղ է։ Մօրեղբայր, պէտք է այստեղից դուրս գամ։

Գրաց. Եթէ փորձ անես՝ քեզ թանկ կը նստի։
Զէնք չունիս, ուրեմն ինքըդ կը տուժես։
Օթէլլօ. Ուրեմն ինձ նայիր, եւ խօսիր ինձ հետ,
Եթէ ոչ, անզէն, կը ցատկեմ վրադ։

Գրացիանօն ներս է գալիս։

Գրաց. Լաւ, ի՞նչ ես ասում։
Օթէլլօ. Նայիր, զէնք ունիմ.
Սրանից լաւը չէ կապուել երբէք զինուորի կողքին.
Ես օր եմ տեսել, երբ որ այս փոքրիկ բազուկով միայն
Եւ այս կուռ սրով՝ արգելքներ եմ ես գետին տապալել,
Քան անգամ բարձր քո բոլոր ոյժից։
Բայց ունայն պարծանք. ո՞վ կարէ իշխել իր բախտի վըրայ.
Հիմա այդպէս չէ. մի՛ վախիր ինձնից՝ զինուած էլ լինեմ։
Այստեղ է արդէն իմ ճանապարհորդութեան վերջին կայանը,
Իմ նաւարկութեան կէտ-նպատակին եւ ծովանիշը։
Ի՞նչու ես այդպէս սարսած յետ դըռնում. զուր է երկիւղըդ.
Մի եղէգ ուղղիր Օթէլլօյի դէմ, եւ նա կ'ընկրկի.
Ո՞ւր գնայ Օթէլլօն։
— Տեսնեմ, ի՞նչպէս է հիմա երեսըդ.
Շապկիդ պէս գունատ. երբ հաշուի օրը իրար հանդիպենք՝
Այդ քո նայուածքը հոգիս երկնքից վար կը գլորէ,
Եւ չար դեւերը կը բռնեն նրան։
Սառն ես, աղջիկըս, սառն ես, ինչպէս քո զգաստութիւնը։
— Ո՜հ դու անիծեա՜լ, անիծեա՜լ ստրուկ։
Մտրակեցէք ինձ, ո՜վ սատանաներ, եւ քշեցէք ինձ
Հեռու՛ երկնային այս տեսարանից,
Փչեցէք չորս կողմ բոլոր հողմերին,
Խորովեցէք ինձ վառ ծծումբի մէջ,
Թաթախեցէք ինձ հեղուկ կրակի յորձանքների մէջ։
Ո՜հ, Դեզդէմո՛նա, Դեզդէմո՛նա. մեռա՛ր. ո՜հ, ո՜հ, ո՜հ։

Գալիս են Լոդովիկօն, Մոնտանօն, Կասիօն՝ մի պատգա-րակի վրայ, Եագօն՝ շղթայ-ուած, Սպաներով շրջապատ-ուած։

Լոդով. Ո՞ւր է անզգոյշ այն տարաբախտը։
Օթելլո. Այսինքն այն մարդը որ Օթելլո՞ն էր, ահա այստեղ եմ։
Լոդով. Ո՞ւր է այն իժը. բերէք սրիկային։
Օթելլո. Ոտքերին նայեմ. բայց առասպել է.
Եթէ դեւ ես դու՝ չեմ կարող սպանել։

Վիրաւորում է Եագոյին։

Լոդով. Խլեցէք սուրը։
Եագո. Թէպէտեւ, պարոն, արիւնոտուել եմ, բայց չեմ սպանուած։
Օթելլո. Ես էլ ուրախ եմ որ չես սպանուած. ուզում եմ ապրես.
Մահն, իմ կարծիքով, երջանկութիւն է։
Լոդով. Ով դու Օթելլո, դու, մի ժամանակ այնքան բարեսիրտ,
Որ այժմ ընկել ես մի անիծեալի որոգայթի մէջ,
Ի՞նչ անուն տանք քեզ։
Օթելլո. Ինչ որ կամենաք.
Պատուով մարդասպան, եթէ կամենաք.
Քանզի ոչ մի բան չեմ արել քէնից, այլ պատուի համար։
Լոդով. Այս պիղծը մասամբ խոստովանել է իր նենգութիւնը.
Ճի՞շդ է որ նրա հետ ծրագրել էիք Կասսիոյի մահը։
Օթելլո. Այո։
Կասս. Բարի զօրապետ, ես ձեզ ոչ մի կերպ տեղիք չեմ տուել։
Օթելլո. Հաւատում եմ այժմ, ներում եմ խնդրում։
Խնդրեմ, հարց արա այս կիսադեւին,
Թէ ինչու համար հոգիս ու մարմինս այսպէս թակարդեց։
Եագո. Ոչինչ մի հարցնէք. ինչ գիտէք, գիտէք.
Այս րոպէից յետ մէկ բառ չեմ խօսի։
Լոդով. Եւ ո՞չ էլ նոյնիսկ աղօթքի համար։
Գրաց. Չարչարանքները լեզուդ կը բանան։
Օթելլո. Եւ դու լաւ կ'անես։
Լոդով. Տէր իմ, ձեզ ասեմ պատահածները,
Ինչ որ, կարծում եմ, դեռ չէք իմանում։ Ահա մի նամակ,
Որ գտնուած է այն Ռոդրիգոյի գրպանի միջում.
Ահա մի այլը. մէկը խօսում է Կասսիոյի մասին,
Որին Ռոդրիգոն պէտք է սպանէր։

Օթէլլօ. Ա՜յ դու սրրիկայ։
Կասս. Հեթանոսակա՜ն, անզգա՜մ սրիկայ։
Լոդով. Ահա մի այլ թուղթ, լի գանգատներով,
Որ գտնուած է նոյն գրպանի մէջ,
Եւ որ Ռոդրիգօն, ինչպէս թւում է,
Ուզել է ղրկել այս նզովեալին.
Բայց այդ միջոցին պէտք է սա յանկարծ ներս մտած լինի
Եւ նրան համոզած։
Օթէլլօ. Ա՜յ դու չարագործ։
— Բայց, Կասսիօ, ի՞նչպէս այն թաշկինակը որ իմ կնոջն էր
Ընկաւ քո ձեռքը։
Կասս. Իմ սենեակի մէջ գտայ պատահմամբ.
Եւ այս րոպէիս նա խոստովանեց
Թէ ինքն էր դիտմամբ վար ձգել այնտեղ մի յատուկ մտքով,
Որ եւ կատարուեց իր ուզածին պէս։
Օթէլլօ. Ո՜հ, ես տխմա՛րըս, տխմա՛րըս, տխմա՛րըս։
Կասս. Բացի դրանից՝
Ռոդրիգօն սրան այս նամակի մէջ յանդիմանում է,
Թէ սա է դրդել նրան, որ ինձ հետ պահականոցում
Խռովութիւն սարքէ, որ պատճառ դարձաւ իմ արտաքսելուն.
Եւ մի քիչ առաջ ինքը Ռոդրիգօն
Որ երկար ատեն մեռած էր թւում, սկսաւ խօսել,
Ասաց, Եագօն է նրան վէրք տուել,
Եւ Եագօն ինքն է նրան գրգռել։
Լոդով. (Օթէլլօյին) Պէտք է դուք այժըմ թողնէք այս տունը,
եւ մեզ հետեւէք.
Ձեր իշխանութիւնը եւ ձեր պաշտօնը յետ է առնուած.
Կասսիօն է կղզու կառավարիչը։
Գալով այս շանը՝ եթէ հնարուած մի չարչարանք կայ,
Որ երկար տանջէ, բայց շուտ չը սպանէ՝
Սրա համար է։ Իսկ դուք կը մնաք մեր բանտարկեալը,
Մինչեւ Վենետիկի պետութեան առաջ ձեր մեղքի մասին
Ձեկուցում տրուի։ Եկէք, տարէք սրան։

Օթէլլօ. Կամաց. երկու բառ քանի այստեղ էք.
Ես պետութեանը ծառայել եմ քիչ, եւ նրանք գիտեն.
Այս մասին այսքան։ Այժմ աղաչում եմ, ձեր նամակներում,
Երբ որ կը պատմէք այս աղէտալի պատահարները,
Ներկայացրէք ինձ այնպէս, ինչպէս կամ.
Ոչ պակասացրէք, ոչ աւելացրէք չարամտութեամբ.
Պէտք է ուրեմըն դուք նկարագրէք մի մարդ, որ սիրեց
Ոչ խոհեմաբար, այլ սաստիկ ուժգին.
Մի մարդ, որ դիւրաւ խանդոտացող չէր,
Բայց երբ որ լարուեց՝ անչափ մոլորուեց.
Մի մարդ, որ նուաստ Հնդիկի նման՝ իր ձեռքով նետեց
Մի ճոխ մարգարիտ՝ որ մենակ կ'արժէր իր բոլոր ցեղին.
Մի խեղճ մարդ, որի խոնջած աչքերը,
Թէեւ անսովոր ջրակալուելու՝
Աւելի առատ արցունք են թափում
Քան Արաբիայի ծառերը՝ իրենց բուժարար խէժը։
Գրեցէք այսպէս, եւ աւելացրէք թէ Ալէպպօյում
Մի փաթթոցաւաւոր չարագործ Տաճիկ մի օր ծեծում էր
Մի Վենետիկցու, եւ հայհոյում էր մեր պետութեանը.
Իսկ ես բռնեցի այն թլպատուած շան կոկորդից, եւ նրան
Զարկեցի, այսպէս։

Ինքն իրեն զարկում է սրով։

Լոդով. Օ՜հ, ի՜նչ արիւնոտ վերջաբան եղաւ։
Գրաց. Փչացաւ բոլոր ինչ որ ասացինք։
Օթէլլօ. Քեզ համբուրեցի, եւ սպանեցի.

Ընկնում է Դեզդեմոնայի վրայ։

Ինձ մնաց միայն ինքս ինձ սպանել եւ քեզ համբուրել։

Մեռնում է։

Կասս. Վախենում էի որ այսպէս լինէր.
Բայց կարծում էի թէ նա զէնք չունէր։
Մեծ սրտի տէր էր։
Լոդով. (Եագոյին) Սպարտացի՜ շուն,

*Աւելի դաժան քան թէ անձկութիւն, քան թէ սով, եւ ծով,*
*Տես այս անկողնի ողբալի բեռը.*
*Քո արածն է այս. այս տեսարանը թո՛յն է աչքերի.*
*Ծածկեցէք վըրան։ Գրացիանո, տունը դուք պահպանեցէք,*
*Գրաւեցէք Մաւրի հարստութիւնը.*
*Ձեզ է պատկանում իբրեւ ժառանգի։ Ձեզ, տէր կուսակալ,*
*Մընում է պատժել այս դժոխային թշուառականին,*
*Որոշել օրը, տեղն ու տանջանքը։ Օ՜հ, խստացրէք այդ.*
*Իսկ ես ուղղակի նաւ նստեմ գընամ, պատմեմ Սէնատին*
*Ողբագին անցքը սրտով ողբագին։*

Դուրս են գնում։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

---

I. I. 4. *Լուր ես ունեցել:* "Այսինքն տեղեկութիւն ես ունեցել Դեզդեմոնայի փախչելուց: Ռոդրիգօն վաղուց ուզեցել է Դեզդեմոնայի հետ ամուսնանալ, եւ Եագօյին խնդրել է որ նրան օգնէ՝ կանխապէս վարձատրելով նրան իր ծառայութեան համար: Խաղը սկսւում է Դեզդեմոնայի փախուստով Մաւրի հետ, եւ Ռոդրիգօն ենթադրում է թէ Եագօն նրանց գաղտնի ծրագրից լուր է ունեցել": Հուգոյան:

I. I. 18. "Ֆլորենտացիք հանրածանօթ էին որպէս սեղանաւորներ. նրանք են հնարել փոխանակագիրը, կրկնատումարը, եւ ամէն ինչ որ կապ ունի բանքային գործի հետ. այս պատճառով է որ Եագօ ծաղրում է Կասսիօյի անուանումը որպէս սեղանակալ": Բրաուն:

I. I. 19. Մի քանի կրիտիկներ կարծում են թէ այս տողը ակնարկութիւն է Կասսիօյի եւ Բիանքայի սիրային յարաբերութիւններին:

I. I. 33. *Մի որեւիցէ համրիչ ծգողի ...* Համրիչ այն հաշուելու գործիքն է որ մինչեւ այսօր սովորական է Ռուսաստանում. ինչպէս երեւում է այդպիսի մի գործիք հնուց գոյութիւն է ունեցել Իտալիայում:

I. I. 36. *Դրօշակիր* մօտաւորապէս այն նշանակութիւնն է ունեցել այն ժամանակ, ինչ որ այժմ կոչում ենք "Թիկնապահ":

I. I. 62. *Որ եթէ ինքըս Մաւրը լինէի ...* Միտքն այն է որ եթէ ես էլ կարողանայի տէր լինել՝ ի հարկէ չէի յօժարի ծառայ լինելու:

I. I. 70. *Այն չեմ ինչ որ կամ:* Պէտք է նկատել որ Եագօն ընդհանուր կերպով սիրում է խորհրդաւոր կերպով խօսել, եւ ասածների իմաստը յայտնի է, բայց ոչ միշտ պարզ: Այստեղ ուզում է ասել, "Ես այն չեմ ինչ որ թւում եմ":

I. I. 71. Շատ կրիտիկներ գտնում են որ *հաստաշուրթ* բառը որ գործածուած է այստեղ Օթելլօյի համար, պարզ ապացոյց է որ Շէքսպիր կամեցել է Օթելլօյին ներկայացնել որպէս մի իրական նէգր, ոչ թէ մի Մաւրիտանացի թխամորթ Արաբ (Տես. I. II. 70):

I. I. 78. Ճանճերը գլխաւոր անախորժութիւնն են բարեխառն կլիմաների:

I. I. 122. Շէքսպիր այս պատկերն առած է Ռաբըլէից (I. 3.) Et faisoyent eux deux souvent ensemble la beste à deux dos.

I. I. 165. *Աղեղնաւորը:* Զոդիակի կենդանակերպներից մէկը, այն է կէս-մարդ ու կէս ձի, որի ձեռքը մի աղեղ կայ. Հաւանական է որ Շէքսպիր այդ անունը ստեղծած է մի հիւրանոց նշանակելու համար, թէեւ բազմահամբեր հետազօտողներ Օթէլլօյի ժամանակ Վենետիկում գոյութիւն ունեցող բոլոր հիւրանոցների անունները պրպտած են, եւ "Աղեղնաւոր" անունը չեն գտած նրանց մէջ:

I. II. 6. Յայտնի չէ թէ Եագօն որին է ակնարկում այստեղ: Ստիվէնս կարծում է թէ խօսքը Ռոդրիգօյի մասին է: Եագօն Օթէլլօյին պատմել է — ինչպէս հետեւեալ խօսքերից երեւում է — թէ ինքը հանդիպել է Ռոդրիգօյին, եւ վերջինս նրան ասել է թէ գնում է Դեզդեմոնայի հօրը զարթեցնէ: Եագօն այս մի քանի խօսքերով ուզում է թէ իր անձնուիրութիւնը ցոյց տալ Օթէլլօյին, եւ թէ իր բնաւորութեան ազնուութեան մասին համոզել նրան:

I. II. 12. Մագնիֆիկօ տիտղոսը տրւում էր Վենետիկի երեւելի մարդկանց, եւ մասնաւորապէս Սէնատորներին:

I. II. 23. "Արժանիքներ" ասելով Օթէլլօն հասկանում է Վենետիկի պետութեան արած ծառայութիւնները:

I. II. 28. Ծովերի գանձերը = մարգարիտները:

I. II. 50. Եագօն խօսում է ծովային ոճերով: Անգլիայում օրէնքը պահանջում էր, որ երբ անհատական նաւեր ծովի վրայ մի թշնամի կամ կաշառելի նաւ բռնեն, պարտաւոր են իրենց գրաւումը ենթարկել Ադմիրալութեան դատաստանին. դատաստանը միայն իրաւունք ունէր վճռելու թէ կատարուած գրաւումը օրինաւոր է թէ ոչ:

I. II. 68. *Դանգլրահեր,* ինչ որ այսօրւայ բառերով կը նշանակէր *շիկ*. այն ժամանակւայ շիկ երիտասարդները սովոր էին իրենց մազերը խոպոպել տալ:

I. II. 70. *Մրոտ գրկի մէջ:* Այստեղ յարմար ենք համարում մի քանի բառ ասել Օթէլլօյի գոյնի մասին. այս հարցի շուրջը շատ վիճաբանութիւն է եղել, ոմանք համարում են Օթէլլօյին իսկական նէգր կամ խափշիկ. ուրիշներ՝ թխամորթ Մաւրիտանացի, կամ Արաբ. երկու կողմերի համար էլ կան զօրեղ ապացոյցներ: Շէքսպիր աչքի առաջ ունենալով Չինթիոյի վէպը՝ Օթէլլօյին համարել է սեւ, ինչպէս իտալական վէպի մէջ: Եագօն ասում է Օթէլլօյին թէ Դեզդեմոնան զզուել է նրա սեւութիւնից (nerezza): Ամբողջ թատերերգի մէջ զանազան տեղերում ակնարկութիւն է արուած այդ սեւութեան մասին: Նախ, վերոյիշեալ տեղը: Ապա Ար. III. Տես. III. 412, Օթէլլօն ասում է Դեզդեմոնայի երեսի մասին "*Այժմ սեւ է նա հէնց իմ դէմքի պէս*": Նոյնպէս՝ Ար. I. Տես. I. 71 տողում գործածուած "հաստաշուրթ"

բառը ապացոյց է թէ խափշիկ ցեղին պատկանող է համարել Օթէլլոն։ Հակառակ կողմի փաստերը սրանք են. Օթէլլոն կոչւում է Մաւր, որ նշանակում է Մաւրիտանիացի Արաբ, ոչ թէ նէգր։ Երկրորդ՝ Օթէլլոն խօսում է իր "գահանիստ նախահայրերի" վրայ, եւ սա ապացոյց է որ նէգրերի պէս ստոր ցեղի մասին չէ խօսքը, այլ այն ազնիւ եւ գեղեցիկ ցեղի, որ տիրեց Սպանիայի մի մասին, եւ որի քաղաքակրթութեան հետքերը մինչեւ այսօր կենդանի են Սպանիայում եւ այլուր՝ մանաւորապէս իրենց ստեղծած ճարտարապետական ոճով։ Եւ իսկապէս, Օթէլլոյի ամբողջ բնաւորութիւնը, իշխանական վեհանձնութիւնը, խրոխտ եւ ազնիւ բնութիւնը, հերոսական քաջութիւնը, այդ բոլոր յատկութիւնները համապատասխան են Արեւմտեան Արաբների տիպին, ոչ թէ մի նէգրի։ "Մաւր" բառն ինքը նշանակում է "Արեւմտեան", եւ աղաւաղումն է "Մաղրէբի" բառի. Արաբական գրականութեան մէջ Սպանիայի Արաբները ծանօթ են "Մաղրէբի" անունով։ Նոյնպէս՝ Ար. IV. Տես II. 240 Եագօն ասում է Ռոդրիգօյին թէ Մաւրը յետ է կանչւած Կիպրոսից եւ վերադառնում է Մաւրիտանիա. դա նշանակում է որ Եագօն ճանաչում է Օթէլլոյին որպէս Մաւրիտանիացի։ Ինչպէս ընթերցողը տեսնում է երկու բանակներն էլ իրենց ապացոյցները դուրս են բերում բնագրից. Ինչպէս լուծել հանգոյցը. միակ հաւանական ենթադրութիւնն այն է որ Շէքսպիր մեծ զանազանութիւն չէր դնում Մաւրերի եւ նէգրերի մէջ, կամ թէ ազդւած Իտալական վէպից՝ չէ ուզեցել "սեւ" բառից հրաժարուել, եւ Դեզդեմոնայի գեղեցկութիւնը հակադրել է Մաւրի սեւութեանը։ Ցամենայն դէպս՝ իրողութիւնն այն է, որ սկսեալ Շէքսպիրի օրերից մինչեւ 19 երորդ դարի սկիզբը ամեն հռչակաւոր դերասանները Օթէլլոյի դերը խաղացել են իբրեւ նէգր։ Քին առաջին դերասանը եղաւ որ 1814ին այս հարցը յարուցեց եւ խաղաց որպէս թխամորթ Արաբ. այնուհետեւ մի շարք կրիտիկներ, սկսելով Կոլրիջից, նոր թեղի կուսակից դարձան. մանաւանդ Ամերիկայում, ցեղային հակակրութեան պատճառով՝ նոր ըմբռնումը շատ պաշտպաններ գտաւ։ Մի կրիտիկ իրաւամբ նկատում է թէ ուրիշ բան է կարդալ Օթէլլոյի սեւութեան մասին, եւ ուրիշ բան է աչքով տեսնել բեմի վրայ, եւ թէ մեր արդի ճաշակը դժւարաւ է հանդուրժում նէգրի սեւութեանը Օթէլլոյի պէս գեղեցիկ մի տիպի մէջ։ Լամ (1810) շատ սրամտօրէն նկատում է թէ, պահանջել որ Օթէլլոն ներկայացւի որպէս նէգր, որովհետեւ Շէքսպիր կամեցել է մի նէգր հանդիսացնել՝ նոյնը կը լինէր ինչ որ պահանջել որ Ադամ եւ Եւան բեմի վրայ մերկ դուրս բերւին։ "Երբ թատրերկը կարդում ենք՝ մենք Օթէլլոյին տեսնում ենք Դեզդեմոնայի աչքերով. երբ ներկայացումը տեսնում ենք, ստիպւած ենք մեր սեփական աչքերով նայել։"

I. II. 75—80. Այն ժամանակներում մարդիկ ընդհանուր կերպով հաւատում էին կախարդական միջոցների ազդեցութեանը սիրային գործերում

Թէ Շէքսպիր ինքը իսկապէս հաւատում էր այդ բաներին, շատ կասկածելի է. բայց նա այդ սնահաւատութիւնները, գործ էր դնում իբրեւ բանաստեղծական միջոց։

I. II. 98. *Հեթանոսներ:* Արհամարհական ակնարկութիւն է Օթելլօյի օտարական լինելուն. Մալօն ասում է թէ Շէքսպիրի ժամանակ "հեթանոս" բառը շատ յաճախ գործածւում էր որպէս անարգական խօսք։

I. III. 142—143. *Ու մարդակերներ* . . . Այս բոլոր առասպելները Շէքսպիր քաղել է Սըր Ջօն Մանդըվիլի, Սըր Վալտէր Ռալէյի եւ նոյնիսկ Պլինիոսի գրքերից. այս ճամբորդները պատմում էին ոչ միայն իրենց տեսածները, այլ եւ լսածները։ Շէքսպիրի օրերում, երբ մարդկանց երեւակայութիւնը վառուած էր նոր գտնուած երկիրների պատմութիւններով, մարդիկ շատ հաճութեամբ էին լսում այս առասպելները. դրա համար է որ Շէքսպիր օգտուել է այդ տարածուած հէքեաթներից՝ Օթելլօյին մի առանձին խորհրդաւորութիւն տալու համար։

I. III. 266. *Տապակ* այն ամանն է որի մէջ միս են տապակում. կովկասի մէջ ժողովուրդը գործ է ածում պարսկերէն "թաւա" բառը։

I. III. 304. *Չորս անգամ եօթը տարի է* . . . Հետաքրքիր է որ Շէքսպիր ուզեցել է որոշ կերպով նշանակել Եագօյի տարիքը, ինչպէս որոշել է Համլէտի տարիքը։

I. III. 327. *Մի ոստիկ է, մի ընձիւղ,* որ մենք մեր ձեռքով ցանում ենք մեր պարտէզի մէջ, ոչ թէ ինքնածին մի բոյս է։

I. III. 342. *Մեղրից քաղցր եւ լեղիից դառն:* Այստեղ ստիպուել ենք բնագրից շեղուիլ, որովհետեւ Շէքսպիրի գործածած երկու բոյսերն էլ մեր ժողովրդին անյայտ են. բնագրում գրուած է, "այնպէս համեղ ինչպէս մարախ, եւ այնպէս դառն ինչպէս կօլոքուինթ (դառն դդում)"։ Մարախ (Աւետարանի մարախը) այն պտուղն է որով Յովհաննէս Մկրտիչը կերակրւում էր անապատում. թէ դա իսկապէս ո՛ր պտուղն է համապատասխանում, շատ վիճելի է. իսկ կօլօքուինթը մի դառն բոյս է, դդումի կամ վարունգի նմանացած, որ դեղագործները գործածում են լուծողական շինելու համար։

II. I. 26. *Մի Վէրոնէզ է:* Նշանակում է Վէրօնայում շինուած մի նաւ. բայց Վէրօնան ծովեզերեայ քաղաք չէ, որ կարելի լինէր այնտեղ նաւ շինել։ Շատ հաւանական է որ սա մի պարզ արդիւնք է Շէքսպիրի աշխարհագրական տեղեկութիւնների պակասութեան, ինչպէս շատ ուրիշ պարագաներում տեսնում ենք. բայց կան կրիտիկներ, որոնք ուզում են մի հիմք գտնել Շէքսպիրի այս ասութեան համար. Մալօն ասում է թէ Վէրօնան Վենետիկի հանրապետութեան քաղաքներից մէկը լինելով՝ "Վէրօնէզ" նշանակում է մի նաւ որ Վէրօնացիք իրենց դրամով շինել են տուել Վենետիկի համար։ Ուրիշ կրիտիկներ ասում են թէ "Վէրօնէզ" նաւի անունն է եղել.

բայց այդ պարագայում “Մի„ բառը անտեղի կը լինէր, այլ պէտք էր ասել “Վէրոնէզին„ է։

II. I. 64. *Արարչակերտ իսկական ծեւի գեղեցկութեան մէջ ...* Այս տողերը անթիւ բացատրութիւնների տեղի են տւել, եւ անլուծելի հանգոյցների շարքում են դասւել. մեր տւած թարգմանութիւնը աւելի իմաստին է համաձայն, քան թէ բառական կազմւածքին. իմաստն այն է որ նրա իսկական (բնական) գեղեցկութիւնը այնքան հրաշալի է, որ ոչ մի արւեստաւոր, ոչ մի վարպետ չէ կարող աւելի գեղեցիկ բան իրագործել։

II. I. 78. *Հզօր Յուպիտէր ...* Շէքսպիր եւ իր ժամանակակից հեղինակները սովորութիւն ունէին հեթանոսական աստւածութիւնները օգնութեան կանչել իրենց գրւածքների մէջ. իսկ Իտալիայում նոյնիսկ ժողովրդի բերանում այդ սովորութիւնը մնացել է։

II. I. 107. *Դուք դուրսը բամբակ, տան մէջ զանգակ էք:* Բնագրի մէջ գրւած է “*Դուք դուրսը պատկեր, տան մէջ զանգակ էք.* մենք գերադաս համարեցինք թարգմանել հայ ժողովրդական ասացւածով. “Տան մէջ երբ մէկը զանգակ է՝ միւսը բամբակ պէտք է լինի„։ Այսինքն երբ մէկը բարկացկոտ է՝ միւսը պէտք է զիջող լինի՝ տան խաղաղութիւնը պահպանելու համար։

II. I. 154. *Որ ծկան պոչը փոխէ գլխի հետ.* Բնագրի մէջ երկու ձկների անուններ կան որոնք անծանօթ են հայ ժողովրդին, եւ որոնց հայերէնը նոյնիսկ ճշդւած չէ. ընդունելով բառգրքերի մէջ տրւած անունները՝ թարգմանութիւնը պէտք է լինէր. “Որ ձողաձկան գլուխը փոխէ լոսդի ձկան պոչի հետ„։ Կրիտիկները, որոնք սովորութիւն ունին Շէքսպիրի ամեն մի բառի մէջ թագուն իմաստներ գտնել, հետեւեալ ձեւով են բացատրում. “Ձողաձկան գլուխ„ նշանակում էր մի յիմար մարդ, եւ առակ էր դարձած արքունիքի մէջ դիրք ունեցող յիմարներին “Ձողաձկան գլուխ„ կոչել. միւս կողմից լոսդի ձկան պոչը համարւում էր աւելի համեղ քան թէ միւս մասերը։ Այժմ, Եագօն որպէս թէ ուզում է ասել, թէ պատւական է այն կինը որ մի համեղ ձկան պոչը — մի խելացի, բայց հասարակ մարդ — կը գերադասէ պալատում ապրող դատարկագլուխներից։ Կան եւ ուրիշ բացատրութիւններ, աւելի եւս հեռուից փնտռւած։ Մեր կարծիքով Շէքսպիր ուզեցել է ասել, եթէ կայ մի կին որ իր բոլոր միւս բարեմասնութիւնների հետ ունենայ այնքան քիչ խելք միայն, որ ձկան գլուխը չը փոխէ պոչի հետ (այստեղ հակադրութիւնը գլխի եւ պոչի մէջ է, ոչ թէ զանազան ձկների), դա նրան բաւական է։ Այս պատճառով է որ մենք աւելորդ համարեցինք ծանրանալ ձկների անունների վրայ։

II. I. 286. *Նա էլ, կարծում եմ, գիշերւայ գդակս իր գլուխն է դրել:* Իմաստն այն է, թէ Կասսիօն էլ նրա կնոջ հետ մտերիմ է եղել. բայց

Անգլիական բնագիրը աւելի անորոշ է. բառացի թարգմանութիւնը կը լինէր, “Կասսիօյից էլ վախենում եմ գիշերուայ գդակիս համար„. իսկ այդ վախը յայտնի չէ անցեալի համար է, թէ ապագայի։ Մենք էլ գերմանական եւ այլ թարգմանիչների հետ յարմար համարեցինք Եագօյի խօսքը անցեալին վերագրել. որովհետեւ այդ կասկածը արդէն շատ տարաժամ, ծիծաղելի կը լինէր եթէ ապագային վերաբերեալ լինէր։

III. I. 4. *Ձեր գործիքները* ... Սա ակնարկութիւն է վեներական հիւանդութեան (Ֆրանկախտ) որ այն ժամանակ Նապոլիտան ախտ էին կոչում, որովհետեւ այդ հիւանդութիւնը երեւան եկաւ Եւրոպայում Նապօլիի պաշարումից յետոյ (1528)։ Այդ հիւանդութիւնից բռնուողները իրենց ձայնը կորցնում էին. դա է խեղկատակին առիթ տալիս հարցնելու թէ գործիքները արդեօք Նապօլիից են գալիս։

III. III. 349. *Ոչ մեկոն եւ ոչ մանդրագոր* ... Մեկոն կամ խաշխաշ այն բոյսն է որից ափիոն են շինում. մեկոնի գլուխները եռացնելով քնաբեր օշարակ են շինում. մանդրագորը մի բոյս է որ հարաւային Եւրոպայում է աճում, եւ նմանապէս քնաբեր յատկութիւն ունի։

III. III. 378. *Այլ եւս Օթէլլօն զբաղմունք չունի*: “Այս բառերը հնչում են որպէս մի մահազանգ։ Մի մարդու նման որ զգում է իր մահուան մօտենալը եւ իր մտաւոր աչքի առաջ վերյուշում է, արագ եւ որոշակի, իր անցած կեանքի բոլոր կարեւոր դէպքերը, նոյնպէս Օթէլլօյի միտքը ցատկում է անտանելի ներկայից դէպի իր անցած ասպարէզի աւելի բերկրալի հեռանկարը, եւ մի րոպէ մի հմայիչ մելամաղձութիւն գալիս է նրա վրայ, եւ մոռացնել է տալիս նրան իր հոգեկան խարշատումը. միայն Եագօյի բառերի վրայ է որ նա նորէն ուշքի է գալիս։„ Հ. Կ. Հարտ։

III. III. 441. *Ես պառկած էի Կասսիօյի կողքին* ... Մեր արդի սովորութիւններին շատ հակառակ է որ տղամարդիկ քովքովի պառկեն. բայց ինչպէս երեւում է հին ժամանակ Անգլիայում դա այնքան էլ անսովոր բան չէր, եւ շատ գրքերում յիշատակութիւն կայ այդ բանի մասին. յամենայն դէպս՝ կարող է դա պահականոցում պատահած լինել, որ այնչափ էլ զարմանալի չէ։

III. III. 480. “Օթէլլօյից դուրս որեւէ ուրիշ մարդու բերանում, այս ծայրայեղ տուայտանքի ծայրագոյն րոպէին՝ երեւակայական յիշողութեան այս պոռթկումը, որ նրա աչքերին եւ ականջներին վերընծայում է Պոնտեան ծովի փայլակնանման փրփուրը եւ աննահանջ որոտը, կարող էր անբնական թւալ, թէեւ վսեմ։ Բայց Օթէլլօն բանաստեղծական հոգի ունի՝ իր հերոսական աւիւնի մէջ փակուած, կամ այսպէս ասենք, նրա ետեւ թաղնուած։ Ունենալով հանդերձ զինուորական աչքի եւ կառավարող ձեռքի բոլոր գործնական պատրաստականութիւնը՝ նա, որոշ րոպէներում, “կազմուած է համակ երեւակայու-

թիւնից„։ Այսպէս է որ, հակառակ այն բոլոր դեւերի, Եագօյի տեսակից, որ դժոխքը կարող է դուրս ուղարկել Դէզդէմոնայի սրած ընտրութեան վրայ շւացնելու համար, մենք հասկանում ենք, մենք զգում ենք Դէզդէմոնայի անբիծ ոգեւորութիւնը Օթէլլօյի հանդէպ, նրա սիրոյ վսեմ եւ արեւապայծառ մաքրութիւնը, նրա անխուսափելի եւ անխոցելի սէրը դէպի իր հերոսը։ Երբ մենք էլ, Դէզդէմոնայի պէս, Օթէլլօյի հոգու մէջ տեսնենք նրա երեսը՝ ապա կը տեսնենք թէ որչափ աւելի մեծութիւն կայ նրա հոգու մէջ, քան թէ ուրիշ հերոսների մէջ։ Այսպիսի մարդու համար նոյնիսկ մի պատանի կարող է ուրախութեամբ եւ շնորհակալութեամբ իր կեանքը զոհել։ Շէքսպիր մեզ շատ ուրիշ բարեկամներ է տուել, որոնց սիրում ենք, խորապէս սիրում, թէեւ ոչ այնքան, որ նրանց նուիրէինք մեր մարմնի բոլոր արցունքները, եւ մեր սրտի բոլոր արիւնը. բայց չը կայ մէկը, որին այնպէս սիրէինք ինչպէս Օթէլլօյին։„ Սուինբըրն։

III. IV. 13. *Քրիստոնէական կը սովորացնեմ:* Երեւի Անգլիացիների մէջ էլ “Քրիստոնէական Վարդապետութեան„ գիրքը, ինչպէս մեր մէջ, հարցերով եւ պատասխաններով է կազմուած եղել։

III. IV. 23. *Կրուզադօն:* Պորտուգալական ոսկի դրամ էր, վրան մի խաչ, որ Շէքսպիրի ժամանակ Անգլիայում ընթացիկ էր, եւ հաւասար էր Անգլիական երեք շիլինգի։

III. IV. 38. *Ծաք եւ տամուկ:* Ըստ Արիստոտէլեան վարդապետութեան աշխարհը բաղկացած էր չորս տարրերից, եւ այդ տարրերը դասաւորուած էին հետեւեալ ձեւով. — պաղ եւ չոր, պաղ եւ խոնաւ, տաք եւ չոր, տաք եւ խոնաւ. այդ յատկութիւնները կոչուած էին առաջին յատկութիւններ, որովհետեւ անմիջապէս տարրերից անցնում էին դէպի նրանցից բաղադրուած իրերը։ Մինչեւ այսօր Պարսիկ եւ Արաբ հէքիմները, որոնց համար Արիստոտէլը դեռ Աւետարան է ինչպէս միջին դարերում, դեղօրայքը բաժանում են վերոյիշեալ դասակարգութեամբ։

III. IV. 81. Դէզդէմոնան իսկապէս հաւատում է թէ թաշկինակը չէ կորել, եւ եթէ մի քիչ փնտռէ՝ կարող է գտնել. բայց Էմիլիան, որ ներկայ էր այս տեսարանին, եւ տեսնում էր թէ իր գողութիւնը ինչ վատ հետեւանք է ունեցել, լռում է մինչեւ վերջ. սա ցոյց է տալիս մէկ կողմից թէ ինչ բարոյականի տէր էր Էմիլիան, եւ միւս կողմից, թէ ինչպէս վախենում էր նա իր ամուսնուց։

IV. I. 17. *Շատ մարդիկ ունին եւ սակայն չունին:* Եագօյի ինքնայատուկ խօսելու ձեւն է այս. (Ար. I, Տես I, 70) Ուզում է ասել, “Շատ մարդիկ թւում են թէ պատիւ ունին, բայց իսկապէս չունին„։

IV. I. 35 – 43. Շէքսպիր այստեղ նկարագրում է Օթէլլի մտային վիճակը խելագարութեան եզերքին հասած։

IV. I. 44—46. *Այսպէս են բռնում դիւրախաբներին։* Այստեղ Եագօն ինքն էլ իր խղճի առաջ խոստովանում է թէ Դեզդեմոնան անմեղ է, եւ հրճւում է որ կարողացել է մի դիւրախաբ մարդու մոլորեցնել եւ մի բոլորովին անմեղ կնոջ այնպէս խայտառակել։ Այս խոստովանութիւնը ապացուցում է Եագօյի սադայէլական բնութիւնը, որ չարիք էր անում չարիքի համար, ոչ թէ իսկապէս վրէժից կամ որեւէ շարժառիթից դրդուած։

IV. I. 59. *Հա՛, ծաղրո՞ւմ ես ինձ։* Օթէլլօն՝ Եագօյի հարցումը, թէ “գլխից վիրաւորուե՞լ էք”, ընդունում է հեգնական մտքով, այսինքն, կոտոշնե՞ր են բուսել ձեր գլխին։

IV. I. 68. *Պիղծ անկողնի մէջ։* Unproper բառը թէ նշանակում է *պիղծ*, եւ թէ *ոչ-սեփական*, ոչ իրենց միայն յատկացուած։

IV. I. 120. *Յաղթանակո՞ւմ ես, Հռովմայեցի՛.* Այս բառերի միտքը շատ յայտնի չէ։ Ջօնսոն ասում է, “Օթէլլօ Կասսիօյին հեգնաբար է Հռովմայեցի կոչում. ասում է, “Հիմա մի Հռովմայեցու պէս յաղթանակո՞ւմ ես”։

IV. I. 146. *Ժանտակուզը.* Դեղնաւուն եւ սեւախառն մորթիով մի փոքրիկ անասուն, որ գարշահոտ է. մորթին գործածւում է մուշտակ շինելու. այս անասունը համարւում էր շատ ցանկամոլ, եւ Շէքսպիր մի քանի անգամ յիշատակել է նրա անունը՝ այդ յատկութեան համար։

IV. I. 263. *Այծե՛ր, կապիկնե՛ր . . .* Օթէլլօյի խելայեղուած երեւակայութիւնը այստեղ յիշում է Եագօյի ասած բառերը (III. III. 428) Դեզդեմոնայի եւ Կասսիօյի մասին։

IV. II. 98. *Սուրբ Պետրոսի ճիշդ հակառակը . . .* Սուրբ Պետրոս արքայութեան դռնապանը լինելով՝ Օթէլլօն ուզում է Էմիլիային ասել թէ նա դժոխքի դռնապանն է։

IV. II. 100. *Առ փող քո քաշած նեղութեան համար։* Իմ տեսած ներկայացումների մէկի մէջ, երբ մի հռչակաւոր դերասան խաղում էր Եագօյի դերում՝ Օթէլլօյի նետած քսակը մնում է գետնի վրայ մինչեւ որ Եագօն՝ Դեզդեմոնայի եւ Էմիլիայի գնալուց յետոյ եւ Ռոդրիգօյի ներս գալուց առաջ՝ նկատում է այն, եւ շտապով վեր է առնում եւ դնում գրպանը։

IV. II. 110. *Որ հարսանիքիս իմ սաւանները . . .* Ժողովրդական մի սնահաւատութիւն է եղել, թէ հարսանեկան սաւանները անկողնի վրայ քաշելը զօրութիւն ունի ամուսնի սառած սէրը նորէն վառելու։

IV. II. 123. Այստեղից երեւում է որ Էմիլիան բանալիի ծակից ականջ է դրել, եւ Օթէլլօյի եւ Դեզդեմոնայի մէջ փոխանակուած բառերը լսել է։

IV. III. 42. Այս երգը Շէքսպիրի հեղինակութիւնը չէ. նա միայն մի քանի փոփոխութիւն է մտցրել։

“Բանաստեղծութեան մէջ ոչ մի բան չէ գրուած աւելի որոտաշարժ քան թէ այն տեսարանը, որ տեղի ունի Դէզդէմոնայի մահից անմիջապէս առաջ. խոստովանում եմ որ աչքերս շուռ եմ տալիս այն խեղճ աղջկանից, երբ նա անհունապէս սրտառուչ կերպով երգում է “Ուեննի՛, ուեննի՛”. կ'ուզէի հարցնել բանաստեղծից թէ նրա ողբերգական աղեղը, որ երբէք չէ վրիպում, արդեօք այս անգամ չափից աւելի խոր չէ՞ թափանցում”: Ֆրանց Հորն:

V. I. 27. *Իմ զրահը:* կարծւում է թէ դա նշանակում է երկաթէ թելերից շինուած ցանցակերպ մի զրահ որ զգեստի տակից էին հագնում: Եագօն լսելով այդ բանը՝ կասսիօյին ոտքից է վիրաւորում:

V. I. 32. *Ես անազնիւըս:* Երեւի այս բառերը Ռոդրիգօն արտասանում է զղջացած լինելով որ Եագօյի պէս սրիկայի խօսքով՝ փորձել է սպանել կասսիօյին: Օթէլլօն լսելով այդ խօսքերը կարծում է թէ կասսիօն է այդ բառերին արտասանողը, եւ ինքն էլ ասում է, “Ճիշդ որ այդպէս է”:

V. II. 1. *Պատճառն է, հոգիս, պատճառը ...* Այս բառերը տեղի են տուել բազմաթիւ մեկնութիւնների, միտքը կրճատ լինելու պատճառով: Օթէլլօ ներս մտնելիս շարունակում է մտմտալ, եւ հաշիւ տալ ինքն իրեն իր անելիքի մասին: “Պատճառն է որ”, ասում է նա ինքն իրեն, “ինձ ստիպում է այս բանն անել”: Եւ երկրորդ տողում աւելի բացատրւում է թէ ինչ է այդ պատճառը. պատճառն այն անյիշելի բանն է, այն լրբութիւնը, որ Օթէլլօ չէ ուզում ողջախոհ աստղերի առաջ անուանել անգամ: Օթէլլօն ուզում է ասել, գուցէ, որ ոչ թէ վրէժից դրդուած ուզում է սպանել իր անհաւատարիմ կնոջը, այլ ուզում է պատճառը — անհաւատարմութիւնը — պատժել: Օթէլլօն հաւատում է որ ինքը մի նախախնամական գործ է կատարում, յանցաւորին պատժելով, ինչպէս նա ասում է այդ բանը յետագայում,

*Ու սպանութիւն կոչել ես տալիս իմ անելիքը,*
*Ինչ որ ողջակէզ համարում էի:*

Բայց կան կրիտիկներ որոնք ուրիշ մեկնութիւններ են առաջարկում Մեր կարծիքով վերոյիշեալ բացատրութիւնը ամենէն հաւանականն է:

V. II. 7. *Լոյսը հանգցնեմ, եւ յետոյ ... լոյսը հանգցընեմ ..*: Որպէս զի Դէզդէմոնայի գեղեցկութեան եւ անմեղութեան տեսքը չը խախտէ իր կամքը՝ Օթէլլօն ուզում է նախ լոյսը հանգցնել, եւ ապա, Դէզդէմոնայի լոյսը հանգցնել = կեանքը խաւարացնել:

V. II. 14. *Երբ վարդը քաղեմ ...* կան բնագիրներ որոնց մէջ գըրուած է վարդը, այսինքն գեղեցկութեան վարդը:

V. II. 100. *Այսպէս, այսպէս ...* Այս բառերից յետոյ, իբրեւ բեմական գործողութեան հրահանգ՝ նորագոյն հրատարակութիւնների մէջ գրուած է “*դաշոյնով սպանում է*”: Բայց Շէքսպիրի գործերի հին հրատա-

ըսկութիւնների մէջ ոչ մի յիշատակութիւն չը կայ այս մասին. միայն 1770ին Գարրիք հռչակաւոր դերասանը “*Այսպէս, այսպէս* բառերն ասելիս՝ դաշոյնով սպանում է Դեզդեմոնային։ Թէ Շէքսպիրի ժամանակ դերասանները ինչպէս էին խաղում, եւ վերոյիշեալ բառերն արտասանելիս Օթէլլօն կրկին անգամ խեղդո՞ւմ էր Դեզդեմոնային, թէ դաշոյնով էր զարկում, ապացուցուած չէ։ Կայ մի գրուածք որ ասում է թէ Բըրբէջ (Շէքսպիրի ընկերն եւ նրա ժամանակ Օթէլլօյի դերակատարը) “իր սեւ ձեռքերը ներկում էր արիւնով„. բայց այս գրուածքի հնութիւնը վէճի ենթակայ լինելով՝ չէ կարելի այս վկայութիւնը արժէքաւոր համարել։ Գարրիք այն պատճառով է դաշոյնի դիմում, որ այլապէս անկարելի է բացատրել թէ Դեզդեմոնան մի անգամ խեղդուելուց յետոյ ինչպէս էր կարող կրկին ուշքի գալ, եւ խօսել. ուրեմն պէտք էր ենթադրել որ նա բոլորովին խեղդուած չէ եղել, եւ Օթէլլօն գթալով նրա տանջուելու վրայ, ուզեցել է դաշոյնով նրա կեանքին վերջ տալ. բացի դրանից տեսարանի վերջում (Տող. 286) Օթէլլօն նայելով մեռած Դեզդեմոնայի երեսին՝ ասում է “Երեսդ շապկիդ պէս գունատ է„. այն ինչ խեղդուած մարդու երեսը չէ կարող գունատ լինել, եւ դրանից Գարրիք հետեւցրել է թէ “Այսպէս, այսպէս„ բառերը նշանակում են թէ Օթէլլօն դաշոյնով սպանում է Դեզդեմոնային, եւ արիւնը գնալու պատճառով է որ սա նորից ուշքի է գալիս եւ ապա դէմքը գունատւում է։ Այնուհետեւ շատ հրատարակիչներ եւ հռչակաւոր դերասաններ այս գաղափարն ընդունել են։ Այս թէօրիայի դէմ առարկում են որ Օթէլլօն մի րոպէ առաջ իր մենախօսութեան ժամանակ ասում է, “*Չեմ ուզում խազել ձիւնից աւելի սպիտակ մորթը*„։ Երկրորդ, եթէ դաշոյնով սպանուած լինէր, չէր կարող նրա շապիկը սպիտակ մնացած լինել, այլ թաթախուած արիւնից կարմրած կը լինէր։ Երրորդ՝ նոյն տեսարանի մէջ (Տող. 215) Օթէլլօն Գրացիանոյին ասում է, “Եւ նրա շունչը հէնց այս ձեռքերը այժըմ կտրեցին„։ Եւ վերջապէս՝ եթէ Շէքսպիր կամեցած լինէր որ Դեզդեմոնայի մահը դաշոյնի միջոցով կատարուէր՝ բեմական հրահանգների մէջ այդ մասին յիշուած կը լինէր։ Երկու բանակներն էլ բնագրից փաստեր են բերում, եւ մեր կարծիքով, խնդիրը մնում է անլուծելի։

V. II. 134. “Չէի կամենայ Դեզդեմոնայի ասած վերջին բառը սուտ կոչել, ոչ էլ մի “ազնիւ սուտ„. սովորաբար այս արտակումը շատ անտեղի կերպով շռայլում են։ Դեզդեմոնայի մեռնելուց առաջ ասած այս սուտը երկնային ճշմարտութիւն է, այնքան ազնիւ, որ չը պէտք է ենթարկւի որ եւ է երկրային բարոյականութեան օրինագրքի„։ Ֆրանց Հորն։

V. II. 369. *Քան Արաբիայի ծառերը՝ իրենց բուժարար խէժը:* “Այս փոխաբերութիւնը առնուած է Պլինիոսից, որի մէջ գրուած է, “Ասում են Արաբիայի շատ տեղերում որոշ ծառեր կան, որոնք իրենցից մի տեսակ հեղուկ են թողում, որ կոչւում է ստաշխ, եւ շատ լաւ դմուռս է։ Պլինիոս իր

գրքի մի այլ մասում խօսում է ուրիշ խեժերի վրայ որ գործ է ածւում բժշկութեան մէջ։" Հարտ։

V. II. 370. "Վենետիկցիները վաղուց ի վեր Ալէպպօյում Թուրքերի եւ Հայերի հետ վաճառականութիւն են ունեցել, եւ այդ բանը իրենց համար մենաշնորհ էին շինել, մի բան որ շատ տհաճելի էր Լոնդոնի վաճառականներին։" Հարտ։ — Սըր Անտոն Շէրլի իր ճամբորդական պատմութիւնների մէջ (1599) ասում է, "Թուրքիայում մի օրէնք կայ, որ եթէ մի քրիստոնեայ մի Թուրքի զարկէ, կամ պէտք է ինքը Թուրք դառնայ, կամ պէտք է նրա աջ բազուկը կտրւի"։

V. II. 380. *Սպարտացի շուն*։ Սպարտացի շները դասական ժամանակներից ի վեր համբաւաւոր են բանաստեղծութեան մէջ. յիշւած են Սոփոկլէսի, Վիրգիլիոսի եւ Օվիդիոսի մէջ. դասական յիշատակութիւնը նրանց արագութեան եւ սուր հոտառութեան մասին է։ Ուրիշներ խօսում են նրանց վայրագութեան եւ դաժանութեան մասին։ Սինգէր կարծում է որ այստեղ Եագօյի լռութեան մասին է ակնարկւած՝ Սպարտացիները համբաւաւոր լինելով իրենց լռութեամբ տանջանքի տակ։ Հարտ գտնում է որ այս վերջին կարծիքը չէ կարող ճիշդ լինել, որովհետեւ ներկայ հանգամանքում, որեւիցէ հիացման արտայայտութիւն դէպի Եագօն անտեղի կը լինէր։



# ՅԱՒԵԼՒԱԾ

## "ՕԹԷԼԼՕՅԻ„ ԱՂԲԻՒՐԸ

### ՊԱՏՄՒԱԾՔ ՋԷՐԱԼԴԻ ՉԻՆԹԻՕՅԻ

*Ժամանակով Վենետիկում ապրում էր մի Մաւր, շատ քաջ եւ գեղեցիկ մի մարդ, որ ռազմական խնդիրներում իր ցոյց տուած մեծ ընդունակութեան եւ խոհեմութեան պատճառով՝ շատ յարգուած էր Հանրապետութեան Սինիօրներից, որոնք սովոր էին վարձատրել հերոսական քաջագործութիւնները, որովհետեւ դրանով նրանք ծառայում էին Պետութեան շահերին։ Այնպէս պատահեց որ մի առաքինի եւ հրաշալի գեղեցիկ օրիորդ, Դիզդէմոնա անունով, սիրահարուեց այս Մաւրին, ոչ թէ կանացի ցանկութիւնից, այլ մանաւանդ Մաւրի արիութեան պատճառով. Մաւրն էլ Դիզդէմոնայի գեղեցկութիւնից եւ ազնիւ գաղափարներից յափշտակուելով՝ վերադարձրեց նրա սէրը։ Օրիորդի ծնողները շատ աշխատեցին նրան ուրիշի հետ ամուսնացնել, բայց նա մերժեց եւ ամուսնացաւ Մաւրի հետ, եւ նրանք սիրով ապրում էին Վենետիկում։*

*Այդ ժամանակ այնպէս պատահեց որ Վենետիկի Սինիօրները որոշ փոփոխութիւններ արին այն զօրախումբերի մէջ, որ նրանք սովորաբար պահում էին Կիպրոսում, եւ Մաւրին նշանակեցին հրամանատար Կիպրոսի զօրքի որ ուզում էին ուղարկել այնտեղ։ Մաւրը, թէեւ սաստիկ ուրախացած այս պատւից, որովհետեւ այսպիսի պաշտօն տրւում էր միայն ազնուական, ընդունակ եւ հաւատարիմ մարդկանց, որոնք ծանօթ էին իրենց քաջութեամբ, այնու ամենայնիւ սկսաւ վարանման մէջ ընկնել՝. մտածելով ճամբորդութեան երկարութեան եւ վտանգների մասին, եւ վախենալով որ Դիզդէմոնան տխուր կը լինէր նրա բացակայութեան պատճառով։ Բայց Դիզդէմոնան, որ Մաւրից զատ ուրիշ երջանկութիւն չունէր աշխարհում.*

եւ ուրախանում էր տեսնելով որ իր ամուսնի քաջութիւնը գնահատուած էր այնպիսի զօրաւոր եւ ազնիւ մի Հանրապետութեան կողմից՝ բոլորովին անհամբեր սպասում էր այն ժամին, երբ իր ամուսինը իր զօրքով նաւ պիտի նստէր, եւ շատ մեծ փափաք ունէր նրան ընկերանալու դէպի նրա պաշտօնատեղին։ Այդ պատճառով շատ տխուր էր տեսնելով որ Մաւրը մտատանջութեան մէջ էր, եւ մի օր ճաշի ժամանակ նրան ասաց, “ի՞նչպէս է, սիրելիս, որ Սինիօրիան քեզ այսպիսի մի պատուաբեր պաշտօն է յանձնել, եւ դու այդպէս մելամաղձոտ ես„։ Մաւրը պատասխանեց, “Թէեւ ուրախ եմ այսպիսի պատուի արժանանալուս համար, բայց ուրախութիւնս խանգարւում է քո սիրոյ պատճառով, որովհետեւ տեսնում եմ որ պէտք է այս երկու բանից մէկը պատահի. կամ պէտք է քեզ ինձ հետ տանեմ, եւ ծովի վտանգներին ենթարկեմ, եւ կամ, այդ վտանգներից զերծ պահելու համար, պէտք է քեզ Վենետիկ թողնեմ։ Առաջինը չէ կարող ինձ մտահոգութիւն չը պատճառել, որովհետեւ ամեն յոգնութիւն որ դու կրես, եւ ամեն վտանգ, որ քեզ պատահի, ինձ վերին աստիճանի պիտի նեղէ։ Երկրորդը, այսինքն քեզ այստեղ թողնելը, ինձ իմ սեփական աչքիս ատելի կը դարձնէ, որովհետեւ քեզնից բաժանուիլ, նշանակում է կեանքիցս բաժանուիլ։

Դիզդէմոնան՝ այս բանը լսելով՝ պատասխանեց, “Սիրելի՛ս, դրանք ի՞նչ մտքեր են որ պտտւում են քո գլխում. ի՞նչու ես թոյլ տալիս որ այդպիսի բաներ քեզ վրդովեն. ես քեզ կ'ընկերանամ ուր էլ որ երթաս, թէկուզ պէտք լինէր կրակի միջից անցնել, ո՛ւր մնաց մի ապահով եւ հանգիստ նաւի մէջ նստած՝ ջրի վրայ ճամբորդել. եթէ իսկապէս վտանգներ եւ յոգնութիւններ կան, ես էլ ուզում եմ մասնակից լինել։ Պէտք է ինձ շատ քիչ սիրես, որ ուզենաս ինձ այստեղ Վենետիկ թողնել եւ զրկել քո ընկերութիւնից, կամ թէ մտածես որ ես աւելի կը սիրէի այստեղ ապահով ապրել, քան թէ քո վտանգներին բաժնեկից լինել։ Պատրաստուիր ուրեմն ճամբորդելու ամենայն փութով, ինչպէս վայել է քո ունեցած դիրքին„։ Մաւրը ուրախութիւնից գրկեց իր կնոջը եւ մի գորովալից համբոյրով աղաղակեց, “Աստուած քեզ երկար պահէ այսպիսի սիրով, իմ սիրելի կին„։ Յետոյ փութով հագնելով իր զրահը, ամեն բան արդէն պատ-

րաստած լինելով ճամբորդութեան համար, մնաց ռազմանաւը իր կնոջ եւ բոլոր զօրքի հետ, եւ առագաստ պարզելով ճանապարհ ընկաւ, եւ բոլորովին հանդարտ ծովով ողջառողջ հասաւ Կիպրոս։

Այդ զօրքի մէջ մի Դրօշակիր (Alfiero) կար, որ թէեւ դէմքով գեղեցիկ, բայց բնաւորութեամբ ամենասրիկայ մարդկանցից մէկն էր։ Մաւրը նրան շատ էր սիրում, ոչ մի գաղափար չունենալով նրա չարութեան մասին. որովհետեւ նա, հակառակ իր գարշելի հոգուն՝ իր խրոխտ եւ մեծաբարբառ խօսքերով եւ արտաքին ձեւերով այնպէս թաքցնում էր իր ներքինը, որ ինքզինքը ներկայացնում էր որպէս մի նոր Հեկտոր կամ մի նոր Աքիլլէս։ Այս մարդն էլ իր կնոջը իր հետ Կիպրոս էր տարել. սա մի մանկահասակ, գեղեցիկ եւ առաքինի կին էր, եւ Իտալուհի լինելով՝ Մաւրի կինը նրան սիրում էր եւ օրւայ մեծ մասը նրա հետ էր անց կացնում։

Նոյն զօրախումբի մէջ կար նաեւ մի Հարիւրապետ, որին նոյնպէս Մաւրը սիրում էր. եւ Դիզդեմոնան, իմանալով այս բանը՝ ինքն էլ նրան ամեն տեսակ բարեկամութիւն էր ցոյց տալիս։ Աւազակ Դրօշակիրը՝ հակառակ այն հաւատարմութեան որ ուխտել էր իր կնոջը, եւ այն պարտականութեան որ ունէր Մաւրի հանդէպ՝ ամենախիստ կերպով սիրահարւեց Դիզդեմոնային, եւ միտքը դրաւ անպայման ձեռք բերել նրան. բայց չէր համարձակում իր սէրը բաց կերպով յայտնել Դիզդեմոնային, վախենալով որ եթէ Մաւրը իմանայ, կարող է նրան իսկոյն սպանել։ Այդ պատճառով նա փորձեց զանազան ձեւերով եւ գաղտնի միջոցներով տիկնոջը ցոյց տալ որ նրան սիրում է. բայց Դիզդեմոնան, որ Մաւրից դուրս ոչ ոքի վրայ չէր մտածում, ուշ չէր դարձնում ոչ Դրօշակիրի, ոչ էլ որ եւ է այլ մարդու վրայ։ Այնպէս որ ամեն միջոցները որ Դրօշակիրը գործ դրաւ նրա սէրը ձեռք բերելու համար ունայն անցան, որպէս թէ երբէք փորձած չը լինէր։ Դրօշակիրը սկսաւ երեւակայել որ իր անյաջողութեան պատճառն այն է, որ Դիզդեմոնան սիրում է Հարիւրապետին, եւ հնարքներ մտածեց նրան մէջտեղից վերացնելու համար։ Այժմ նրա սէրը դէպի Դիզդեմոնան՝ փոխւեց ամենաժանտ ատելութեան. եւ ինքն անյաջող դուրս եկած լինելով՝ իր բոլոր ջանքը գործ դրաւ Հարիւրապետին սպանելու եւ նոյն ժամանակ Դիզդեմոնային Մաւրի աչքից

ձգելու։ Ամեն տեսակ սրիկայական հնարքներից յետոյ՝ վճռեց մեղադրել Դիզդէմոնային անհաւատարմութեան մէջ, եւ ամբաստանել Հարիւրապետին որպէս նրա սիրականը. բայց իմանալով Մաւրի սէրը դէպի Դիզդէմոնան, եւ բարեկամութիւնը դէպի Հարիւրապետը, որոշեց սպասել մի յարմար առիթի՝ Մաւրի սրտում կասկած ձգելու համար։

Շատ չանցաւ որ Հարիւրապետը մի օր պահակ զինուորներից մէկի վրայ սուրը քաշած եւ նրան վիրաւորած լինելով՝ Մաւրը նրան աստիճանից զրկեց։ Դիզդէմոնան այս բանից շատ վշտացաւ, եւ շատ անգամներ փորձեց իր ամուսնուն հաշտեցնել Հարիւրապետի հետ։ Մաւրն այս բանը պատմեց սրիկայ Դրօշակիրին, եւ ասաց թէ ինչպէս իր կինը ստիպում է նրան Հարիւրապետի հետ հաշտուիլ, եւ թէ ինքը վախենում է թէ վերջ ի վերջոյ պարտաւորուելու է նրան յետ տալ իր պաշտօնը։ Այս բանի վրայ՝ Դրօշակիրը վճռեց գործի սկսել, եւ ակնարկութիւններ անել, որպէս թէ Դիզդէմոնան առանձին պատճառներ ունի այդ բանը խնդրելու համար։ Մաւրը հարցափորձ արաւ թէ ինչու է նա այդպէս կարծում, բայց Դրօշակիրը միշտ խոյս տուաւ ասելով թէ “չեմ ուզում մտնել մարդու ու կնոջ մէջ. լաւ է ինքներդ աչք բանաք եւ տեսնէք”։ Սրանից աւելի ոչինչ չուզեց ասել։ Մաւրը ընկաւ մտատանջութեան մէջ. Դրօշակիրի խօսքերը սուր փուշի պէս խրուեցան նրա սրտում. եւ մի օր երբ նրա կինը աշխատում էր նրան համոզել որ Հարիւրապետին յետ կանչէ, ասելով թէ նա եւ այն զինուորը, որին զարկել էր, արդէն հաշտուել են, Մաւրը բարկացաւ եւ ասաց “Երեւի առանձին մի պատճառ ունիս, Դիզդէմոնա, այս մարդուն այդքան պաշտպանելու համար։ Եղբա՞յրդ է, ազգակա՞նդ է, ի՞նչդ է որ սրտիդ այդքան մօտ է”։ Դիզդէմոնան պատասխանեց թէ ոչ մի ուրիշ պատճառ չունի նրան այնպէս պաշտպանելու համար, եթէ ոչ այն, որ ցաւում է տեսնելով որ իր ամուսինը այնպիսի հաւատարիմ մի բարեկամ կորցնում է մի չնչին յանցանքի համար։ Այս վէճից յետոյ՝ Մաւրը նորէն սկսաւ Դրօշակիրի խօսքերի վրայ մտմտալ եւ սաստիկ մելամաղձոտ դարձած՝ դիմեց նրան եւ խնդրեց որ նա աւելի պարզ կերպով իր իմացածն ասէ։ Դրօշակիրն այս անգամ, շատ խորամանկ ձեւերով սկսաւ համոզել Մաւրին, որ Դիզդէմոնան իր անձնական հաճոյքի համար է Հարիւրապետի հա-

մար միջնորդում, մանաւանդ որ նա արդէն զզուել է իր ամուսնու սեւութիւնից։

Այս բառերը խոցոտեցին Մաւրի սիրտը. բայց որպէս զի ստիպէ Դրօշակիրին աւելի պարզ յայտնութիւններ անել (քանի որ հիմա հաւատում էր թէ նրա ասածները ճշմարիտ են) խոժոռ նայւածքով նրան ասաց. “Ուզում եմ այս ձեռքովս լեզուդ դուրս քաշել, որ համարձակւում է իմ կնոջն այդպէս զրպարտել”։ Դրօշակիրը պատասխանեց. “Արդէն իմ այս հաւատարմութեան փոխարէն ուրիշ վարձ չէի սպասում. բայց որովհետեւ պարտականութիւնս եւ ձեր պատւի համար ունեցած հոգածութիւնս ինձ այսքան հեռու են տարել, ստիպւած եմ կրկնել որ այն, ինչ որ իմ շրթունքից լսեցիք, իսկ եւ իսկ ճիշդ է. եւ եթէ տիկինը, ցոյց տալու համար թէ ձեզ սիրում է, ձեր աչքերը այնպէս կուրացրել է, որ չէք տեսնում ինչ որ պէտք է տեսած լինէիք՝ դա պատճառ չէ որ ես ճշմարտութիւնը չասեմ։ Հարիւրապետն ինքն է ինձ բոլորը պատմել, որովհետեւ մարդիկ կան որոնք իրենց բախտաւորութիւնը կատարեալ չեն համարում, եթէ ուրիշներին չը պատմեն. եւ եթէ ես ձեր բարկութիւնից չը վախենայի՝ հէնց այս րոպէին երբ ինձ պատմեց՝ վարձը ձեռքը կը դնէի, եւ նրան կը սպանէի, եւ իսկապէս էլ նա արժանի էր դրան։ Բայց քանի որ ձեզ տեղեկութիւն տալը մի բանի մասին, որ աւելի ձեզ է վերաբերում քան թէ որ եւ է ուրիշի՝ ինձ այսպիսի վարձ է տալիս, որին արժանի չէի, երանի թէ ոչինչ ասած չը լինէի, որով ձեր բարկութեանը տեղի չէի տայ”։

Սրա վրայ՝ Մաւրը բոլորովին զայրացած՝ ասաց, “Եթէ ինձ աչքով տեսնել չը տաս ասածդ, գլուխդ վկայ, քեզ ցոյց կը տամ որ քեզ համար աւելի լաւ կը լինէր որ համր ծնւած լինէիր”։

Չարագործը պատասխանեց, “Այդ բանը շատ դիւրին կը լինէր այն ժամանակ երբ նա յաճախում էր ձեր տունը. բայց հիմա որ նրան հեռացրել էք, ոչ թէ նրա իսկական յանցանքի, այլ մի թեթեւ բանի համար՝ դժւար կը լինի ինձ ճշմարտութիւնը հաստատել. բայց այնու ամենայնիւ յոյս ունիմ որ ձեր աչքով տեսնել կը տամ ձեզ այն բանը, որին չէք ուզում հաւատալ իմ շրթունքից”։ Այս խօսքի վրայ նրանք իրարուց բաժանւեցան։

Անբախտ Մաւրը՝ սիրտը ներտահար՝ վերադարձաւ տուն, սպասելով այն օրւան երբ Դրօշակիրը նրան պէտք է ցոյց տար մի բան, որ նրան պիտի դժբախտացնէր մինչեւ կեանքի վերջը։ Բայց չարագործ Դրօշակիրը նոյնչափ մտատանջութեան մէջ էր՝ գիտենալով Դիզդէմոնայի առաքինութիւնը, եւ տեսնում էր որ անկարելի է մի միջոց գտնել իր ասած սուտը հաւատալի դարձնելու համար, եւ իր գլխի մէջ խնդիրը ամեն կողմ շուռ տալով՝ վճռեց մի նոր խարդաւանքի դիմել։ Դիզդէմոնան սովոր էր յաճախ գնալ Դրօշակիրի կնոջ տունը, եւ օրւայ մեծ մասը նրա հետ անց կացնել։ Դրօշակիրը նկատել էր որ նա ձեռքին մի թաշկինակ ունէր շատ նուրբ բանուածքով, Մաւրական ոճով ասեղնագործուած. նա գիտէր որ Մաւրն էր այդ թաշկինակը իր կնոջն ընծայել, եւ կինը սաստիկ սիրում էր այն, ոչ նուազ քան թէ Մաւրն ինքը։ Դրօշակիրը մտածեց որ այդ թաշկինակը գողանայ, եւ դրանով մի որոգայթ լարէ Դիզդէմոնայի դէմ։ Նա մի փոքրիկ աղջիկ ունէր, երեք տարեկան, որին Դիզդէմոնան շատ սիրում էր։ Մի օր, երբ տարաբախտ կինը գնացել էր այն թշուառականի տունը, Դրօշակիրը իր փոքրիկ աղջկան առաւ գիրկը եւ տարաւ Դիզդէմոնայի առաջ պահեց։ Դիզդէմոնան նրան հօր գրկիցն առաւ եւ սեղմեց իր կրծքին. իսկ այդ ժամանակ այն դաւաճանը, որ ձեռքի մեծ ճարպիկութիւն ունէր, այնպէս վարպետութեամբ թաշկինակը նրա ձեռքի քսակից դուրս քաշեց, որ խեղճ կինը ոչինչ չը նկատեց։ Յետոյ Դրօշակիրը ուրախացած գնաց դուրս։

Դիզդէմոնան, առանց նկատելու որ թաշկինակը գողացուած է, վերադարձաւ տուն, եւ ուրիշ մտքերով զբաղուած լինելով՝ բոլորովին մոռացաւ։ Մի քանի օր յետոյ փնտռելով եւ չը գտնելով՝ երկիւղի մէջ ընկաւ, թէ մի՛ գուցէ Մաւրը թաշկինակը նրանից ուզէ, ինչպէս յաճախ անում էր։ Աւազակ Դրօշակիրը մի յարմար առիթ գտնելով՝ գնաց Հարիւրապետի տունը, եւ նենգ չարամտութեամբ թաշկինակը ձգեց նրա անկողնի գլխին։ Հարիւրապետը յաջորդ օրը միայն նկատեց, երբ անկողնից ելնելով՝ թաշկինակն ընկաւ գետին, եւ նա ոտքը դրաւ վրան։ Չը կարողանալով երեւակայել թէ դա ո՛րտեղից էր իր տունն ընկել, եւ գիտենալով թէ Դիզդէմոնայինն է պատկանում՝ ուզում էր նրան յետ տալ. եւ սպասելով մինչեւ Մաւրը տնից դուրս երթար՝

գնաց Մաւրի տան ետեւի դուռը զարկեց։ Կարծես թէ բախտը դաւակից էր Դրոշակիրի հետ այն տարաբախտի մահը յաջողեցնելու համար. Ճիշդ այդ ժամին Մաւրը վերադարձել էր տուն, եւ լսելով որ ետեւի դուռը զարկում են՝ գնաց լուսամուտի առաջ եւ բարկացած հարցրեց թէ ո՞վ է զարկում։ Հարիւրապետը լսելով Մաւրի ձայնը եւ վախենալով թէ մի՛ գուցէ նա ցած գայ եւ յարձակւի նրա վրայ՝ սկսաւ փախչել առանց ոչինչ պատասխանելու։ Մաւրը իջաւ ցած, եւ դուռը բանալով ելաւ փողոցը, եւ սկսաւ իր շուրջը նայել, բայց ոչ ոքի չը գտաւ։ Շատ բարկացած տուն վերադառնալով՝ իր կնոջից հարցրեց թէ ո՞վ էր դուռը զարկողը։ Տիկինը պատասխանեց թէ չը գիտէ, եւ իսկապէս էլ չը գիտէր։ Մաւրն ասաց, "կարծեմ Հարիւրապետն էր„։ "Չը գիտեմ, ասաց կինը, նա էր թէ ուրիշը։„ Մաւրը իր բարկութիւնը զսպեց, չուզելով ոչինչ անել առանց Դրոշակիրից խորհուրդ հարցնելու, եւ իսկոյն գնաց նրա մօտ, եղածը պատմեց եւ խնդրեց որ նա Հարիւրապետից այս մասին խօսք դուրս քաշէ։ Դրոշակիրը այս դէպքից սաստիկ ուրախացած՝ խոստացաւ որ կ'անէ։ Մի օր նա խօսք բաց արաւ այդ մասին Հարիւրապետի հետ մի այնպիսի տեղում, որ Մաւրը կարող էր տեսնել նրանց եւ լսել նրանց խօսակցութիւնը. Եւ այն ինչ նա բոլորովին ուրիշ բաների մասին էր խօսում Հարիւրապետի հետ, ոչ թէ Դիզդէմոնայի մասին, ինքը բարձրաձայն ծիծաղում էր, եւ զարմանք էր ցոյց տալիս, եւ գլխով ու ձեռքով շարժումներ էր անում, որպէս թէ մի զարմանալի բան է լսում։ Երբ Մաւրը տեսաւ որ Հարիւրապետը գնաց՝ մօտեցաւ Դրոշակիրին եւ հարցրեց թէ նա ինչ էր ասում։ Դրոշակիրը երկար ժամանակ մերժողական ձեւեր անելուց յետոյ՝ ի վերջոյ ասաց, "Նա ինձնից ոչինչ չը ծածկեց, եւ ինձ ասաց թէ սովորութիւն ունի ձեր կնոջն այցելել ամէն անգամ երբ դուք տնից դուրս էք գնում, եւ թէ վերջին անգամ ձեր կինը նրան ընծայել է այն թաշկինակը որ դուք նրան տուել էք ամուսնանալիս„։

Մաւրը շնորհակալութիւն յայտնեց Դրոշակիրին. Նա համոզուած էր, որ եթէ տեսնէ թէ Դիզդէմոնան այն թաշկինակը ձեռքից տուել է, ապա Դրոշակիրի բոլոր ասածները ճիշդ են։ Մի օր ընթրիքից յետոյ զանազան նիւթերի վրայ իր կնոջ հետ խօսելով թաշկինակը

խնդրեց։ Տարաբախտ կինը, որ վախենում էր այս բանից, կրակի պէս կաս-կարմիր դարձաւ; եւ իր կարմրութիւնը թաքցնելու համար, ինչ որ Մաւրն արդէն նկատել էր, վազեց դէպի մի տուփ, եւ ձեւացրեց որպէս թէ թաշկինակն է որոնում, եւ երկար ժամանակ փնտռելուց յետոյ՝ ասաց. “Չը՛ գիտեմ ի՛նչ է եղել, հիմա չեմ կարողանում գտնել. չը լինի՞ թէ ինքդ ես վերցրել„։ Մաւրը պատասխանեց. “Եթէ ես վերցրած լինէի՝ ինչո՞ւ քեզնից կ՚ուզէի. բայց մի ուրիշ անգամ աւելի ուշադրութեամբ կը փնտռես„։

Սենեակից ելնելով՝ Մաւրը սկսաւ մտածել թէ իր կնոջը ինչ-պէս կարող է սպանել, նոյնպէս եւ Հարիւրապետին, այնպէս որ չի-մացուի որ ինքն է սպանել։ Այն ինչ նա գիշեր եւ ցերեկ այս բանի վրայ էր մտածում՝ կինը նկատեց որ իր ամուսինը իր հետ այնպէս չէ վարւում, ինչպէս սովոր էր. եւ մի քանի անգամ նրանից հարց-րեց թէ, “Ի՞նչ է պատահել քեզ, որ դու, որ աշխարհի ամենա-ուրախ մարդկանցից մէկն էիր, հիմա այսպէս մելամաղձոտ ես դարձել„։

Մաւրը զանազան պատճառներ հնարեց իր կնոջը պատասխան տալու համար, բայց կինը չը բաւականացաւ դրանցով, եւ թէեւ գի-տակից էր թէ ինքն է տեղիք տուել Մաւրի այս տխրութեանը՝ բայց դարձեալ սկսաւ կասկածել թէ մի՞ գուցէ Մաւրը, միշտ նրա հետ լինելով, ձանձրացել է նրանից, եւ Դրօշակիրի կնոջն ասաց, “Չը գիտեմ ինչ անեմ Մաւրին. նա այնպէս սիրով էր ինձ հետ, բայց այս մի քանի օրւայ մէջ նա բոլորովին ուրիշ մարդ է դարձել. եւ շատ եմ վախենում որ ես մի օրինակ եմ դառնալու աղջիկների հա-մար, որ իրենց ծնողների կամքի հակառակ չամուսնանան, եւ Իտա-լուհիներն ինձնից պէտք է սովորեն որ չամուսնանան այնպիսի մարդու հետ, որին բնութիւնը, եւ երկինքը, եւ կենցաղավարութիւնը զանազանել են մեզնից։ Բայց գիտեմ որ Մաւրը ամուսնուդ հետ շատ մտերիմ է, եւ իր բոլոր գործերը նրան պատմում է. խնդրում եմ ուրեմն, որ եթէ մի բան լսել ես քո ամուսնուց որ կարող ես ինձ ասել, չը ծած-կես ինձնից„։ Այս ասելիս՝ նա դառնապէս լաց էր լինում։ Դրօշակիրի կինը ամէն բան գիտէր, որովհետեւ նրա ամուսինը նրան յայտնել էր որ նրա գործակցութիւնն էր ուզում Դիզդէմոնային սպանել տալու համար։ Այս բանին նա իր յօժարութիւնը չէր տուել, բայց իր ա-

մուսնու վախից չը համարձակուեց ոչ մի բան յայտնել, եւ բաւականացաւ ասելով, “Զգոյշ կացէք որ կասկածի տեղիք չը տաք ձեր ամուսնուն, եւ ամեն միջոցով ցոյց տուէք նրան ձեր հաւատարմութիւնը եւ սէրը„: Դիզդէմոնան պատասխանեց, “Ես էլ այդպէս եմ անում, բայց անօգուտ„:

Այդ բոլոր ժամանակ՝ Մաւրը ամեն ջանք գործ էր դնում որ ստուգէ այն, ինչ որ շատ կ՚ուզէր որ անհիմն դուրս գար, եւ Դրօշակիրից խնդրեց որ մի բան անէ որ ինքն իր աչքով Թաշկինակը Հարիւրապետի ձեռքին տեսնէ: Թէեւ այս բանը շատ դժուար էր այն չարագործի համար՝ այնու ամենայնիւ խոստացաւ ամեն միջոց գործ դնել, որով Մաւրին առիթ տայ իր կասածի ճշմարտութիւնը ստուգելու:

Հարիւրապետը՝ մի կին ունէր իր տանը, որ հրաշալի կերպով ասեղնագործել գիտէր, եւ տեսնելով Մաւրի կնոջ Թաշկինակը՝ վճռեց որ վերադարձնելուց առաջ նրա երեսից օրինակէ: Այն ինչ նա զբաղուած էր այս աշխատութեամբ՝ Դրօշակիրը նկատեց որ նա նստում է մի պատուհանի առաջ, այնպէս որ փողոցից անցնողները կարող են նրան տեսնել, եւ Մաւրին տարաւ եւ ցոյց տուաւ այս բանը, որից յետոյ Մաւրը համոզուեց որ իր կինը նրան դրժում է: Ապա Դրօշակիրի հետ որոշեց Դիզդէմոնային եւ Հարիւրապետին սպանել, նրանց հետ վարուելով այնպէս ինչպէս արժանի էին. եւ խնդրեց Դրօշակիրից, որ նա սպանէ Հարիւրապետին՝ խոստանալով որ յաւիտեան երախտապարտ կը մնայ այս բանի համար: Դրօշակիրը նախ մերժեց այսպիսի վտանգաւոր մի բան ձեռնարկել, քանի որ Հարիւրապետը նոյնքան ճարպիկ եւ քաջասիրտ մարդ էր, որքան ինքը. բայց երբ Մաւրը նրան շատ խնդրեց եւ աղաչեց, եւ շատ դրամ տուաւ՝ նա խոստացաւ փորձել արկածը:

Այսպէս վճռելուց յետոյ մի մութ գիշեր Դրօշակիրը տնից դուրս գնալով հանդիպեց Հարիւրապետին՝ երբ սա դուրս էր գալիս մի հասարակաց կնոջ տնից, եւ սուրը քաշելով նրան մի հարուած հասցրեց աջ զիստից, որ նրա ոտքը կտրեց եւ նրան գետին թաւալեց: Դրօշակիրն պատրաստւում էր նորէն մի հարուած տալ նրան եւ կեանքին վերջ դնել՝ երբ Հարիւրապետը, որ մի քաջասիրտ մարդ էր

եւ սովոր էր արիւն եւ մահ տեսնելու, սուրը դուրս քաշեց, եւ չը նայելով իր վիրաւորուած լինելուն՝ սկսաւ պաշտպանուիլ եւ բարձրաձայն գոռալ “մարդասպանութի՛ւն”: Տեսնելով որ ամեն կողմից մարդիկ օգնութեան են վազում, նոյնպէս եւ մի քանի զինուորներ, որոնք այն շրջակայքում տեղաւորուած էին, վրայ են հասնում, սկսաւ փախչել, մի՛ գուցէ բռնուի. յետոյ նորէն վերադառնալով խառնուեց ամբոխի մէջ, եւ այնպէս ձեւացրեց որպէս թէ աղմուկի պատճառով ինքն էլ վազել եկել է: Երբ տեսաւ որ հարիւրապետի ոտքը կտրուած է՝ մտածեց որ եթէ նա մեռած էլ չէ, շուտով իր վէրքի հետեւանքով կը մեռնի. եւ ի սրտէ ուրախանալով՝ դէմքից այնպիսի համակրութիւն կեղծեց որպէս թէ Հարիւրապետը նրա եղբայրը լինէր:

Միւս առաւօտը այս դէպքի լուրը տարածուեց ամբողջ քաղաքում, եւ Հասաւ Դիզզէմոնայի ականջին, եւ նա բարեսիրտ լինելով եւ ամենեւին չը կասկածելով որ դա կարող էր նրան որեւէ կերպով վնասել, ամենամեծ վիշտը ցոյց տուաւ պատահած դժբախտութեան համար: Այս բանը Մաւրին աւելի եւս հաստատեց իր կասկածների մէջ, գնաց Դրօշակիրին գտաւ եւ նրան ասաց, “Դիտե՛ս, իմ յիմար կինս այնպէս վշտահարուել է Հարիւրապետին պատահած փորձանքի վրայ, որ գրեթէ խելագարուել է”: “Եւ ի՞նչ էիք սպասում, պատասխանեց նա, քանի որ Հարիւրապետը նրա հոգին է”: “Հոգի՞ն է, ասաց Մաւրը, ես այդ հոգին կը հանեմ նրա մարմնի միջից. ես մարդ չեմ, եթէ այդ անզգամին այս աշխարհից ճամբայ չը դնեմ”:

Յետոյ սկսան խորհուրդ անել թէ ինչ միջոցով խեղճ Դիզզէմոնային սպանեն, թոյնո՞վ թէ դաշոյնով, բայց ոչ մի եզրակացութեան չը հասան: Ի վերջոյ Դրօշակիրն ասաց, “Մի ձեւ եկաւ միտքս, որ ձեզ կը գոհացնէ, եւ ոչ մի կասկածի տեղիք չի տայ. ահա այս է. այն տունը, ուր բնակւում էք, շատ հին տուն է, եւ ձեր սենեակի առաստաղը շատ տեղերից ճեղքեր ունի. ես առաջարկում եմ որ աւազով լցուած մի գուլպայ վեր առնենք եւ նրանով Դիզզէմոնային այնքան ծեծենք, մինչեւ մեռնի”: Այս կերպով նրա մարմինը ոչ մի բռնութեան նշան չի ներկայացնի. երբ նա մեռած լինի՝ մենք առաստաղի մի մասը վար կը քաշենք, եւ դա կարծել կը տայ որ առաստաղից մի գերան ընկել է նրա գլխին եւ նրան սպանել: Այդ ձեւով

ոչ մի կասկած չի ընկնի ձեր վրայ, որովհետեւ ամէն մարդ կը կարծէ որ նրա մահը դիպուածի արդիւնք է եղել։

Այս անգութ խորհուրդը դուր եկաւ Մաւրին, որ վճռեց սպասել յարմար առիթի՝ գործադրութեան համար։ Մի գիշեր երբ նա եւ Դիզդէմոնան մտել էին անկողին, Դրօշակիրը, որին Մաւրը թագցրել էր ննջարանին կից մի փոքրիկ սենեակում, սկսաւ աղմուկ հանել այնտեղ, ինչպէս առաջուց կարգադրել էին. Մաւրն իր կնոջից հարցրեց, “Մի աղմուկ չը լսեցի՞ր„։ “Այո, լսեցի„, ասաց կինը։ — “Վեր կաց եւ տես ինչ է„, ասաց Մաւրը։ Խեղճ Դիզդէմոնան վեր կացաւ, եւ հէնց որ մօտեցաւ փոքրիկ սենեակին՝ Դրօշակիրը դուրս յարձակուեց, եւ ուժեղ եւ զօրեղաջիղ լինելով՝ մի սաստիկ հարուած հասցրեց նրա կռնակին՝ աւազով լցուած գուլպայով. Դիզդէմոնան ընկաւ գետին՝ հազիւ կարողանալով շունչ քաշել. բայց իր անզօր ձայնով Մաւրին օգնութեան կանչեց։ Մաւրը անկողնից դուրս ցատկելով՝ գոչեց, “Դու՛ անզգամ կին, այդ է քո անհաւատարմութեան վարձը, այդպէս են վարւում բոլոր այն կանանց հետ որոնք, սէր կեղծելով, իրենց ամուսնի ճակատին եղջիւրներ են անկում„։

Խեղճ կինը՝ այս խօսքերը լսելով՝ եւ զգալով որ իր վերջը հասել է (որովհետեւ Դրօշակիրը մի երկրորդ հարուած տւաւ), ասաց, “Երկնային արդարութիւնը վկայ եմ կանչում իմ հաւատարմութեանը, քանի որ այս աշխարհում արդարութիւն չը գտայ„։

Եւ այն ինչ նա այսպէս երկինքը վկայ էր կանչում, չարագործ Դրօշակիրը մի երրորդ հարուած հասցրեց, որից նա անշնչացած գետին տապալուեց։

. Յետոյ Դրօշակիրը եւ Մաւրը Դիզդէմոնային դնելով անկողնի վրայ եւ գլուխը վիրաւորելով՝ ննջարանի առաստաղի մի մասը վար քաշեցին, այն ինչ Մաւրը սկսաւ բարձրաձայն օգնութեան կանչել եւ աղաղակել թէ տունը քանդւում է։ Դրացիները վազեցին եկան եւ գտան որ Դիզդէմոնան մեռած ընկած է մի գերանի տակ, եւ ամէնքը, որ այն բարի տիկնոջն այնքան սիրում էին, լցուեցան խորին տրտմութեամբ։

Յաջորդ օրը Դիզդէմոնային թաղեցին, եւ բոլոր ժողովուրդը ցաւով հետեւեց նրա մարմնին մինչեւ գերեզմանը։ Բայց Աստուած,

բոլոր սրտերի տեսնողը, չուզեց որ այնքան մեծ սրիկայութիւն անպատիժ մնար։ Քիչ յետոյ Մաւրը, որին Դիզդեմոնան իր աչքի լոյսից աւելի էր սիրում, սկսաւ այնպիսի վիշտ զգալ որ խելագարի պէս թափառում էր, եւ նրան փնտռում էր տան ամեն կողմը. եւ իր մտքի մէջ օրոճալով որ Դրօշակիրն էր պատճառ դարձել, որ նա ոչ միայն զրկուել էր Դեզդեմոնայից, այլ եւ ամեն ուրախութիւնից իր կեանքի մէջ, այնպիսի մի խոր ատելութիւն ծնուեց նրա սրտի մէջ դէպի չարագործը, որ աչք չունէր նրան տեսնելու. եւ եթէ չը վախենար Վենետիկի Սինիօրութեան անողոքելի արդարութիւնից՝ նրան ազատ համարձակ սպանած կը լինէր։ Բայց քանի որ չէր կարող այս բանն անպատիժ կերպով անել՝ նրան զրկեց աստիճանից, եւ թոյլ չը տուաւ որ նա իր զօրախումբի մէջ մնայ. այս պատճառով այնպիսի մի ոխերիմ թշնամութիւն ծագեց նրանց երկուսի մէջ, որ անկարելի է երեւակայել։

Դրօշակիրը, որ աւազակների ամենավատն էր, այժմ իր բոլոր մտածումները շուռ տուաւ Մաւրի դէմ. գնաց Հարիւրապետին գտաւ, որի վէրքն արդէն բժշկուել էր եւ այժմ կտրուած ոտքի տեղ փայտէ ոտքով ման էր գալիս, եւ նրան ասաց, "Հիմա ժամանակ է որ դու ոտքիդ վրէժը հանես, եւ եթէ ինձ հետ Վենետիկ գաս՝ ես քեզ կ'ասեմ թէ այդ չարագործութիւնը ով է արել. այստեղ չեմ կարող ասել շատ պատճառների համար. եւ ապացոյցներ կը տամ քեզ"։

Հարիւրապետը, որի զայրոյթը բորբոքուեց, առանց իմանալու որի դէմ, շնորհակալութիւն յայտնեց Դրօշակիրին, եւ նրա հետ Վենետիկ գնաց։ Այնտեղ հասնելուց յետոյ Դրօշակիրը նրան ասաց թէ Մաւրն էր նրան զարկողը, որովհետեւ կասկած էր ընկել նրա գլխի մէջ թէ նա Դիզդեմոնայի հետ գաղտնի մտերմութիւն ունէր, եւ այդ պատճառով նա սպանել էր Դիզդեմոնային, եւ ապա լուր տարածել թէ առաստաղը քանդուել եւ նրան իր տակն է առել։ Այս լսելով Հարիւրապետը գնաց եւ Մաւրին ամբաստանեց Սինիօրիայի առաջ, թէ իր ոտքի համար եւ թէ կնոջն սպանելուն համար, եւ Դրօշակիրին վկայ կանչեց։ Դրօշակիրը վկայութիւն տուաւ թէ այդ երկու մեղադրանքներն էլ ճշմարիտ էին, եւ ասաց թէ Մաւրը ինքն է այդ բոլոր դաւադրութիւնը նրան պատմել, եւ մինչեւ անգամ՝ ջանք էր

արել նրան համոզել որ այդ երկու ոճիրները նա ինքը գործադրէ, եւ կնոջը սպանելուց յետոյ՝ ինքն է յետագայում նրան պատմել թէ ինչ կերպով է արել այդ բանը։

Երբ Վենետկի Սինիօրիան լսեց այն անգթութիւնը որ մի բարբարոս գործ է դրել իրենց հայրենակից մի տիկնոջ վրայ՝ հրաման արձակեց որ նրա թեւերը կապեն Կիպրոսում, եւ բերեն Վենետիկ, ուր շատ չարչարանքներ տուին նրան, որ խոստովանել տան ճշմարտութիւնը. բայց Մաւրը անդրդուելի կերպով բոլոր տանջանքներին դիմանալով՝ ամեն բան ուրացաւ, որով ոչ մի բան կարելի չեղաւ նրան խոստովանել տալ։ Եւ թէեւ իր տոկունութեամբ ու յամառութեամբ մահից ազատուեց, բայց շատ օրեր բանտարկուելուց յետոյ դատապարտուեց յաւիտենական աքսորի, եւ աքսորի մէջ, ի վերջոյ, սպանուեց Դիզդեմոնայի ազգականների ձեռքով, ինչպէս որ արժանի էր։ Դրօշակիրը վերադարձաւ իր երկիրը, եւ շարունակելով իր սովորական աւազակութիւնը, իր մի ընկերին ամբաստանեց թէ նա փորձել է նրան, Դրօշակիրին, համոզել որ նա իր բարեկամներից մէկին որ ազնուական դասից էր, սպանէ։ Այս յայտնութեան վրայ այն մարդը ձերբակալուեց եւ չարչարանքի ենթարկուեց, բայց մինչեւ վերջը ուրանալով ամբաստանութեան ճշմարտութիւնը՝ Դրօշակիրն ինքը չարչարանքի ենթարկուեց. նրան այնքան խիստ տանջեցին որ մարմինը միջից կոտրուեց, որից յետոյ բանտից հանեցին եւ տարան տուն, ուր նա սոսկալի մահով մեռաւ։ Այսպէս Երկինքը վրէժխնդիր եղաւ Դիզդեմոնայի անմեղութեան համար։ Այս բոլոր պատահարները Դրօշակիրի կինը, որ ամեն բան գիտէր, նրա մեռնելուց յետոյ պատմել է ինձ այնպէս ինչպէս ես այստեղ պատմեցի։



# ՎՐԻՊԱԿ

III. III. 322. *Վա՜յ, ի՜նչ ես ասում, պէտք է լինի, ի՜նչ ես անում:*

---

*Գինն է՝ Ֆր. 15.—:*